ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

# ՀԱՒԱՔՈՒՄՆ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

# ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*ԼՈՒՍԱԲԱՆԵԱԼ*





*Ի ՎԵՆԵՏԻԿ*

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

1862

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թախանձեալք 'ի բազմաց յառտնին և յօտարազգի բանասիրաց՝ շարայարել տպագրութեամբ զկարգ պատմագրաց մերոց, անտես առնելով առ վայր մի զընտրութեամբ ոճոյ և բանակարգութեան Հայերէն խօսից, ուշ ունել ծանօթութեան անցից և դիպաց, մանաւանդ միջին անուանեալ դարուց ժամանակաց, յոր առաւել իմն սերտիւ ընդութեամբ դեգերին այժմուս պատմաբանք և հնախօսք, ձեռնարկաք նախ յ՚ առ 'ի բազմաց ըղձացեալն և 'ի չև ևս տպագրեալ[1], 'ի Վարդանե պատմիչ, որոյ համբաւ մեծ հռչակի յազգիս, որպէս գերազանցելոյ առ ժամանակակիցսն և անհաւասար մնացելոյ առ 'ի յետնոցն։ Ցոր սակս, միանգամայն և յորոշումն յայլոց համանուանցն մերձաւորաց ժամանակաւ, Մեծ կոչի Վարդանս այս վարդապետ, և ամենապատիւ մակադրական անուամբք մեծարի յամենայն յիշատակագրաց. որպէս, Ամենագով, արդիւնական, պանծապայծառ, հոգիապայծառ, մեծիմաստ, իմաստախոհ, եռամեծ, գիտնական, տրամաբան, աստուածաբան, մեծ սոփեստոս, աշխարհալոյս, աշխարհաքարոզ, տիեզերալոյս, սուրբ, և այլն։ Բայց այս ամենայն կոչմունք պատուականք չեղեն բաւական առ անխառն պահել զգործս և զգրուածս նորին ընդ այլոցն. և յոլովից յարանուանց վաստակք պիտանի և անպէտ՝ միոյս այսմ վերընծայեցան։ Եւ ոչ միայն յիրս և 'ի

1. Մինչ 'ի պատրաստել էաք քաղաքէ տպագրեալ է պատմիչս, զգործս զայս՝ լուաք զի 'ի Մոսկով այլ չև ևս հանդիպեցաք մատենին։




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Թախանձեալք 'ի բազմաց յառտնին և յօտարազգի բանասիրաց՝ շարայարել տպագրութեամբ զկարգ պատմագրաց մերոց, անտես առնելով առ վայր մի զընտրութեամբ ոճոյ և բանակարգութեան հայերէն խօսիցն, ուշ ունել ծանօթութեան անցից և դիպաց, մանաւանդ միջին անուանեալ դարուց ժամանակաց, յոր առաւել իմն սերտիւ պնդութեամբ դեգերին այժմուս պատմաբանք և հնախօսք, ձեռն արկաք նախ յ' առ 'ի բազմաց ըղձացեալն և 'ի չև ևս տպագրեալ[1], 'ի Վարդան պատմիչ, որոյ համբաւ մեծ հռչակի յազգիս, որպէս գերազանցելոյ առ ժամանակակցօքն և անհաւասար մնացելոյ առ 'ի յետնոցն։ Յոր սակս, միանգամայն և յորոշումն յայլոց համանունանցն մերձաւորաց ժամանակաւ, Մեծ կոչի Վարդանս այս վարդապետ, և ամենապատիւ մակադրական անուամբք մեծարի յամենայն յիշատակագրաց. որպէս, Ամենագով, արդիւնական, պանծապայծառ, հոգիապայծառ, մեծիմաստ, իմաստախոհ, եռամեծ, գիտնական, տրամաբան, աստուածաբան, մեծ ռաբունի, աշխարհալոյս, աշխարհաքարոզ, տիեզերալոյս, սուրբ, և այլն։ Բայց այս ամենայն կոչմունք պատուականք չեղեն բաւական առ անխառն պահել զգործս և զգրուածս նորին ընդ այլոցն. և յոլովից յարանուանց վաստակք պիտանի և անպէտ՝ միոյս այսմ վերընծայեցան։ Եւ ոչ միայն յիրս և 'ի

1. Մինչ 'ի պատրաստել էաք քաղաքի տպագրել է պատմիչս, զգործս զայս՝ լուաք զի 'ի Մոսկով այլ չև ևս հանդիպեցաք մատենին։

գիրս, այլ ինձ թուի և 'ի հայրեննեացն կոչումն սխալեալ, որոց Բարձրբերդցի զդա ասեն. քանզի ոչ ոք 'ի նախնեաց անտի կոչէ զնա այսպէս, այլ մանաւանդ բանք նոցին ցուցանեն յարեւելից Մեծաց Հայոց լինել զնա, և ամս ինչ պանդխտութեամբ կեցեալ 'ի Հռոմկլայ և ոչ 'ի Բարձրբերդ. զայլ ումն Վարդան Բարձրբերդցի ցուցանելով ժամանակակից նորին կրսեր, որպէս յիշէ մատենագիր ումն յամի 1286, որ է իբր վեշտասան ամաւ յետոյ քան զմահ մեծիս այսորիկ Վարդանայ: Իսկ զմիւսն զայն զկրսեր՝ Երկրորդ Վարդան կոչէ Ղազար Ջահկեցի կաթուղիկոս, և նմա ընծայէ զՀամառօտ Մեկնութիւն չորից աւետարանաց, զԱռակսն, զՀամառօտ աշխարհագրութիւնն, զՄեկնութիւն քերականի. որոց յետինքդ կարծին երրորդի ուրումն կրսերագունի Վարդանայ գործք:

Արդ մերս այս պատմագիր թուի հայրենեօք յարեւելեայ Հայոց 'ի սահմանակցութենէ Աղուանից տան, ուր և աշակերտեցաւ Վանականայ վարդապետի, և նախապատիւ ծանուցաւ քան զերեսին ևս աշակերտակիցս իւր ձեռասունս հաշակերտ վարժապետին, (յորոց մի պատմիչն Կիրակոս, և միւս Յովսէփ արքեպիսկոպոս առաջնորդ Թադէի վանաց), և առ կենդանեաւ իսկ նորուն համբաւեցաւ զգօնութեամբն և հմտութեամբ. որպէս զի յերթն յԵրուսաղէմ ուխտագնացութեան աղօթս հանդիպելով 'ի Կիլիկիա, բազում մեծարանօք ոչ միայն ընկալեալ եղև 'ի Հեթմոյ թագաւորէ և 'ի Կոստանդեայ կաթուղիկոսէ, այլ և զամս հինգ և աւելի բռնադատեալ ասպնջականեցաւ 'ի յետնայս, յօժանդակութիւն կարևոր գործոց հայրապետանոցին. որպէս և խոստովանի զօրութեամբ կաթուղիկոսն 'ի շրջաբերականի թղթին՝ զոր առաքեացն առ արևելեայս 'ի ձեռն նորին ինքեան Վարդանայ. «Առաքեցի առ » ձեզ զարդիւնական վարդապետն զՎարդան՝ փոխանակ » անձին իմոյ, զոր ետ նախախնամութիւնն Աստուծոյ ձգե» լով առ իս 'ի կողմանց ձերոց, 'ի հինգ ամաց հետէ. » զոր փոքր մի տեսի՝ ճանաչելով բաւ կարի՝ կալեցի զդա » միջնորդութեամբ Աստուծոյ ընդ անձին իմոյ կենօք և մա» հուամբ, մեծաւ հարկիւ և սիրով փաթաթեալ ընդ իս յա» ւիտեան . . . որ ունի զիմ տեղւոյ և զբան յամենայն իրս »: Ընդ թղթոյն տարաւ յարևելս և զկանոնս ժողովոյն Սսոյ գումարելոյ յամի 1243, յորում բազմէր և ինքն ընդ եպիս–

կապոսունս և ընդ վանահարս Կիլիկիոյ. և թուի 'ի նշա֊նակեալ թուականէդ յետս երթալով հասանել 'ի սկիզբն հնդամեայ բնակութեանն յարևմտեան Հայս, 'ի թագաւո֊րութեան Հեթմոյ. յորոյ խնդրոյ արար մեկնութիւնս և լուծմունս, որպէս և գրէն առ նա ինքն. « Ցիշեա զոր 'ի » ձեռն Թորոսի հրամայեցիք, վասն Եղաբերիցն կանանցն » գրել ձեզ, և 'ի խորհուրդ պատարագին. և ապա երեսօք » յանդուգն հրամայեցիք, որ գրէաք ձեզ ժղլանք 'ի մեկ֊ » նութենէն քերականին. և ես այլ աւելի սիրով գրել » ձեզ ձեռամբ լուծմունս յաւետարանէն և յարարածոցն ». այսպիսի պարզ և ռամկական ոճով գրեալ են լուծմունքդ և ժղլանքդ (գրոյցք) իբր վաթսուն և վեց թուով. և մե֊ծաւ համարձակութեամբ իբրև ընտանի առ ընտանի, կամ դաստիարակ առ արքայ մանուկ, որում ասէ, « Աստու֊ » ծով տղայահասակ և մտօք և աչօք զօրաւոր էք », առ 'ի կարող լինել ընթեռնուլ զիւր իսկագիր անսեթևեթ գրածն. զոր և աղերսէ մնալ առ դչխոյին Զապելայ յիւր յիշատակ. « Թող թագուհի պահէ, և 'ի պիտոյ ժամս առնոյք 'ի նը֊մանէ » :

Զգիր կաթուղիկոսին և զկանոնս ժողովոյն բերեալ յա֊րևելս յամի 1246, և ընկալեալ զձեռնագիր հաւանութեան առաջնորդաց տեղւոյն՝ դարձաւ եբեր առ հօգևոր տէրն, և այլ ևս ժամանակս ինչ յամեալ առ նմա, յայսմ նուագի յամի 1248 թարգմանեաց կամ յերիւրեաց 'ի հայ զփոխեալն յասորւոյն զընդհանուր Պատմութիւն Միխայէլի պատրիար֊քի, 'ի ձեռն Իշոխայ ուրումն երիցու Ասորւոյ[1] : Ցետ եր֊կրորդ անգամ դարձին 'ի Կիլիկիոյ՝ եկեալ յարևելս զաղա֊րեաց յԱնդրէի վանս 'ի Ձորն Կայենոյ. և անդ, կամ այնու֊հետև յօրինեաց զգլխաւորս 'ի մատենագրութեանցն զոր արդ 'ի ձեռին ունիմք. և զի յառաջ քան զայն հռչակեալ էր անուն նորա, հարկ է թէ և յառաջագոյն հրատարակեալ էր այլ գիրս և ճառս, որք կամ չհասին առ մեզ կամ ոչ անուամբ նորին : Կարևոր վաստակք Վարդանայ են մեկնութիւնք սուրբ գրոց, հաւաքեալք յառաջնոց մեկնչաց, յորս ժա֊մանակի երիցութեամբ, թուի Ա. Գաբրիէլի մեկնութեան համառօտ, 'ի խնդրոյ եղբարց միաբանից. Բ. Սաղմոսաց

1. Ի յիշատակարանի Թարգ֊մանութեանն՝ զոր 'ի ձեռին ու֊նիմք, չիք անուն Վարդանայ, բայց վկայէ Ղազար կաթուղիկոս, և բազում հետևողութիւն իսկ հեղի֊նակիս պատմելոյն 'ի Միքայէլէ :

մխիթարեան, համառօտ քան զՎարդանեանն, 'ի խնդրոյ առաջնորդին Հալպայ՝ տեառն Յովհաննու, որ ոմանց նախորդն Համազասպայ կարծի, և ինձ յաջորդ նորուն, որ նոյնպէս Յովհաննէս կոչիւր. Գ. Մխիթարեան Հեգումենեանն Մովսիսի, 'ի խնդրոյ տեառն Համազասպայ, աւարտեալ յամի 1261. Դ. Մխիթարեան Երգոց երգոյն, 'ի խնդրոյ աշակերտակցին իւրոյ Կիրակոսի վարդապետի պատմչի, գրեալ յամի 1265, եօթն ամաւ յառաջ քան զմահ իւրեանց, յորոյ վերջաբանին մտերիմ խանդաղատանօք խօսի ընդ ուսումնակցին և ծերակցին. « Իսկ դու մշակդ մորենեաց և
» աղտաղտ անբուսաբեր վայրաց, անոյշ մեզ ճաշակ յարա-
» ժամ և յոյս յԱստուած, վարդապետ Կիրակոս, որ հար-
» կեցուցիչ հրամանաւ և զուժիւն մահու քեզ՝ առել զմերն
» մերձակայ, մուծեր զմեզ 'ի տուն գինւոյ և իւղոյ, խնձո-
» րոյ և նռնենեաց, շղթայից արժանաւոր ուռիւք, հայել
» լսել և խօսել, հոտոտել և շօշափել զկեանս և զանմա-
» հութիւն » ։ Առ այսոսիկ ողբ ծանօթք են մեզ և բազմաց, յաւելոյր ումն և զմեկնութիւնս Դատաւորաց և Յեսուայ, և զմարգարէիցն Եսայեայ և Երեմիայ, զոր այլուստ չէ մեր լուեալ յանուն Վարդանայ ։ Կրկնակի պատուական են մեզ գրուածքդ. մի, զհարց նախնեաց, զորոց զոմանց չունիմք արդ լիովին զգործս, 'ի սմա գտանելով գէթ զհատուկտորս բանից, յորս սիրելագոյն մեզ Եղիշեայ բանքն 'ի մեկնութեան գրոց Մովսիսի. և միւս՝ չափ և կուռ համառօտութիւն իմաստից և լուծմանց յորում ոչ սակաւ զգօնութիւն և ճարտարութիւն երևի հաւաքողին. և յառաջաբանք և վերջաբանք գրոցն, որպէս և պատմագրութեանն, խոհականք են և զորովականք, և ախորժագոյնք յընթերցումն. յորոց և քաջիկ մարթ է 'ի վերայ կալ հանճարոյ և ոճոյ արձակ գրութեան հեղինակին, քան 'ի սեղմ և 'ի համառօտ մեկնողական բանիցն, որպիսիք են վերոյիշեալքդ, և Մեկնութիւն տէրունական աղօթիցն, Հաւատամքն 'ի Հարանց վարուց, և այլն ։ Իսկ ճառիցն և խրատական բանից՝ յորոց մարթ էր լիովին գտանել զնա, ընդ երկբայութեամբ է հարազատութիւնն. վասն որոյ և զանց առնեմք զնոքօք առ աւելեաւս. բայց 'ի Ներբողէ Լուսաւորչին, զոր գրեալ է 'ի խնդրոյ նախանշանակեալ տեառն Համազասպայ, որ և չափաւոր ճաշակօքն 'ի գովութիւն կրթի նորա ։ Զնոյն առաւելութեամբ հաստատեն և չարականք նորին, Որ նախիմացն.

ի յանուանմանն առաքելոցն, Թարգմանչացն և Ս. Սարգսի[1]. չորեքին և ս յառաջին կողմանէ ձայնի (Աէ), գանդաղագնացք յերգ և յ' եղանակ, թերևս հանգարտ բարուց երգողին ցոյցք. նմա ընծայեն ոմանք և զԱՆերասամ ծաղիկ երեք տուն շարական պերճաբան, իսկ այլք զմեկնութիւն նորին: Վասն սոցին Առաքէլ Սիւնեցի 'ի չափաբանեալ անուանակարգութեան յօրինողաց շարականի՝ կոչէ,

Սուրբըն Վարդան յուսոյ տեղին:

Այսոքիկ հաւաստի երկասիրութիւնք Վարդանայ. իսկ գործք և անցք կենաց նորին յետ դարձին 'ի Կիւլիկիոյ, չեն նշանակեալք ըստ բաւականին. յիշատակի զովութեամբ յամի 1255 մեծ վարդապետ և աստուածազգեաց այրն Վարդան, նախ 'ի Վիրապին վանս նստեալ ուսուցչապետ, ապա 'ի Սաղմոսավանս և 'ի Թեղենիս, այլ ոչ ունիմք հաստատել՝ թէ սոյն իսկ մերս իցէ: Նոյնպէս և Վարդանն վարդապետ որ ընդ տեառն Գրիգորիսի Դադիվանից առաջնորդի գնաց 'ի հերքումն և 'ի յանդիմանութիւն Դաւթի դիւապատիր մոլորեցուցչի, ոչ է մերս այս, որպէս համարի նոր պատմահայրս Չամչեան[2], զի Կիրակոս պատմիչ իւրացն՝ զՎարդանդ զայդ և զԳրիգորիս զոյգ Ցօժարորդիս ասէ մականուանեալ: Քաջանշան և սխրալի դէպք կենացն այն է՝ զոր ինքնին պատմէ մերձ յաւարտ գրոցն, որ և վկայ է մեծի համբաւոյ նորա առ իւրսն և առ օտարս, մինչև 'ի դուռն աշխարհակալին արևմտից Ասիոյ՝ Հուլաղու ղանի, յորմէ և կոչեցաւ ընդ թագաւորս և ընդ աւագ իշխանս. և համարձակագոյն քան զամենայն ոք, ըստ շնորհաց իմաստութեանն և ալևոր հասակին՝ խօսեցաւ ընդ ահեղին այնմիկ, լուաւ զգաղտնիս նորա և թելադիր եղև խորհրդակցութեամբ: Բաղում ինչ կարևոր և հետաքննելի իրք են յայս դէպս, որ և քան զամենայն մասունս պատմութեանն հաճոյագոյն գտանի դեգերելոցն 'ի քննութիւն արևելեան

1. Ոմանք ոչ համարին Վարդանայ զՄեկնաստուրբն Ս. Սարգսի, այլ հաւաստի նորա լինել եղանակաւն և վերջին տամբք, յորս յիշէ Գագ լեառնաբլուր, և իշխող կողմանցն, զոր Իշխան մեր կոչէ, և է Վահրամն յիշեալ 'ի պատմութեանն (յէջ 144) և յայտ է թէ յայն կողմանս յօրինեաց զերգն. որպէս և զՆախխմացն 'ի Կիւլիկիա, մաղթելով 'ի նմին զկենդանութեան մերոյ Թագաւորին, Հեթմոյ, և զթաւաղան Իշխանութեան մերոյ հայրապետին, Կոստանդնի:

2. Պատմութիւն Հայոց. Գ. 233:

անցից այնր ժամանակի [1]։ Ի դարձի անդ իւրում 'ի դրանէ ղանին՝ Թուի համդիպել աւազակաց Հարամեաց, և անկանել գրենոյն 'ի ձեռս նոցա և յաջողութեամբ Թափել զնոսին [2]։ Զյետին ամս կենացն՝ հաւանօրէն՝ նկեաց 'ի Հաղբատ, ուր և գրեացն 'ի խնդրոյ Կիրակոսի զմեկնութիւն Երգոցերգոյն, յամի մահուան Հուլաղուի. յետ երկուց ամաց վախճան արար պատմագրութեանն, և յետ չորից ամաց, այն է յամի Տեառն 1271, յորում ամի և ամոլակիցն իւր Կիւրակոս, վախճանեալ Թաղեցաւ 'ի Հաղբատ. և գգերեզման սորա համարիմ իբրև ուխտատեղի կամ պատուելի յիշել Թոմայի Վանանդեցւոյ ընդ այլոց հոյակապ արանց անդ Թաղելոց,

Վարդան մեկնիչըն քաջաբան.

քանզի անդէն Թաղեալ է և այլ ոմն Վարդան վարդապետ նշանաւոր՝ երիցագոյն ժամանակաւ, այն՝ յորոյ խնդրոյ Ներսէս Շնորհալի գրեաց զմեկնութիւն բարձրացուցեաց ճառի։

Պատմագրութիւնս այս Վարդանայ, յետին գրաւոր վաստակ նորա, և գլուխ գործոց հեղինակին համարեալ 'ի յոլովից, Թերևս 'ի նախահաշակ համբաւոյն ստացեալ է զայդ վարկ, քան յիւր ուրոյն արժանեաց. զի ոչ գեղեցկաբան ինչ շարամանութեամբ լեզուին և ոչ մանրապատում ծանօթութեամբք կամ նկարագրութեամբք ախորժական ընծայի. զի Թէպէտ և 'ի համառակի չափաւոր, այլ և ուրեք ռամկօրէն վարի ոճով, որպէս 'ի պատմութեան անդ տեսաւորութեանն ընդ Հուլաղուի, Թերևս 'ի հասկացումն ծանօթից իւրոց աշխարհիկ իշխանաց գրեալ։ Դարձեալ և ըստ քանակի գրոցն, զվեցհազար ամաց պատմութիւն ամփոփել կամելով յերկվեցեակ Թերթս, հարկաւորէր իմն կարգել ցամաք բանս և ուրեք լոկ շարս անուանց և Թուոց.

1. Յորոց մի և հմուտն արևելագէտ Գ. Եդուարդ Տիւլօրիէ, այժմս վարժապետ հայերէն խօսից 'ի կայսերական մատենադարանի Փռանկաց, 'ի Բարիզ. Թարգմանեալ է յիւր լեզու և հրատարակեալ զայս գէպս, որպէս և այլ հատուածս բանից 'ի պատմչէս յայլ ինչ գիրս իւր։ Նոյնպէս և համազգի նորին Գ. Միքայէլ Գրոսէ պարագլուխ գիտնոց վրացի դպրութեան, բաղում բանս 'ի հեղինակէս Թարգմանեալ և յեռեալ է 'ի յաւելուածս հաշակելոյ իւրոյ Պատմութեանն Վրաց։ Ծանօթ է պատմիչս մեր և այլոց արևելագիտաց ոչ սակաւուց ակնեալ 'ի Սէն Մարգէնայ և 'ի Գոպըրմէրէ։

2. Տես յէջ 161։

և զի այս ոչ պահանջէ աշալուրջ քննութիւն և ճշդութիւն ժամանակագիր թուոցն և կարգաց յաջորդութեան աթոռոց և գաւառաց, ոչ անվրէպ և յայսմ գտանի հեղինակս, կամ առ ծերութեան հասակին ոչ բաւեալ մանրախուզել 'ի ստոյգ պատմչաց, կամ առաջնոց ընդօրինակողաց գրոցն ըզնոյն սխալեալ. որով բազում ուրեք պակասաւորք են կարգք ստոր և հետաւոր թագաւորաց և սխալ ամք իշխանութեան նոցին. զոր և ուրեք ուրեք աստ առնելով ծանօթութեամբք՝ գտցուքն զանց առնարաք. զի ոչ համարիմք 'ի հեղինակէ ստոր ուսանել զայնոցիկ կարգս, մինչդեռ առձեռն պատրաստ գտանին խնդրողաց՝ այժմու ստուգարանին ժամանակագիրք: Բայց առաւելագոյն է 'ի յիշատակս ազգայնոց իրաց և դրացեաց մերոց, յորս են են արդարև և 'ի համառօտութեան անդ ոչ սակաւ կարևոր գիտելիք, և դէպք աննշանակք առ 'ի յայլոց, արդարակք մեծի մատենայած հմտութեան հեղինակին և ծանօթութեան գիտնոց տրանց ժամանակին, առ որս ընտանութիւն և մուտ և ել ունէր. և զարանք հաշակեալ դիւանաց Հաղբատայ և Սանահնի և այլոց վանորէից Ձորոյգետոյ և Աղուանից և տան կաթուղիկոսարանին՝ ծանօթակք աննախանձք կային նմա. և ըստ այսմ երախտապարտ գտանիմք Վարդանայ, որ տայ մեզ ծանօթս և զամանց կորուսելոց ազգ. պատմագրաց մերոց՝ յանուանէ կամ անուանէ. յակն արկեալ իւր գրեթէ զամենայն երկրպագոյն պատմիչս մեր, զերկուց նախ քան զիւրն դարուց դէպս առնու յոլովակի 'ի Սամուէլէ և 'ի Մխիթարայ Անեցւոյ, յՈւռհայեցւոյն Մատթէէ, յԱսորւոյն Միխայելէ, և 'ի Վրաց պատմութենէ և այլուստ. իսկ զիւրոյ՝ զ' ժԳ դարու դէպքն՝ 'ի լրոյ և 'ի տեսութենէ: Այդքան բազումս ունելով օրինակագիրս և առաջնորդս, մեծարէ յաճախ անխտրապէս և զկարծիս նոցին. մանաւանդ ուր ազգին և նշանաւոր կամ սրբազան անձանց շքոյ և պատուոյ և կրօնից վարդապետութեան իրք կայցեն, դիւրահաւան գտանի առ հաճոյն և պանծալին և առ հրաշանըշան երևոյթս. զնոյն և յայլ գիրս նորին է տեսանել. իսկ 'ի պատմագրութեանս յայդպիսեաց սակի են պատմեալքն ինչ զԼուսաւորչէն և դաշնակցութեանց կամ թղթակցութեանց ընդ գերագոյն գահու Հռովմայ, և տեսիլք փառապետաց սրբոց[1]. առ որովք հարկ համարեցաք աստ ինչ առ-

1. Տես յէջս 40. 46. 48. 54. 78. 87. 101. 112. 134 154. 155:

նել կամ ծանօթաբանել։ Զնոյն յայտ արարաք և երբեմն լծկով նշանակաւս (!), ուր զժողովոյն կամ զՀաւատոյ Քաղկեդոնի բանք էին, և սպրդեալ ինչ էր անճահ 'ի լուր՝ ոչ միայն մերումս ողջմտութեան, այլ և ոչ ինքեան՝ յայլսն ըզգուշաւոր և բարեպաշտ հեղինակին, եթէ յետնոցս հասեալ էր ժամանակաց, յորս պարզագոյն ևս բացատրի և ճանաչի դաւանութիւն սրբոյ ժողովոյն, համաձայն նախագումար երիցն ժողովոց և մերոց երիցագոյն Հարց եկեղեցւոյ. և եթէ կամեցեալ էր կամ կարող լեալ՝ առաւել անաչառապէս քան կանխակալ մեծարանօք զյառաջ քան զինքն կացեալ վարդապետսն քննել, յորոց ոչ սակաւք նովին թերուղիղ այլ անչար մտօք խաբեալք կամ անհասք նրբութեան խնդրոյն՝ խորշէին 'ի քաղկեդոնականաց, քստմնելով 'ի կարծեցեալ նեստորական բաժանմանց՝ որ յանձն և 'ի բնութիւնս աստուածայրականին Քրիստոսի։ Բայց և զայս արժան է ազդել զբարեսէր հեղինակէս, զի թէպէտ և իւր հարազատ բանս համարեսցուք զգրեալսն զքաղկեդոնականաց, տակաւին հեզագոյն և հանդարտ դատանի քան զյոլովս յայլախոհիցն, և ոչ թերանայ 'ի մեծարելոյ զհարս ժողովոյն և զայլս նոցին հետևողս արժանաւոր անձինս։ Գրելով զայսմ խնդրոյ առ Հեթում արքայ, յառաջաբերեալ զբանս Աթանասի և Կիւրղի և զԳրիգորի Աստուածաբանի, որք երկուս ասեն բնութիւնս, և ընդունելով զնոյնս՝ ասէ. « Ամէն բան տեղի և պատճառ ունի. զի » որպէս լսողին և ժամանակին և կարեացն պէտք եղեալ՝ » խօսեցեալ են. զի այլ է կռուոյ բանն, և այլ է ճշմարիտ » խոստովանութիւնն 'ի խաղաղ ժամու. զի Աթանաս ա- » սացեալ է ընդդէմ Արիոսի երկու բնութիւն... իսկ Աս- » տուածաբանին՝ որ ասէ 'ի ճառին որ առ Կղաւդոնիոս, » Բնութիւնք երկու, քանզի Աստուած և մարդ, բայց որ- » դիք ոչ երկու. և այս վէճ է ընդդէմ Ապողինարի, որ » մի բնութիւն ասէր զՔրիստոս..։ իսկ Կիւրեղ ընդդէմ » Եւտիքի դիւաբերանի, որ առաջօք ասէր և կերպարանօք » զտեառն երևումն և մի բնութիւն, այսինքն ոչինչ առեալ » 'ի մէնջ, ասաց, Երկուք և ոչ մի »։ Արդ որպէս Կիւրղիդ՝ նոյնպէս և ժողովակցացն 'ի Քաղկեդոնի՝ են բանքն, ո՛վ վարդապետ. և թէ նոքին իսկ Հարքն որք յառաջ և որք յետոյ ժողովոյդ՝ զանազանելով մի կամ երկուս ասեն բնութիւնս, ըստ քո իսկ վկայելոյ՝ « Ամէն բան տեղի և պատ-

» ճառ ունի » . և որ կամի ոք քննել՝ իբրև զհաւատոյ սրբազան իրս ; որպէս և էնն իսկ ամենայն իրօք , պարտի քննել , յստակ և անկիր մտօք , և մի՛ ընդ եկեղեցւոյ վարդապետութեան խառնել զազգային խտիրս և խնդիրս , կամ ընդ Հոգւոյ Աստուծոյ՝ զհոգի մարդոյս , հակառակողի ընդ մարդոյ , որով և աստուածամարտ գտանի բազում անգամ ։

Զայսոսիկ առ յուշ ինչ արժան համարեցաք ազդել աստանօր , որպէս զի եթէ և յետ այսորիկ առ պատմական և ուսումնական օգտի հրատարակիցեմք և զայլս 'ի պատմչաց կամ 'ի գրչաց , առ որս շատ կամ սակաւ խծբիծք գտանիցին զայսմ՝ աստուածաբանական խնդրոյ , ծանիցեն քաջ հանդիպողք մատենիցն՝ զմերս տեսութիւն . որոց՝ սիրելի է նախնեացս մատենագրութիւն և մատենագիրք՝ բարեկամք , այլ բուն սէր և բարի՝ ճշմարիտն միայն , որ է ուղիղ վարդապետութիւն . զոր և ցանկամք և խնդրեմք ուխտիւք նոյնպէս լինել ամենեցուն , ևս առաւել մերոցս համազգեաց , որպէս և գիարդ ընկալցին զմեր իղձ ։ — Եւ զի վերադոյնդ իբր երկբայութեամբ իմն ասէաք թէ արդարև հարազատ բանք հեղինակիդ իցեն ասացեալքն , և մի իբրու այլայլեալք յերահամարձակ և 'ի կողմնասէր գրչաց , ոչ եթէ խսպառ օտար 'ի կարծեաց նորին համարիմք զայնս , մանաւանդ զի և օրինակք գրոցն հնագոյնք են , այլ զի և 'ի հինս անդ օրինակս մատենից հեղինակին՝ գոն խարդախեալ բանք ։ Օրինակի աղագաւ , յԱրարածոց մեկնութեանն , ուր զՀոգւոյն սրբոյ ելումն և բղխումն յիշէ ըստ Եղիշեայ բանից ուղղափառ դաւանութեան , որում և ինքն հաւանի յիւրումն պատմութեան [1], և մատենագիր ոմն 'ի յաջորդ դարու սաստիկ նախանձայոյզ հռոմէական՝ բերէ գովութեամբ զնոյն վկայութիւն յըմբերանումն ոմանց հակառակողաց յիւրումն ժամանակի , զնոյն վկայութիւն գտանեմք ակներև և անհեդեդ այլայլեալ յօրինակս ինչ գրոցն , որք սակաւ ամօք զկնի մահուան հեղինակին են գրեալք [2]։ Զայսր կողմնատար և թիւրեալ հոգւոյ առհաւատչեայ ընծայէին ուրեք և օրինակք պատմագրութեանս , ըստ իւրաքանչիւր

1 . Տես յէջ 148 ։

2 . Զբանն՝ « Երեք են . առաջինն չէ ծնեալ յումեքէ . երկրորդն՝ ծնունդ է առաջնոյն . երրորդն՝ երկրորդին և առաջնոյն ելումն և բղխումն » . խարդաւանակ մատունք փոխեն , « Երրորդն ոչ երկրորդին՝ այլ առաջնոյն ելումն և բղխումն » ։

կրից ընդարձակելով կամ սաստկացուցանելով զբանս հեղի-նակին. զոր արդարև ոչ է դիւրին ընտրել և ջոկել՝ որոյ այ-լուստ չիցեն հաւաստի վկայք և մերք հեղինակացն. և յայս-մանէ խաբին ոմանք թանձրապէս (ընդ Գալանոսի), մինչև մերօրս Վարդանայ վերագրել զանալի և զլուտական թուղթ հոմանուանն Սեւալեռնցոյ, որ և յաւէտ Վահրամ կոչի, գզրեալն առ Հեթում, պարսաւանս Լատինաց, իբրև 'ի պատասխանի թղթոյ քահանայապետին Հռովմայ, զոր ե-բեր առ արքայն Հայոց՝ սպանիացի Նուիրակն Տեմանիջ, յա-մի 1247 :

Արդ այսորիկ բաւ, թէ շատ և թէ սակաւ՝ առ տեղեաւս. դարձցուք անդրէն առ պատմագիր մեր. և յաւելցուք ընդ թերութեանցն՝ 'ի գովութիւն, զնոյն ինքն իսկ զհամառօ-տութիւնն. այսինքն զճարտարութիւն՝ զայնքան հարուստ ամաց և զզանազան ազգաց և յեղանակաց դէպս գլխա-ւորս՝ յեռուլ և 'ի չափ արկանել. որով յիրաւի յայս ոճ մկ-պատանից մերոց նախամեծար գտանի. զի և ոչ մի ոք 'ի սո-ցանէ յետ Ժ դարու՝ այսքան ճոխ և 'ի համառօտութեանն՝ հաւաքեաց զընդհանուր պատմութիւն. և քաջ 'ի ճահ գոր-ծոյն յարմարի վերնագիրն, զոր ընտիր Բ օրինակս մեր ու-նէր. Հաւաքումն պատմութեան մեկնողօրէն համառօտ և բա-վականակ, դիւրահաս ընթերցողաց. յԱդամայ հետէ բերելով ըզ-ժամանակսն. պատմելով զկերպ եղելոց որ 'ի նմա. նա և զ'ի բազմաց տարակուսեալսն 'ի բազում տեղիս լուծեալ խորհրդածելով խորհրդով և քննմամբ իմաստասիրական, որոց պատահիս յանձ-նիրսն: Ոչ է յայտ երբ սկսեալ իցէ հաւաքել զհամա-ռօտս զայս, այլ աւարտեալ է յամի 1265, որպէս և ա-սէն իսկ, յետոյ քան զերթն առ Հուլաղու ղան և զա-ռաջնոց քան զայն երեսնից ամաց դէպս (1235-1265) հա-մառօտիւ յայժ նշանակեալ կամ 'ի բաց թողեալ, վասն ո-ճով գրելոյ զայնս Վանականայ և Կիրակոսի յիւրեանց պատմագրոցն. սակայն յետ դարձին 'ի ճամբարէ Թաթա-րաց, վերստին ձեռն արկեալ է՝ զնշանաւորն զայն տեսու-թիւն և զրուցատրութիւն ընդ աշխարհակալին՝ յերիւրել 'ի կարգս բանիցն առաջնոցն, շաղկապ ընդ երկուսն արկա-նելով և զայլ հանդիպեալսն 'ի միջոց ժամանակին: Յետ այ-նորիկ դարձեալ յիշատակէ զմահ ղանին, և զհարուածս Կիլիկիոյ յԵգիպտացւոց, և զմահ ասպնջականին իւրոյ մեծարողի՝ զԿոստանդեայ կաթողիկոսի, և սրտառուչ ող-

բովք 'ի նոյն՝ կնքէ զգիրսն . ոչ ժամանեալ նշանակել, թերեւս և ոչ իսկ լսել՝ և զմահ մտերիմ մեկենասի իւրոյ՝ Թագաւորին Հեթմոյ, որ մեռաւ յելս հոկտեմբերի 1270 ամին, իսկ պատմիչս 'ի յետագայ տարւոջ յառաջ քան զհասարակել նորին, որպէս մեզ թուի ։

Սուղ ինչ և զգրչագիր օրինակաց մատենի պատմագրութեանս ասասցուք, յորոց զտպագիրս ընծայեմք . զանց արարեալ զնորագիծ գաղափարօք՝ յերկուց հնագրաց եւեթ արարաք զընտրութիւն ընթերցուածոցն . յորոց մին՝ Ա . կամ Հ . և յոլովակի Հին Օ . (օրինակ) նշանակեալ 'ի ծանօթութիւնս, է արդարև հնագիր և հնատառ, և հնացեալ յըստէպ կիրառութենէ, որպէս երևի, այլոյ նշանաւոր պատմչի, Ստեփանոսի Ուռպելեան, վասն որոյ իսկ գրեալ է, իբր քսան ամօք աւելի կամ պակաս՝ յետ մահուան հեղինակին . որ և անթերի և բովանդակ ունի զպատմութիւնն . բայց յուղղագրութեանն և 'ի հարազատութեան ստորև գտանի քան զ՝ Բ Օ . այսինքն Բնագիր օրինակն կամ Երկրորդ . զի զսա յաւէտ կալաք մեզ առաջնորդ, վասն ճարտար և անսխալ գրչութեան և ուղղութեան թըւոց, և զգլխովին իսկ չարաքանութեանն . և սա իսկ հին է, գրեալ յամի 1307, որ է երեսուն և վեց ամ յետ մահու հեղինակին . և զի դադարէ սա, ուր նախ աւարտեալ էր Վարդանայ զպատմութիւնն[1], թուի թէ յիսկագրէ անտի յօրինողին կամ յայլմէ կանուխ ուրեմն գաղափարելոյ՝ առեալ է հաւաստար ։ Իսկ ՕՕ . նշանակէ զի երկոքին ևս կամ ամենայն օրինակք այնպէս ունէին զընթերցուածն ։

1 . Տես յէջ 147 ։

# ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

Յորժամ քան զամենայն խնդիրս հայցեսցուք եղեալքս զԱն, և սկսեալքս զանսկիզբնն, և ստորնայինքս ըզվերնայինն. ոչ զորքանն զամէնն, որ ինքեան միայնոյն է, այլ յանհասական փառացն փայլակն ինչ երևման՝ որով ուղղեսցուք զբաղձանս մեր, և այն միջնորդիւ և ոչ անձամբ իշխեսցեալ. և է նա բարեկամն Աստուծոյ մեծն Մովսէս։ Նա զի հեզ է քան զամենայն մարդիկ, մի գարշեսցի 'ի մէնջ տալ մեզ զձեռն, և զգաւազանն որ Աստուծոյ, յորմէ բուռն հարեալ իմաստնասցուք։ Որպէս նա 'ի հարցանել զանուն Տեառն լուաւ եթէ նա է Որ էնն, յորմէ բացան խորք իմաստից նորա, և անտի վստահացեալ կոչեաց զնա Աստուած և տէր, արարիչ և ստեղծող ամենայնի. զի թէպէտ և լուաւ 'ի նմանէ զիւրաքանչիւրն, այլ էիւն հասկացեալ հաւատաց զի Աստուած է նա, որով Է է, զի աստ ածող է. և անուն նորա տէր է, զի յուրմէ եղելոցն իշխան և դատաւոր է։ Նա զի միշտ Է է, ոչ է եղեալ. քանզի ըզգոյութիւնն յայտնէ Ան, և Աստուածն՝ զարարչութիւնն. որպէս և զանուն գրոյն առաջնոյն՝ Արարածք և Ծնունդք կոչեաց, զի առինչք են սոքա, որպէս յայտնիչք և քարոզք, արարածք՝ արարչին, և ծնունդք՝ ծնողին։ Նա գիտաց թէ մի և միակ է Ան, քանզի եղեալքս բազում են, և ոչ է բազմութիւն առանց միոյն, բայց միոյն է առանց բազմութեան. և ոչ թաքեաւ 'ի նմանէ իմաստք Երրորդութեանն, քանզի ծանեաւ եթէ Ան երեք է, որպէս և յառնելն զմարդն և 'ի բաժանել լեզուացն և յայլոց՝ խոստովանի զերեքն։ Նա այլ եղեալքս կամ 'ի վեր են քան զմինն և կամ աւելի են քան զերեքն, զի անկատարք են։ Իսկ Ան երեք է, սկիզբն ունելով և միջոց և կատարումն. քանզի նա է

Աստուած՝ առաջին, միջին, և վերջին. և թէ այլ
ինչ գտանին այսպիսիք՝ նմանութիւնք են, և ոչ իսկ
հաւաստիք: Իմացաւ իսկ զԱյն սկիզբն ամենայնի
քանզի ամենայն ինչ որ եղեալ է և լինի, նախ էութիւնն
է սկիզբն և յԱյնէն եղանայ: Նաև գիտաց եթէ պարզ է
Այն. որովհետև զեղեալսն պատմեաց, թանձր և մար-
մնականս ծանեաւ: Իսկ եթէ բարի է Այն, և անփո-
փոխ և անվախճան, և անորակ և անքանակ, և ան-
որպիսութիւն. քանզի Այն բարի ոչ կամեցաւ միայն ու-
նել զբարին, այլ արար բարի արարածս, վայելել յան-
ծախելի բարիս արարչին: Որ սկսանի այսպէս:

Ա. Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր:
Ոչ պատմելով սոցա նիւթ, զի անկարօտ է արուեստա-
ւորն, սակայն արար չորս սկզբունս. ջերմ և թեթև
զհուր և զօդ. ցուրտ և ծանր, զջուր և զերկիր, ունե-
լով ցամաքութիւն և գիջութիւն: Այլ իսկզբանէ ա-
սաց, զի անժամանակ ցուցցէ զառնելն. քանզի երեք ի-
րօք պատկերացոյց ինքեան զեղեալսն, անժամանակու-
թեամբն և անքաւութեամբն և անտեղութեամբն:
Զի իսկզբանէն ոչ ունի ժամանակ, ոչ տարի և ոչ
օր և ոչ ժամ և ոչ մասն հատածի, և ոչ ոք է բաւա-
կան գիտել զեղեալքս ամենայն. և ոչ է 'ի տեղւոջ վե-
րայ. որպէս ինքն Աստուած է: Իսկ փոփոխմամբ և
շարժմամբ և քանակաւ և որակութեամբ և եղելու-
թեամբն, զատչին 'ի բնութենէ արարչին: Արդ իմաս-
տութիւնն Աստուծոյ՝ արուեստ, և զօրութիւնն՝ առնող,
և բարութիւնն՝ նիւթ անմարմին, զոր նիւթացոյց և
տեսակացոյց կամքն առատ և հնարաւոր, և յոչէից ըն-
չացոյց զձև երկնի և երկրի յանպատրաստ հիման վե-
րայ եղեալ: Քանզի երեք կամարք են մի քան զմի վե-
րագոյն, հրեղէն, և ջրեղէն 'ի վայր քան զնա, և օդե-
ղէն՝ որ է հաստատութիւնդ: Որք երեքեան հողմով
խառնեալ շուրջ գան բոլորեալ զերկրաւս, և երկիր 'ի
վերայ ինքեան ունի զջուր՝ հաստատունն, հողմով ան-
դունդ 'ի վեր փչեցեալ. զոր իւր բնական ծանրու-
թիւնն 'ի վեր չթողու թռչել, և յանդնդոց 'ի վեր փը-
չումն 'ի վայր չթողու անկանել, և Բանն Աստուծոյ
բարձեալ կրէ թեթևութեամբ զբոլորն: Այլ ընդ լի-
նել երկնի, կենդանածնեցաւ հրեշտակքն հրեղէնք,

որպէս և գաւառն է նոցա հրեղէն. տասնեակ դա-սուք զետեղեալք. տեղեաւ և փառօք և զօրութեամբ զանազանեալք, արտաքոյ չորից տարերց, ըստ որում անայլայլականք են, և անմահք. և է երկինն վերին վարագոյր ընդ մէջ նոցա և Աստուծոյ, որ է անասելի օրինակն։

Այլ ասեն իմաստունք՝ եթէ յառաջին շուրջն երկնից գոյացաւ Բնութիւնն, որ է արուեստն Աստուծոյ, ա-րարող զօրութիւն յետ Աստուծոյ. թերևս ներգոր-ծութիւն տարերացս չորից։

Այլ երկրորդն շուրջ՝ կառոյց զհաստատութիւնն, և վերացոյց զկէս ջրոյն առ երկու իրս պիտանացու, զի բարձցէ զծանրութիւն երկրի զառաւելն, և զի արգել-ցէ զկիզողութիւն հրեղէն երկնիցն 'ի մարմնաւորացս։

Այլ երրորդ շուրջն՝ ակնարկելով կամացն Աստուծոյ՝ շարժեաց զբոյսս և զբանջարս, որոյ սկիզբն բողբոս հողոյն, և կատարումն սերմն որ 'ի նմա, և զծառս՝ որոյ սկիզբն մամուան մօտ 'ի բոյսս, և կատարումն արմա-ւենին մերձ 'ի կենդանիս՝ յորս արու և էգ է։

Այլ 'ի չորրորդ շրջմանն եղև հրաման Տեառն 'ի վե-րայ լուսոյն, որ խզածն է յարփւոյն. և եհատ զնա յե-րիս մասունս, և յամանս բաղումն, յարեգակն, և 'ի լուսինն, և 'ի բազմութիւն աստեղաց. և երկոտասան կենդանատեսակք եղեն ճանապարհ արեգական և լուս-նի, և եօթն այլ ևս աստեղաց. երիւքն առնէ արեգակն զարուն, և յայլ ևս յերիսն բարձրացեալ՝ առնէ ա-մառն, և 'ի կշիռն ելեալ ցածնու. և երիւքն գործէ աշուն. և ևս ցածեալ ընդ հարաւ կազմէ ձմեռն։ Այլ յաղագս կարի բարձրութեան և ցածութեան աշխար-հաց՝ աճէ տիւն մինչև 'ի քսաներորդ ժամն, և պակա-սի մինչև 'ի չորրորդն։ Այլ որպէս ասեն իմաստունքն չորեքտասան կլիմ է աշխարհս, այսինքն բաժինս. և եօթն կլիմն անբնակ է մարդկան. զի վասն յոյժ ցա-ծութեան երկրին՝ ցուրտ է և խաւար. զի միշտ վեց ամիսն տիւ է 'ի խոյէն մինչև 'ի կշիռն, և վեց ամիսն գիշեր 'ի կշռէն մինչ 'ի ձուկն։ Իսկ խորին Հնդիկք[1]

1. Ստուգապէս չէ այս մասն Հնդ-կաց աշխարհի զայդ կշիռ ընդ հա-սարակածիւ, ուր հաւասար են ժամք լուսոյ տուընջեան և գիշերոյ. բայց եթէ Ափրիկէ իմացցին Խո-րին Հնդիկք։

միշտ հասարակ է, ոչ աճեն ժամքն, և ոչ պակասեն, այլ մնան երկոտասանք ։

Իսկ 'ի հինգ շուրջն և 'ի վերջն, ել հրամանն 'ի ջուր և յերկիր վասն կենդանեաց, սկսեալ 'ի կառաքրոյս և 'ի սպունգս, և կատարեալ 'ի մարդն 'ի կատարեալ կենդանին բանաւորութեամբ, 'ի հազար ազգս, գլխաւորօքն իւրեանց լեւիաթանաւ[1] որ 'ի ջուրս, և բեհեմովթաւն որ 'ի ցամաքային անասունս. և այս է ըստ Արիստոտելի հոգի ընդհանուր տուող գոյութեան ամենայնի ։

Այլ արդ բնութիւնն շարժէ զգունդն երկնից, և նա զժամանակն, և նա զտարրն, և նա զտունկս և զկենդանիս. և զհայկական նիւթս, զոսկի և զարծաթ, և զակն, և զայլսն զոր գործէ բնութիւնն ծծմբով, և ժիպակաւ՝ որպէս ասեն գիտողք[2]։

Իսկ 'ի գլուխն հաստեցեալ զանդամոցն յօրինուած, որպէս քաջ պատկերագիրքն՝ զի յոտիցն սկսանին, հըրաշագործէ իմն նոր յօրինելով բնութիւնս յերկնէ և յերկրէ, և որ 'ի մէջս են, վերցից ձեռաց խառնարհելոց 'ի միոյ պատկերի շինուած, զի մինն նման իցէ երից, որովք մի հաւատացի ստեղծողին բնութիւն և էութիւն և աստուածութիւն. գիտելով որ ինչ լինելոցն էր զմեղանսն, այլ ոչ կարէր արգելուլ նախագիտութիւնն զշարժումն յորդաստ բարերարութեանն. այլ և 'ի նոյն իսկ բարերարութենէն ոչ հրաժարէր ստիւք գալ հիւանդատես այնմ զոր ձեռօքն ստեղծ, և տուեալ զնա երկրի, մատնէ դահճին մահու կարճել զմեղսն, և հանել զչարութիւնն 'ի նմանէ, և ցուցանել նմա զվնաս օձին և զնենգութիւն չարին, զի այլ մի լուիցէ նմա, գիտելով զոր ինչ առնելոց էր՝ զվերըստին նորոգումն. այլ և ոչ ետ նմա զութն իւր կատարել զվճիռ մահուն՝ զոր եհատ նմա, զի ահա ոչ մեռաւ հոգին, այլ հողն հող եղև, և բնակիչն մնաց ։ Այս ա֊

1. Լեւիաթան ըստ Եբրայեցւոց գրոց Վիշապ Թարգմանի 'ի մերս. (Յովբ Խ. 20. Եսայի ԻԷ. 1.) և ըստ նկարագրին կարծի կէտ ձուկն կամ տիմսեան. իսկ բեհեմովթն Թարգմանի գազանք, որպէս և թարգմանեալ իսկ է 'ի Յովբայ գիրս (Խ. 10), և կարծի փիղ կամ ձիագետ ։

2. Այժմեան գիտողք ոչ ասեն յամենայն հայկական նիւթս զծըծումբ և զժիպակ, որ է սնդիկն ։

ըուեստաւորն կարող է և գթած , և նիւթն 'ի ձեռին նորա , և ժամանակ յարութեանն անմոռաց 'ի նմա [1] ։

Բ . Արդ որոբէիւք բոցապատ արարեալ Աստուծոյ զդրախտն՝ որ կայ ընդ արևելս , յերկրի արմատացեալ 'ի կատարս լերինն բարձու [2], որ հաւասար է գնդին լուսնի , անծերելի պտղով և անթառամ սաղարթիւք , ուր ոչ ներգործէ արեգակն տիւ և գիշեր , այլ յարփւոյն պայծառանայ , և կամ նշողիւք փառացն Աստուծոյ , որպէս զմեծ գործ նորա , և հրաշալի տեղի . որում ոչ համարեցաւ արժանի զանցաւորն տեսլեան անգամ , այլ յամենայն կողմանց վառեաց զնա հրով 'ի կողմանց և 'ի վերուստ , որպէս զշանթական հուրդ , որ յորժամ անկանի՝ զինքն և զտեղին ծածկէ յաչաց , զի մի ժպրհեսցի ոք խնդրել զնա առանց կամացն Աստուծոյ ։ Ուստի զամն երեսուն ողբացեալ Ադամայ Եւայիւ զանխորհրդութիւնս իւրեանց կուսութեանն , ապա գիտացին զկինմեանս յանասնոցն անկեալ յանարգանս , և ծնան զԿայէն հիւանդ ծնողացն ցաւած ծնունդ , որպէս ասեն բժիշկք , քերբ միով Կլիմաս կոչեցեալ . և զկնի երեսուն ամաց ծնան զԱբէլ , և զԱբելուհի քոյր նորա [3] ։ Իսկ զկնի այլևս երեսուն ամի սպան Կայէն զԱբէլ . քանզի ուսեալ 'ի ծնողացն պատուել զԱստուած պատարագօք պատուականաց և առաջնովք , և վասն սիրելոյն զմիմեանս՝ ընդ անձին և ընդ եղբօրն մատուցանել ։ Իսկ Աբելի ածեալ յանդրանկաց գառանց և 'ի պարարտաց զիւր և զեղբօրն , վասն որոյ հայեցաւ Աստուած նախ յԱբէլ և 'ի պատարագս նորա , և 'ի Կայէն ոչ նայեցաւ , զի զյուրն եբեր , ընդ անձին միայն , և ոչ զմասն եղբօրն . և ոչ եղև ընկալեալ 'ի վերուստ հրով , որպէս զԱբէլն . վասն որոյ 'ի կարծիս եղեալ Կայէն վասն Աբելի , թէ առնու զնա 'ի դրախտն Աստուած վասն ընդունելի պատարագին , և նախանձու վառեալ՝ սպան զնա ։ Իսկ իմացեալ Ադամայ և Եւայի ,

1 Ասա հին օրինակքն յաւելուն . Ստուգէ ոգւոց , գիտութեան և ուղղափառութեան խորհ , ծնող փառաց և գործնեան 'ի փոյթ աղաղակոց ։

2 . Բաղդում համանուօթեան է դրախտին լինել 'ի բարձրաւանդակում երկրի , այլ ոչ լուսնամերձ ։

3 . Քերբ-կանանց Կայենի և Աբելի այսպէս անուանս ընծայեն հնախօս պատմիչք , ըստ Հրէից աւանդութեանց և ըստ Ասորւոց ։

սգացին զնա ամս հարիւր և քառասուն ։ Այլ 'ի կոչելն Աստուծոյ զԿային ողորմութեամբ յապաշխարանս, ատեաց և յաւել մեղս 'ի վերայ մեղաց, և առեալ պիտակ 'ի Ճակատն[1], որպէս ասեն, և դողդոջումն յամենայն անդամսն, և ծնեալ որդիս և թոռունս, յերկարակեաց եղեալ՝ տանջանօք և նախատանօք մեռանի ։ Այլ զի որդիք նորա Ենովք և Գայերիդադ և Մայաէլ և Մաթուսաղա և Ղամէք նման հօրն չարք էին ․ որպէս Ղամէք խոստովանի կանանցն, այր և երիտասարդ սպանեալ, զոր ասեն եղբարք արդարոյն Ենովքայ, զոր սպան և առ զկանայս նոցա, և ոչ թէ զԿային և զորդի նորա, որ նման հօրն ասեն, զոր Աստուած ասաց ոչ ումեք սպանանել զնա ։ Այս Ղամեքայ որդիք, Թովբէլ և Յուբաղ, և քոյր նոցա՝ Նոյեմի, արարին քնարս և երգս, և սնգոյրս, և գտաւ 'ի նոցանէ դարբնութիւն պղնձոյ և երկաթոյ ։

Գ․ Իսկ զկնի երկերիւր և երեսուն ամաց ելիցն 'ի դրախտէն, եղև որդի մխիթարութեան Ադամայ Սէթ, որ յետ երկերիւր և հինգ ամին՝ ծնանի զԵնովս, որ և վարս ուղիղս ցուցեալ յուսացաւ յԱստուած հատուցանել նմա, և կոչեաց զանուն տեառն Աստուծոյ յօգնութիւն ․ և արար գիր, և գրեաց յերկուս տախտակս պղնձիս և խեցիս[2], և մարգարէացաւ եթէ երկու անգամ անցանի աշխարհ, ջրով և հրով, և գրեաց զայս, և զանուանս ամենայն իրաց, զորս եդեալ էր Ադամ զի պահեսցին 'ի պնակիտսն, 'ի ջրոյն՝ 'ի պղնձն մնասցէ ասէ, և 'ի հրոյն թրծեալ աղիւսն խեցեայ ․ և վասն այսորիկ աստուած կոչեցաւ, և որդիք նորա՝ որդիք Աստուծոյ ։ Այլք ասեն՝ յորդւոց նորա երկերիւր անձինք յիշեցին զկեանս դրախտին, և ելին 'ի լերինս պահել կուսութիւն, և աստի կոչեցան որդիք Աստուծոյ ․ և ապա ձանձրացեալք իջին 'ի լեռնէն Ահերմոնի[3]․ և հալածեցին զնոսա եղբարք իւրեանց ։ Այլ որդիքն

1 Պիտակն Կայենի ըստ ոմանց եղջիւր է բուսեալ 'ի Ճակատ եղբայրասպանին, ըստ այլոց կեղ կամ խայծ իմն ․ և ըստ բազմաց՝ երերելն և տատանելն իսկ է նշան անիծից նորին ։

2․ Երկու արձանքն Ենովսայ ըստ Յովսեպոսի և բաբելոնական աւանդութեանց, զոր ընկալեալ է և Հարց ։

3․ Մենակեցութիւն նահապետացս յԱհերմոն լերին պատմի յԵնովքայն անուանեալ անվաւեր գիրս ։

Կայենի և դստերքն 'ի քնարս և 'ի մնգոյրս պատրեալ զնոսա՝ առ խնքեանս դարձուցին, առնուլ կանայս զորս ընտրեսցեն. և արարին այնպէս, անցեալք զուխտիւն Աստուծոյ, որ եդեալ էր նոցա մի՛ առնել խնամութիւն ընդ նոսա։

Դ. Այս ասեն զկնի հազար ամին ելիցն 'ի դրախտէն, որդիքն Կայենի եդին իւրեանց Թագաւոր, Սամիրոս անուն [1], նոյնպէս և որդիքն Սեթայ՝ Աղորոս անուն, որ եգիտ զԹիւ կենդանակերպիցդ և զմոլորակացդ, և 'ի նմանէ անուանեցաւ քաղդէութիւնն, որ է հմայութիւն աստեղաց. և անտի Թուեն տասն Թագաւոր, և ժամանակ նոցա հազար հարիւր և ութսուն ամ։ Ենովս հարիւր և յիսուն ամաց ծնանի զԿայնան. Կայնան հարիւր և եօթանասուն ամաց ծնանի զՄաղաղիէլ. Մաղաղիէլ հարիւր վաթսուն և հինգ ամաց՝ ծնանի զՅարեդ. Յարեդ հարիւր վաթսուն և երկու ամաց՝ ծնանի զԵնովք։ Ենովք հարիւր վաթսուն և հինգ ամաց՝ ծնաւ զՄաթուսաղա. Մաթուսաղա հարիւր վաթսուն և հինգ ամաց՝ ծնաւ զՂամէք. Ղամէք հարիւր ութսուն և ութ ամաց՝ ծնաւ զՆոյ. և լեալ եօթն հարիւր եօթանասուն և երեք ամաց՝ մեռաւ նախ քան զհայրն քսանեւինն ամօք։ Ի հազար վեցհարիւր վաթսուն և վեց ամի ելիցն Ադամայ ծնաւ Նոյ. յորում ժամանակի բազմացան չարիք, և յաճախեաց անիրաւութիւնն։

Որ նախ եգիտ սատանայ իւր զէն զորկորամոլութիւնն, ապա զկնասիրութիւնն, ապա զսպանութիւնն. և արար զայս սատանայ, զի 'ի շատ խառնիցն լինին կանայք անծնունդք և կենդանիքն սպանանեն զմիմեանս, և բառնայ մարդկութիւն։ Քանզի քառասուն այր մեռանէր վասն միոյ կնոջ, և ընդ կանայսն միայն ունէին խաղաղութիւն, ասէ սուրբ հայրն Եփրեմ։ Իսկ խորնամք Տեառն ընդդէմ չարին՝ զբաղում խառնման առնէր պատճառս ծնանելոյ հսկայիցն անձոռնեաց. և զի 'ի

1. Զայսպիսի աւանդութիւնս 'ի Միքայելէ Ասորւոյ պատմէ աանու հեղինակս։ Սամիրոսի յաջորդութիւն ոչ ուրեք յիշի, զԱղորոսին Թուեն Քաղդէացիքն մինչև 'ի ջրհեղեղն աղգս տասն, վասն այսորիկ և բազումք նոյն համարին ընդ նահապետսն յԱդամայ ցՆոյ. որպէս և մերս Խորենացի. Ա. Գ։

կանանցն եղև կանանց տխուր, 'ի ծնանել զյաղթանդամ կորիւնսն՝ մեռանէին մարքն, և սպրէին ծնեալքն. որ և անձեցեալք, և 'ի կոյտս իւրեանց հասակին հասեցեալք, հպարտացեալք՝ յաւիտենից տրք անուանէին զինքեանս: Վասն որոյ զի Աստուած բազմակեաց արար զնոսա, զի փոխանակ զրոյ լինիցին զաւակացն, և շատս ծնանիցին, նոքա վիսացեալք ընդ աւէն ոչ ունէին մահու. զոր կարծեալ արարչին, և առեալ յաղտեղեալ անձանց նոցա զհոգւոյն շնորհն, ասաց՝ եղիցին տարիք դոցա հարիւր և քսան, և հոգի իմ մի մնասցէ 'ի դոսա. և հարիւր և քսան ամ՝ ոչ հասարակաց մարդկան յայտնի հետէ, այլ արանց ժամանակին ներքումն ապաշխարանաց: Այլ եղեալ Նոյի հինգ հարիւր ամաց անքամբաս կենօք յանապատի բնակելով կուսութեամբ, հրամայէ Աստուած կին առնուլ, և որդիս ծնանել, և արկղ շինել՝ որ վերաբերի ջուրց: Այլ եղեն իրքն. զհարիւր ամն ապաշխարութեան տուեալ ժամանակին[1]. և զի ոչ ապաշաւեցին՝ կարծեաց զքսան ամն. զոր առեն յինն հարիւր վաթսուն և երկու ամացն Մաթուսաղայի յաւելեալ և անցեալ 'ի ներքոյ ջրոյն[2]. վասն որոյ 'ի վեցհարիւրերորդի ամին Նոյի եղև ջրհեղեղն, և կորոյս զամենայն կենդանիս, բայց յայտնանէ՝ որ ընդ Նոյի կային 'ի տապանին, ընդ ութ բանականսն:

Ե. Այլ զթիւ յամելոյն Ադամայ 'ի դրախտին ոչ ոք կարէ ասել. մի՝ զի ժամանակագործ արեգակնս այս ոչ սպասաւորէ դրախտին, և երկրորդ՝ զի որքան անմեղ էր Ադամ՝ ընդ անմահսն էր նորա վիճակն, որք չեն ընդ տարեօք: Իսկ զկնի յանցմանն՝ ոչ յամեաց 'ի դրախտին. զի ընդ մահու վճռաւ եմուտ, և Աստուծոյ մեռաւ, և գերեզմանի պէտք էին, և դրախտն անմահից էր տեղի, վասն որոյ յերկիր հանեալ՝ մտանէ ընդ ժամանակաւ: Այլ անտի համարէ հոգին զտարիսն 'ի ձեռն Մովսիսի[3]. որ լինի ըստ եօթանասնիցն թարգ-

1. Հին Օ. Ե. Եղև Նոյ վեց հարիւր ամաց:

2. Ըստ օրինակաց ոմանց թարգմանութեանն եօթանասնից ջրհեղեղին թուական կանխէ 14 կամ եօթն ամաւ քան զմահ Մաթուսաղայի. բայց ըստ այլոց և ըստ բնագրին 'ի նմին իսկ ամի ջուրցն հանդիպալի մահ նորա:

3. Արդարև հարկ է զպատմական ժամանակի սկիզբն ոչ յըստեղծմանէն Ադամայ առնուլ, և ոչ իսկ յելիցն 'ի դրախտէն, այլ 'ի լինելութենէն Կայենի, յորմէ

մանուԹեանն յելիցն 'ի դրախտէն մինչև ցՋրհեղեղն՝ երկու հազար երկու հարիւր քառասուն և երկու ամք. և, ըստ եբրայեցւոցն՝ հազար վեց հարիւր յիսուն և վեց ամք, պակաս հինգ հարիւր ուԹսուն և վեց ամօք. և զպատճառն ասեն Թէ կնասէրք էին Հրեայքն, կարճեցին զտարիս ամուսնանալոյ առաջնոցն, զի մի ոք արգելցէ զնոսա 'ի տղայուԹեանն առնուլ կանայս. քանզի անմիաբանուԹիւն նոցա նախ քան զամուսնանալն է։ Զի զԱդամ հարիւր և երեսուն ամաց ասեն ծնանել զՍէԹ, և ՍեԹայ հարիւր և հինգ ամաց ծնանել զԵնովս. իսկ զյետ ամուսնուԹեան ժամանակն զոյգ բերեն եօԹանասնիցն. և 'ի Յարեդին և 'ի ՄաԹուսաղայէն և 'ի Ղամեքայն միաբանին դարձեալ. որ առաւել յանդիմանէ զնոցա ստուԹիւնն, զի Թէ կնասէրքն շատ պահեցին զողջախոհուԹիւնն, քանի՞ առաւել աւագքն և լաւքն։ Ն.րդ Նոյ լեալ ամաց հինգ հարիւր՝ ծնաւ զՍեմ, զՔամ և զՅաբեԹ, որովք ապրեցաւ 'ի ջրոյն, որ եղև 'ի վեցհարիւրերորդի ամին իւրոյ, և զկնի ելիցն 'ի տապանէն եկաց այլ ևս երեքհարիւր և յիսուն ամ. և ծնաւ ասեն որդի մի այլ Մանիտոն անուն [1], և դուստր մի Աստղիկ անուն, որոց և բաժանեաց զամենայն աշխարհս. նախ յերիս հատեալ բաժինս՝ ըստ երից որդւոցն որք ելին 'ի տապանէն, յԵւրոպիա, 'ի Լիբիա, յԱսիա։ Եւրոպիա՝ մասնեալ ասի, քանզի մասնեաց Նոյ զարևմուտս կցելով 'ի նա յարևելից յԵմաւոն լեռնէ, և ետ զնա ՅաբեԹի, որ ձգեցան ևս մինչև ցլերինս Կասբից և Կովկասու և ցծին զկղզիս. և մասն ինչ յարևմտից հատեալ ետ Մանիտոնի, որ ասեն խնդրեաց յոսկերացն Ադամայ, զոր ունէր Նոյ 'ի տապանն. և ետ նմա զլուսունս ծննդացն, և գնաց. որ և եգիտ զհաւահմայուԹիւնն. և նա է հայր բնակչաց Միւրիտոնացւոց։ Եւ Լիբիա լիաբաժին ասի, որ է մեծասահման կողմն հարաւոյ, Եգիպտոս, և ամենայն Հնդկաստան և ԵԹէովպիա, զոր ետ Քա-

յառաջ խաղայ և ապացուցանուԹիւն Ս. Գրոց։

1. ԶՄանիտոն յիշեն պատմիչք մեր և Յայսմաւուրք, և ՄեԹոդիոս 'ի գուշակական բանին երկրայնելի։ Ըստ հեղինակիդ յանուն դորա կոչեցի Մոն կղզի Անգղիոյ։ Այլք ոմանք 'ի Բրիտանեայ որդւոյ Նոյի ասեն կոչեցեալ Բրիտանիա։

մայ. և զերկիրն խնկաբեր, որ կոչեցաւ Արջանիկ Արա-բիա, եւ Մսողկոյ դստեր իւրոյ, ուստի եկն տիկինն Սաբայ, զի յայնմ հետէ կանայք ժառանգեն զնա : Նաև Մսիա աստուածային աւր[1], որ է արևելք. տայ զնա Սե-մայ, 'ի Կարմիր ծովէն և յԱսիոյ[2] և 'ի Պաղեստինայ և յՄսորեաց մինչև ցՊարթևս և ցԱրիան, և ցելն արևու : Տայ նմա և զոսկերս նախաստեղծիցն արկեղբ, զոր 'ի բռնանալն Քամայ 'ի վերայ նորա, թաղէ 'ի Գող-գոթա և 'ի Բեթղեհէմ. և եդ նզովս զի մի յափշտա-կեսցեն զմիմեանց :

Յետ աշխարհաւեր ջրոյն յերկրորդում ամին ծնաւ Սեմ զԱրփաքսադ 'ի հարիւրերորդի երկրորդի ամին իւ-րոյ[3]. Արփաքսադ 'ի հարիւրերորդի երեսներորդի և հին-գերորդի ամին ծնաւ զԿայնան. սա բազմացոյց զքաղ-դէութիւն և եգիտ զկախարդելն աստեղօք, վասն որոյ որդիք իւր աստուած համարեցան զնա, և արարին նմա պատկեր 'ի կենդանութեանն և պաշտեցին զնա : Կայ-նան հարիւր և քսան ամաց ծնաւ զՍաղա. Սաղա հա-րիւր և երեսուն ամաց ծնաւ զԵբեր. Եբեր հարիւր երեսուն և չորս ամաց ծնաւ զՓաղեկ, որ է բաժա-նումն, քանզի անհաւան լեալ վիճակացն տուելոցն 'ի Նոյէ, վիճէին մինչև դարձեալ բաժանեցին, ըստ բազ-մին և ըստ սակաւին անձանց ազգի մարդկան. և ապա միաբանեալք ընդ միմեանս սիրով խորհեցան գնալ յարևելս, տեսանել զդրախտն՝ զոր լուեալ էին եթէ անտի ելին նախաստեղծքն : Այլ իբրև չոգան զշատ ա-ւուրս, և ահա ծով լայնանիստ անջրպետեալ էր զնա յերկրէ. և դարձան անտի խորհելով 'ի մնոտիս, եթէ վասն մեղաց ջուր աւերեաց զերկիր, և անց ծով ընդ մէջ դրախտին, և մեղքն այն գտանի այսօր առ մեզ և ոչ պակասի յաշխարհէ. և արդ եկայք շինեսցուք մեզ աշտարակ պահել զմեզ 'ի գալ պատուհասի մեղաց ջրոյ : Այլ էր Փաղեկ ամաց հարիւր երեսուն և երից և ծնաւ

1. Այս՝ աստուած լսի 'ի լեզու հիւսիսային ազանց Եւրոպիոյ, որ-պէս և Էսկոտք աստուածակերպ կամ աստուածաքաղաք, արքայ-ութիւն դից նոցին :

2. Եւիլա արևմտեան կողմանք Արաբիոյ են յեզերս Կարմիր ծո-վու հանդէպ Եթէովպիոյ և Եգիպ-տոսի :

3. Ս. Գիրք հարիւրամեան ասեն զՍեմ 'ի ծննդեան Արփաքսադայ :

նմա Ռագաւ. և եկեալ իշխանաց աշխարհի յերկիրն Սենաար, 'ի դաշտն Քաղանէ[1], արկին հիմն քաղաքի, և շինեցին զնա վաղվաղակի, և սկսան ապա զաշտարակն յառաջին ամին Ռագաւու. ամեն ոսկեղէն և արծաթեղէն սարսխօք շուրջ դնելով աղխս, խորովեալ հրով, զանգեալ բռով, կրով և կպերբ, արձակահիմն, խորամէջ, լայնափողոց, բացեալ պատուհանօք լուսաբերօք. ամեն և ակունս լուսարձակս դնել առ պատուհանօքն: Անխոնջ վաստակօք զամառն և զձմեռն գործէին, և հող տեղւոյն ձեռն տայր. շար իմն մրջմանց յամենայն կողմանց ելողաց և իջողաց, այր զայր գրգռէր; և կին զընկեր իւր: Այլ ոչ ոք ասէր եթէ ես շատ գործեցի քան զքեզ, այլ եթէ դու շատ գործեցեր քան զիս. զի դեռ անախտ և անցաւ ունէին բնութիւնս. և մինչև ցքառասներորդ ամն Ռագաւու՝ ոչ առին պարապ գործոյն, մինչև հասուցին յօդն անտես, յործուտն և 'ի մրծկուտն և 'ի սատակողն, յոր թռչուն ոչ վերանայ, և թէ ձկտի՝ թևակիզեալ անկանի. և ասեն թէ զոսկին յատակացն սկսեալ տարան ընդ մէջն մինչ 'ի վեր, և հալէր 'ի ջերմութենէն, և մարդիկն ջանային ևս հնարիւք անկէզ մնալ, և ոչ կասել 'ի գործոյն, մինչ ինքն Տէր ողորմեալ դադար տայր առնուլ յանօգուտ ջանիցն. և գտանին զրոյցք 'ի տանն Նեբրովթայ[2], եթէ նախ հրեշտակ եկն առ Նեբրովթ, որ իշխան էր, և որսայր[3] շինողացն կերակուր, և ասէ ցնա. Ես եմ հրեշտակ Աստուծոյ, կողմնապետ արևելից. այսպէս ասէ տէր Աստուած երկնի և երկրի, լռեցէք դադարեցէք 'ի գալոյդ առ իս, զի ոչ կարէք. այլ ես եկից առ ձեզ 'ի ժամանակի, և տաց ձեզ սանդուխս որով կարէք և դուք գալ առ իս: Այլ ոչ լուան հրեշտակին. ապա ինքն ասաց ցէակիցսն իւր. Եկայք մեք իջցուք և բաժանեսցուք զլեզուս նոցա. և զի ստեղծուածք ձեռաց նորա 'ի ցասմանէ զարհուրեալք փախչէին առ

1. Սենաար և Քաղանէ սորին կողմն են Միջագետաց ընդ արևելից կուսէ, որ յետոյ Բաբելոն կոչեցաւ և այժմ Իրագ-Արէպի:

2. Զրոյցք տանն Նեբրովթայ թըւին առասպելաւանդ գիրք պատմութեան Նեբրովթայ, զոր յիշէ և Վրացն պատմիչ:

3. Ի հին Օ. յետոյ փոխեալ է ոչ փոյթ:

նա, ոչ պատժեաց զնոսա, այլ հոտով դրախտին առաքեցոյց զնոսա. զի հանդէպ կայր դրախտին գլուխ բրգանն : Այլ այսպէս մխիթարեալք զմայլմամբ յանձնառելք բարբա-նէ հոգւոյն, մոռացան զառաջին լեզուն. և չարար զնո-սա վատասակ միանգամ քակելով, այլ հողմոյ հրա-մայեաց գործ, և ոչ զոք սպան 'ի նոցանէ. զի ոչ շըր-ջեաց՝ այլ հոսեաց : Այլ շատ ինչ բարի եղև. մի զի ծա-նեան մարդիկ զիւրեանց տկարութիւնն. և դարձեալ պատճառք իմաստից և գեղեցկաբանութեան, 'ի խոշոր լեզուէն առաջնոյ և 'ի կոպտաձև. փափկագոյնն Ելլե-նացւոց, և սաստկագինն Հռովմայեցւոց, Հոնն սպառ-նական, և Ասորին աղաչական, Պարսիկն պերճական, և Ալանն գեղեցկաձև, Գութն ծաղրական, Եգիպտա-ցին խարափաձայն, և Հնդիկն ճճուող, Հայն համեղ և ամենազարդ և համեմական. և որպէս ազգի ազգի զոյնք գեղեցկութիւն առնեն, և զանազանութիւնք համա-կաց, այսպէս և լեզուաց զանազանութիւնք : Այլ առա-ջին լեզուն մնաց առ Եբերայ, որ ոչ միաբանեաց ընդ այլսն, և որպէս մեղքն բաժանեաց յերկու տուն զմարդիկ, 'ի Կայենին և 'ի Սեթայն, նոյնպէս և աստ, յերկու եղեն ազգ մարդկան, յԵբեր, և յեօթանա-սուն և երկու տանուտէրսն. որպէս մի Աստուած միա-զօր, համակ քաղցրն 'ի մէնջ հարկեալ և տանջէ ևս, և կոչի Աստուած և տէր : Այլ եթէ 'ի յարութեանն հա-սարակի յԵբերայն խօսին, բայց զայս է ասել, եթէ ցեղացեղ և բազմակարօտ մեր բնութիւնս և յաջնա-նուն, երբ մաքրի և պարզի՝ անկարօտ լինի. զլեզուս հրեշտակաց առնու, ասէ սուրբն Եղիշէ, որով ընդ Աստուած և ընդ միմեանս խօսին : Այլ Տէրն ելից ըն-կարօտութիւն մարդկան, զխաչն տուեալ աշտարակ յերկինս ելից, և զաստիճանս առաքինութեան զօրի-նակն Յակոբայ ցուցեալ, և անդ իսկ կոչեաց Հոգին որ փոխեաց զլեզուս նոցա, հրեշտակս Աստուծոյ փոխա-նակ մարդկան, զի յօժարեսցին առ հրեշտակս ելա-նել : Կացոյց ասէ զսահմանս ազգաց ըստ թուոյ հրեշ-տակաց Աստուծոյ, թուեաց 'ի հրեշտակս և յայլա-մենայն լեզուաց կացոյց վերակացուս 'ի հրեշտակաց Աստուծոյ, զի մի օտարասցին ամենևին յԱստուծոյ հեթանոսք :

Զ. Բայց Բէլ հպարտացեալ յանձոռնի հասակն վաթսուն կանգուն[1], հնազանդեցոյց իւրեան զամենայն իշխանսն որպէս աստուծոյ, և ապա արձակեցաւ, բաց 'ի Հայկայ՝ որ էր որդի Թորգոմայ, որդւոյ Թիրասայ, որդւոյ Գամրայ, որդւոյ Յաբեթի, որդւոյ Նոյի, որ ոչ պաշտեաց զնա աստուած, այլ և շուն կոչեաց զնա. և զի եկն 'ի վերայ նորա ծանր ամբոխիւ, եսպան զնա Հայկն նետիւ հարեալ զսիրտն՝ պղնձեօք տախտակեալ:

Իսկ որդիքն Բելայ 'ի գնալն յերկիրն կալուածոց իւրեանց, տեսին զՊաղեստինեայ և զկողմանսն Յորդանանու զի պարարտ և յուռթի էր. բնակեցան անդ ուժովն Բելայ ազգականին իւրեանց և զրկեցին զորդիսն Սեմայ, և եղև պատերազմ սաստիկ: Բայց և որդիքն Յեկտանայ, Սաբա և Եւիլա և Ուփիր, իմացան զկազմած զինուց, և խնդրէին իւրեանց տեղի ընդարձակ, զի աճեցին 'ի բազմութիւն: Եւ յերեսաց նոցա գաղթէին մարդիկ յամրոցս ինքնագործս, և ապա սկըսան շինել բերդս, և պատերազմողքն գտին զմեքենայս առման ամրոցացն, մինչ ձանձրացեալ ազգացն յընտիր առնեն նոցա զերկիր զոր և կամեցին. և առ Սաբայն զխնկաբեր երկիրն, զոր Սաբա կոչեաց, և Ուփիր զաշխարհն ոսկեհանաց, որ է Հնդիկք. և Եւիլա՝ զերկիրն պատուական ականց և անուամբն իւր կոչեաց Եւիլատ:

Բայց Ռագաւ հարիւր երեսուն և երկու ամաց ծնաւ զՍերուք. Սերուք հարիւր և երեսուն ամաց ծնաւ զՆաքովր, և շինեաց Սերուք զՍրուճ. Նաքովր ամաց եօթանասուն և ինուց ծնաւ զԹարա. Թարա եօթանասուն ամաց ծնաւ զԱբրահամ: Յայնմ ժամանակի ասեն լեալ զԱմազոնս[2], որ է կանանց զինուորութիւն. քանզի զկին ոմն ասեն յազգէն Թորգո-

1. Թուի 'ի պատկերէն կանգնելոյ 'ի Նաբուգոդոնոսորայ համեմատեալ զբարձրութիւն Բելայ 60 կանգուն: Բայց ինչ զիւրս իւր հեղինակս ժե կանգնեայս ասէ զհսկայսն, և վասն այնորիկ նոքին չափով ամբարձեալ ջրոյն հեղեղին 'ի վերոյ քան զլերինս 'ի բապատուասպուտ ջնջումն նոցին:

2. Ամազոնաց (միայնակին կանանց) զօրաց պէսպէս պատմութիւնք և Թուրքք, երկիր հաւանելի է ըղԹերմոդոն գետով Պոնտոսի, Թերմէ-չայ յայժմուս. ուր լոկ ցարդ Մազոն-փող լեառն:

մայ ժառանգ մնացեալ թագաւորութեանն ազգին, հատեալ զարու զաւակացն, և էր քաջասիրտ և արի, և աւերէր զազգս բազումս, և եղև գժտութիւն 'ի գըրացն, և կոտորեաց զնոսա, և ստացաւ զօրս 'ի կանանց, և նոյնպէս առնէր եղեալ զաթոռ թագաւորութեան իւր յԱյլիոն[1] քաղաքի ։

Է. Յիշեսցուք համառօտիւք և զմերն նախնին Յաբեթ, որ զկնի ջրոյն ծնաւ զԳամիր, ուստի Գամիրք, և զՄագոգ, յորմէ Սկիւթք և Գաղատացիք, և զՄեդա, որ զՄարս շինեաց, և զԹոբէլ, յորմէ Թետալք, և զՄոսոք որ առ զԿիլիկիա. և զԹիրաս՝ յորմէ մերն Ասքանազ և Թորգոմ. և Յաւանայ՝ Յոյնք, և 'ի Թորշիշայ՝ Իբերք և Տիւրենացիք. և 'ի Կիտիմայ Հռովմայեցիք և Լատինացիք ։ Այլ Թորգոմ[2] ծնաւ զՀայկն, և զեօթն եղբարս նորա, զՔարթլոս, զԿովկաս և զայլսն, որք ժառանգեցին զՀիւսիսի ։ Այլ 'ի Հայկայ Արամանեակ, յորմէ կոչեցաւ լեառն Արագած, և յԱրամանեկայ Արմայիս, որ շինեաց զԱրմաւիր ։ Այլ Արմայիս ծնաւ զԱմասիա, յորմէ կոչեցաւ Մասիս լեառն. և Ամասիա ծնաւ զԳեղամ, որ շինեաց զԳեղարքունի. Գեղամ ծնաւ զՍիսակ, յորմէ Սիւնիք, և զՀարմա, որ ծնաւ զԱրամ, յորմէ ամենայն ազգ կոչէ զմեզ Արմէն ։ Զի սա ընդարձակեաց զսահմանս Հայոց, որ զԿապադովկացիս և զՊոնտոն[3] և զԿիլիկիայն ընդ իւրև նուաճեալ, Արամանեակ կոչէր ։ Այլ յԱրամանեկայ և 'ի Պոնտոս՝ Առաջին Հայք. և 'ի Պոնտո-

1. Այլիոն քաղաքաւ նշանակէ զԻլիոն, այսինքն զՏրովա ։

2. Ըստ Ս. Գրոց Թորգոմ որդի է Գամերայ որդւոյն Յաբեթի. ըստ Խորենացւոյ (որ ըստ Աբիւդենեայ և Մար Իբասայ) Թորգոմ հայր Հայկայ որդի է Թիրասայ որդւոյ Գամերի. Թէպէտ և 'ի մերում թարգմանութեան Ս. Գրոց առէ ոչ գտանի այս, նաև ոչ յայլսն։ Նոյնպէս և զԱսքանազ Ս. Գիրք Գամերայ որդի ասեն, պատմիչք մեր՝ Թիրասայ. շփոթութեամբ և կամ մանրագոյն կարգելով զազգաբանութիւն Գամերայ և զՀամանաւանդ եղբօրորդիս, զորովք զանց առնեն Ս. Գիրք, որպէս և զայլովք բազմօք ։

3. Ակնարկէ 'ի բան Խորենացւոյ. Ա. ԺԴ. «Զկլիմայն զայն Պոնտոսի (Բրոդին) Արմենիան կոչեն (Յոյնք) որ թարգմանի Ա. Հայք»։ Հեղինակս զԱ. Հայս կամ զգաւառն Կեսարիոյ համարի Արամանեակ կոչեցեալ. նոյն ինքն այլուր և այլ ոք՝ Արամանեակ գաւառ ցուցանեն զկողմանս այժմեան Աղչէհրօվայի, զոր Հայք կոչեն Աշխարհաբերդ ։

ւէ 'ի քաղաքն Մելտենի՝ Երկրորդ Հայք. և անուն 'ի Ծոփաց գաւառն՝ Երրորդ Հայք. և անուն 'ի քաղաքն Մարտիրոսաց և յԱղձնիս՝ Չորրորդ Հայք. և զսեփական աշխարհն իւր կոչէ Մեծ Հայք։ Սա ծնաւ զԱրայն գեղեցիկ, որ մեռաւ 'ի Շամիրամայ, թողլով որդի զԱնուշաւան. որոց կարգի ազգն այսպէս։

Պարէտ, Արբակ, Զաւան, Փառնաս[1], Սուր յաւուրս Յեսուայ, Յօնակ, Համբակ, Առնակ, Նորայր, Վստամ, Կար, Գոռակ[2], Հրուան, Ընձակ, Գոռակ[3], Հաւան, Զարմայր, որ յԻլիական պատերազմին ընդ Եթովպացւոց զօրուն մեռանի։ Պերճ յաւուրս Դաւթի արքային. Արբուն, Հոյն, Յուսակ, Կայպակ, զոր պըսակէ Վարբակէս Մար, որ հանեալ զթագ 'ի Սարդանապալլեայ, տիրէ Ասորեստանի և Նինուէի։ Առ սա եկին որդիքն Սենեքերիմայ և պատուեցան ևս 'ի Պարոյրայ։ Զոր յաջորդէ Հրաչէ՝ որդի իւր, որ էր ընդ Նաբուգոդոնոսորայ յԵրուսաղէմ, և ած զՇամբատ ընդ իւր 'ի Հայս, յորմէ ազգ Բագրատունեաց։ Եւ յետ Հրաչէի Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ, Փաւոս, Հայկակ, Երուանդ, որ ծնաւ զՄեծն Տիգրան, որ սպան զԱժդահակ, և զԿիւրոս ըմբռնեաց և արձակեաց. Բաբ, Տիրան, Վահագն, Առաւան, յորմէ Առաւեղեանք, Ներսեհ, Զարեհ, Արմոգ, Պայգամ, Վան, Վահէ, զոր սպան Աղեքսանդր Մակեդոնացին։

Իսկ 'ի Քամայ որ մնաց մեզ ասել, Քուշ, Մեստրիմ, Նեբրովթ, որ է Բէլ, Բաբ, Անեբիս, Արբէլ, Քայաղ, միւս Արբէլ, Նինոս այրն Շամիրամայ։

Ը. Ասացուք և զկարգ թագաւորացն։ Առաջին թագաւորեաց Նեբրովթ 'ի Բաբելոն հիւսածոյ թագապսակեալ և ոչ կռածու, 'ի յիսուն և վեց ամին Սերուքայ. սա շինեաց զՇօշ քաղաք, որ ասեն Ասպահան, և սա սպանաւ 'ի Հայկայ, որդւոյ Թորգոմայ։ Եւ թագաւորեաց Թիրոս քաղդէացի. յաւուրս սորա գտաւ արուեստ ոսկեհանութեան և արծաթագործութեան։ Եւ յետ նորա թագաւորեաց Սամիրոս յազգէն Սեմայ ամս եօթանասուն և երկու. սա սկսաւ դա-

1. Օ. Փառնաւ։

2. ՕՕ. Կարգռակ կամ Կարգըռակ։

3. Հին Ցուակ.. Գլակ։

հեկան և դրամ գործել անուամբ գրոց, և առ տուեալ
գտաւ քանդուած նկարու, և կաղապարծութիւն և չափ
և կշիռ, և ամենայն բարեկարգութիւն: Զմանէ ա-
ռէ Մենադրոս մոգ եթէ երկու աչս ունէր: Ի քսան և
հինգ ամին Նաքովրայ էր ծննդութիւնն Յորայ որդւոյ
Զարեհի, որդւոյ Մագուէլի, որդւոյ Նոյաւայ, որ
զամն երեսուն և ութ պատերազմեալ ընդ սատանայի,
յաղթեաց համբերութեամբ և փառաւորեցաւ: Յեօթ-
ներորդ ամին Թարայի Թագաւորեաց Արփաքսադ ամս
ութևտասն. և զկնի նորա Միլոս Աթուրացի ամս
վաթսուն և երկու, հանեալ զպատիւն 'ի Նաբեղոնէ
յԱթուրիայ, որ է Ասորէ. բայց Նաբոքա ամս թա-
գաւորեաց 'ի Նաբելոն: Իսկ Մահերան եղբայր Թա-
րայի սպան զնա, վասն հանելոյ 'ի նմանէ զՄայրեան
կուռքն, զի էր քրմապետ: Եւս չինեցաւ Դամասկոս
յԱքրամայ Հիթացւոյն: Աբրահամու մօրն Մելքա-
թու էր անունն. և յետ տասն ամի ծնանելոյն Ա-
բրահամու, ծնաւ Թարա զՍառա 'ի Զմրութայ կնո-
ջէ իւրմէ, և ոչ 'ի մօրէն Աբրահամու, որպէս ինքն ա-
սաց ցԱբիմելէք. Քոյր իմ է, ասէ, 'ի հօրէ և ոչ 'ի
մօրէ: Իսկ լեալ Աբրահամ հնգետասան ամաց, ըս-
կըսաւ խնդրել զԱստուած, մինչև ցեօթանասուն ամն.
քանզի պարարտ և բազմաշահ երկիրն Քաղդէացւոց
գրգռեաց զնոսա յամենայն չարիս, յորում այց արար
Աստուած, և արածել հրամայեաց ձայնից բազմաց զանդս
և զայգիս նոցա բազում ժամանակս, և իւրաքանչիւր ոք
տակաւ ինչ վաստակէր և պահէր իբրև զաւանդս,
և անկան յաղքատութիւն: Իսկ Աբրահամ էր պահա-
պան 'ի հայրենիս իւր և ուսանէր 'ի գիշերի զաստեղա-
գիտութիւն, և զտիւն վաստակէր 'ի պահել զանդս.
և զամենայն զոհս և զուխտս և զաղօթս կատարելով
պաշտեցեալ դիցն իւրեանց, և ոչ լինէր դիւրութիւն.
զնոյն և Աբրահամ առնէր, և մնախոհ լինէր ասա
յինքեան թէ չէ պատուհաս 'ի մերոցս պաշտելեաց,
վասն զի ոչ կարեն բառնալ. այլ և յարուեստէ աստեղ
յաստեղացս պարզ է ճանաչել՝ զի 'ի շարժման կան
միշտ, և 'ի ներքոյ հարկի, և յայտ է թէ գոյ ոմն կա-
ռավար սոցա մեզ անծանօթ: Իսկ ապա սկսաւ պաղա-
տանօք ասել. Անծանօթ Աստուած ամենայնի ստա-

րիչ, և այս Թաչնոցս, դու հալածեան զսաա. և նոյն ժամնայն անդայտ եղեն։ Այս ասաց Աբրամ. Ահա զտաքս զԱստուած. օրհնեալ է տէրութիւն քո և փառք քո լցցէ զամենայն երկիր. և պատմեաց 'ի տան հօր իւրոյ, և անփոյթ եղև նոցա զիրացն։ Յայնմ ժամանակի մեռաւ Ահրոս Թագաւոր և առ զԹագն Արմաորդի նորա, որ շինեաց զկուռս հօր իւրոյ ամենեղէն, և ընդարձակեաց զԱթուր քաղաքն, և յանուն իւր կոչեաց Արմուէ։

Ի սորա ժամանակս շինեաց Մելքիսեդեկ[1] զԱյրուսաղէմ, և Աբրամ ոչ դադարէր 'ի խնդրելոյ զերեւումն Աստուծոյ. և լուաւ նմա, և ըստ տանելոյ նորա յայտնեցաւ նմա, և ասէ. Ե՛լ յերկրէ քումմէ և յազգէ և տարայց զքեզ 'ի զերկեալ մինձակն ձեր, և քեզ և զաւակի քում տաց զնա. և ասաց զբանն հօր իւրում։ Այլ ել ընդ նմա, և եկին մինչև ցԽառան, և ստացան անդ տուն. և շինեաց անդ Թարա մեհեան կռոց, և այրեաց զնա Աբրամ, և Առան եղբայր նորա կամեցաւ շիջուցանել, և այրեցաւ անդէն. ոմանք ասեն թէ զիշակէսն նա հնարեցաւ, և մեռաւ 'ի Տեառնէ.

Այս դարձեալ լինի առ Աբրամ ձայն Աստուծոյ ելանել 'ի Խառանէ, և ել ըստ բանի Տեառն. ասեն այլ կին ունել Աբրամ, և որդի Սմբեատէս անուն, զորս Թողեալ զամենեսեան գնաց 'ի Պաղեստինեայ եօթանասուն և հինգ ամաց, և ութսուն և եօթնամեայ էջ յԵգիպտոս. և ել անտի անմնաաց 'ի Տեառնէ. և հարիւր եօթնևտասն ամաց լեալ՝ ած զորդին 'ի զենումն. և հարիւր քառասուն և ութ ամաց առ զԱյենտաւր, և վեց որդիս ստացաւ 'ի նմանէ, 'ի հարիւր եօթանասուն և հնգերորդին վախճանեցաւ, յերեսներորդի եօթներորդի ամին Յակոբայ։ Ի քառասուն ամին առ Իսահակ զՌեբեկա, և 'ի վաթսուն ամին յղացաւ և գնաց հարցանել 'ի Մելքիսեդեկայ, և նա ասէ. Երկու ազգ է յարգանդի քում, և երկու ժողովուրդք։ Յեօթանասներորդի երկրորդի ամին Սահակայ՝ հնգետասաներորդ հարստութիւն իշխանացաւ յԵգիպտոս Ապիս, և աստուած կարծեցաւ. զնա Սա-

1. Ըստ աւանդութեան՝ Մել- Արփաքսադայ որդւոյ Սեմայ։
քիսեդեկ որդի է Մելքեայ որդւոյ

Մովսէս եւ փախեաւ 'ի Մադիամ. եւ Յամնէան եւ Յամբ-րէս առին զորդիսն Իսրայէլի եւ տարան զնոսա հնդե-ստանն առ Ճամասպարհ, ընդ անապատն, եւ շինեցին զդրախտն իւրեանց, զՀնդեստանն տարի. եւ 'ի կատար-ման շինուածին՝ յորդւոցն Իսրայէլի առին տղայս ինն հա-րիւր եւ ութսուն, եւ զոհեցին դիւաց. եւ հաւաքեցան առ նոսա, եւ եդին պահապանս դրախտին. եւ յայնմ հե-տէ առաւել հնազանդեցան դեւք կախարդաց. եւ չո-րեքհարիւր դեւք, ասեն, ոչ հնազանդեցան, մինչեւ կըր-կին զոհեցին յանուն նոցա, եւ ապա եկեալ առին հա-ւանութիւն. բայց զչւօտ ամիսն անհնազանդեալ զօր-ծեն զկամս իւրեանց տանելով զոհսն 'ի մարդկանէ:

Իսկ Մովսէս առ 'ի կնութիւն զՍեփովրա զդուստր Ռագուելի, որդւոյ Դադանայ, որդւոյ Յեկտանայ, յորդւոց անտի Կենտուրայ, եւ ծնաւ 'ի նմանէ երկու որդիս: Այս ասատ ասեն լեալ առ Դեւկալիոնիւ[1] Ջրհե-ղեղ 'ի Թեսաղիա, եւ առ Փայեթոնիւ յԵթէովպիա հրայրեայցք, եւ այլ բազում ապականութիւնք 'ի տե-ղիս տեղիս, որպէս պատմէ Պղատոն: Իսկ Դեւկալիոն Պառնասացւոց կողմանցն թագաւորէր: Մովսէս լեալ եօթանասուն ամաց՝ արժանի եղեւ երեւման Աստուծոյ, եւ հրամայէր դառնալ յԵգիպտոս եւ հանել զԻսրայէլ. եւ նա յապաղէր զտասն ամ. եւ եղեւ ութսնամեայ, գը-նաց յԵգիպտոս, 'ի չորեքհարիւրերորդի երեսներորդի ամի աւետեացն Աստուծոյ: Յեօթանասներորդէ հին-գերորդէ ամէն Աբրահամու՝ երկերիւր եւ հինգ ամ մինչ 'ի մտանելն Յակոբայ յԵգիպտոս, եւ երկերիւր քսան եւ եօթն ամ կացին յԵգիպտոս. եւ տասն հա-րուածովք հարեալ Եգիպտացիքն, տանելով հանէին զոր-դիսն Իսրայէլի յերեք հազար ութհարիւր քառասուն եւ երկու ամի ելիցն 'ի դրախտէն. եւ ելին 'ի հինգշաբա-թօջ, եւ 'ի կիրակէի անցին ընդ ծովն Կարմիր, եւ ան-տի կոչեցան Եբրայեցիք. զի Եբրայոն անցիկ թարգմա-

1. Դեւկալիոն թագաւոր Թեսա-ղիոյ կացեալ 'ի ԺԶ դարու յառաջ քան զԹուականութիւն մերոյ-չին. առ սորալ անուանի Ջրհեղեղն զոր յիշէ Պղատոն 'ի Ճառսն զԱ-տալանտեան կղզւոյ հասմ աշխարհէ: Իսկ Փայեթոնն արեգական որդի, ըստ առասպելեաց, զորոյ զկառս անձնիշխանաբար վարեալ եւ չկարեալ հրեղեղէր զերկիր, վասն որոյ շան-թահարեալ յԱրամազդայ՝ ան-կաւ 'ի Պադոս (Փօ) գետ Իտա-լիոյ:

նի. և առին նոր լեզու պարգևօք, և այնու երգէին զ
հնեսցուքն, և էր նման հայրենի լեզուին: Եւ եօ
ամիս շարժեցաւ Եգիպտոս, և տապալեցան յոլով
նուածք և ելին արտաքս 'ի շինուածոցն բնակիչքն:
նմին ամի պարտեցաւ Ամաղէկ 'ի Յեսուայ, և 'ի ն
ամի՝ յամսեանն երրորդի՝ ել 'ի լեառն Սինա Մովսէ
Ապողիմաս իմաստասէրն եբրայեցի ասէ, եթէ նո
Մովսէս յԱստուծոյ իմաստնացեալ գիր արար քսան
երկու, և այնու գրեաց Աստուած զտախտակս պատուի
և ետ ցՄովսէս, և նովիմք գրեաց Մովսէս նախ զ
լից գիրսն, և ապա զքսան և երկու արարածսն 'ի Օ
նընդոց գիրսն և զայլ երիս գիրսն. և զօրինակ արար
ծոցս զգալի խորանաւն եցոյց, որ գործեցաւ եօթն ա
ընդ եօթնօրեայ արարածոցս: Եւ ունին հինգ գ
Մովսէսի զրոյցս երեք հազարաց և եօթն հարիւ
երեսուն ամաց ըստ Եւսեբեայ:

Ժ. Աստուածածանօթն Մովսէս կատարեցաւ հ
րիւր և քսան ամաց, և առ զգաւազան նորա Յես
Նաւեայ ամս քսան և եօթն: Ի վեցերորդի ամին Յ
սուայ Դանաւոս եղբայր Եգիպտոսի թագաւորի
գիպտացւոց յիսուն դստերօք զյիսուն որդիս եղբօր
րոյ կոտորեաց, և Լինգոս զերծեալ թագաւորեաց,
ասէն ամենայն ուստեք աչացեալ, զի իմաստուն է
Յութևտասան ամին Յեսուայ Փիւնիկս և Կադմոս
Թեբացւոց յԱսորիս եկեալ թագաւորեցին, և
խարհն կոչեցաւ Փիւնիկէ, և տուն Կադմեայ:
սոքա բերին անդ զիմաստութիւն, որպէս Կիկր
էած 'ի Մեմփիս քաղաքէ բնակիչս Աթենայ և ե
տուն իմաստից, և Կեկրոպս արար գիր Յունաց,
պէք զԿադմոս ասեն: Կատարեցաւ Յեսու հար
եօթն ամաց, և դատաւոր եղև Գոթոնիէլ ամս ք
ռասուն: Ափրիկանոս երեսուն ամ դնէ 'ի մէջ Յեսու
և Գոթոնիէլի, և Յոյնք յիսուն ամ ասեն Գոթոնի
լի. զի ութ ամ ծառայեցին Քուսայ, զոր ամս հ
շուին: Աստ թագաւորեաց Արգիացւոցն Պելասգ
ուստի Փիլարամն էր, բարոյախօսն ամենայն կենդ
նեաց[1]: Օկնի Գոթոնիէլի ծառայեցին Մովաբացւ

1. Փիլիագոս անուն պատմագիր նախ քան զՔրիստոս, յու
մի Ճանաչի կացեալ 'ի Դ դարու Դիոնիսեայ Կրանեայ 'ի Ակ

Եգղոնից արքային Մովաբու ամս ութևտասն, զոր կցեն յաւուրս Աւոդայ, որ դատեաց զԻսրայէլ ամս ութսուն : Նա լցաւ չորեքհազար ամն յԱդամայ :

Յետ Աւոդայ ծառայեցին այլազգեաց ամս քսան. և զօրացաւ Սամեգար, և սպան 'ի փղշտացւոց վեցհարիւր այր մածով արօրոյն : Եւ դատեաց զԻսրայէլ Բարակ Դեբովրայիւ ամս քառասուն, յաղթելով զծառայութիւն այլազգեաց : Յաւուրս սորա Յոնն կացեալ սպարապետ Աթենացւոցն, Յոյնք անուանեցան և նոքա[1] : Յաւուրս սորա հարիւր իմաստասէրք[2] տեսին զմի տեսիլ 'ի միում գիշերի, եօթն արեգակն. զոր Սաբիլէ կին մեկնեաց 'ի վերայ եօթն դարուց, և զվեցերորդն 'ի Քրիստոս մեկնեաց, որոյ ճառագայթն թագուցանէր զայլսն : Զկնի Բարակայ իշխեցին Մադիանացիքն ամս եօթն, և դատեաց զԻսրայէլ Գեդէոն ամս քառասուն յաղթելով զայլազգեաց : Դեդալոս[3] հիւսն և նկարիչ աստ երևեցաւ, որ ասեն թէ շարժէր պատկերն զոր գործէր թուեցուցեալ : Զկնի Գեդէոնի զեօթանասուն որդիսն կոտորեաց Աբիմելէք և դատեաց զԻսրայէլ ամս երեք. և զկնի նորա Թովղա ամս քսան և երկու : Եւ Հերակլէս ասեն զԼիւոն աւար հարկանէր, սպանանելով զԱնտէոս[4], զոր երկրածին համարէին : Յայիր Գաղաադացի, ամս քսան և երկու. յետ նորա ծառայեցին այլազգեաց ամս ութ, ոմանք ութևտասն ասեն, և յայլս յարեն : Յեփթայէ, ամս վեց : Աղեքսանդրոս զՀելենէ առևանգեաց, և տասն ամ պատերազմ վասն այնր, և առնուլն զԻլիոն. և Հերակլէս խոցեալ ընկեաց զինքն 'ի հուր : Եսեբոն ամս եօթն : Եւ յետ նորա Ելոն տասն ամս, որ չկայ յեօթանասնա-

սս. իսկ առակախօսն կենդանեաց հետեւող կամ նախօրինակ Եզովբոսի, անծանօթ է ինձ :

1. Ըստ Եւսեբի. բայց զՅոյնս գիտեմք 'ի Յաւանայ որդւոյ Յաբեթի. իսկ Յովն զօրավար էր Աթենացւոց որ մարտեաւ ընդ Եւմոլպեայ Թրակացւոյ փոխանակ եկելոյ յԱտտիկէ :

2. Հարիւր իմաստասէրքն անծանօթք. իսկ Սաբիլէ կինն է Սիբիլլա մարգարէուհի 'ի հեթանոսս, որ եօթն կամ ինն ճանաչին. մատեանն որ յանուն նոցին գտանին՝ աղանդաւորաց քրիստոնէից գործ է :

3. Դեդալ հիւսն և նկարիչ Աթենացի, որ զբաւիղն (լաբիւրինթոս) շինեաց Մինովայ արքայի 'ի Կրետէ :

4. Անտէոս հսկայ Լիբիացի, երկրի և ծովու (Պիսիդոնի) ծնունդ, խեղդամահ լեալ 'ի Հերակլեայ, ըստ առասպելաց :

նոցին, այլ յեբրայեցւոցն. Լաբդոն, ամս ութ: Եւ Թագաւորեցին Հռոմայեցիքն. առաջին Թագաւոր Անիաս անուն: Զկնի Լաբդոնի ծառայեցին Փղշտացւոցն ամ քառասուն. և ապա յարեաւ Սամփսոն փրկեալ զնոսա, ամս քսան: Ի հինգերորդի ամին սորա եղեն իրքն Հռութայ: Յաւուրս սորա մեռաւ Զևս և Թաղեցաւ 'ի Կրետէ, զոր ասեն կեցեալ ամս ութհարիւր և յիսուն, զի յաղագս բազմակեցութեանն Զևս կոչեցաւ, որ 'ի ծննդենէ Պիկոս ասիւր: Եւ Եբրայեցիքն քառասուն ամ ասեն զՍամփսոնի դատաւորութեանն: Յոհաննէս յետ Սամփսոնի կարգէ զամն դատաւոր Եղիգոր անուն քառասուն ամաւ: Բայց Ափրիկանոս ասէ՝ թէ զքառասուն ամ ոչ գոյր դատաւոր. և էր խաղաղութիւն: Հեղի ամս քսան ըստ եօթանասնիցն, և ըստ Ասորւոց՝ քառասուն: Բայց գիտասցես, զի սուրբ տառքեանն չորեքհարիւր և յիսուն ամ կարգէ մինչև 'ի Սամուէլ, և այն լինի յորժամ զՅեսուայ ամքն և զՍամուէլին ոչ առնուս 'ի համարս. քանզի դատեաց զԻսրայէլ Սամուէլ ամս քառասուն ըստ եբրայեցւոցն, և ըստ եօթանասնիցն քսան. զի 'ի քսաներորդի ամին նորա խնդրեցին Թագաւոր. և յայնմհետէ կարգին ժամանակք Թագաւորացն: Բայց Սաւուղայն՝ որչափ կենդանի էր Սամուէլ՝ նմա է համարեալ 'ի կենացն Սաւուղայ, որ չէր հաճոյ Աստուծոյ, բայց յերկու ամացն: Սաւուղ Թագաւորեաց ամս քառասուն: Ի տասներորդ ամի Թագաւորութեան Սաւուղի ծնաւ Դաւիթ. և 'ի քսաներորդ երրորդն՝ օծաւ, և քսանևութ ամաց էր 'ի սպանանելն զԳողիաթ: Յերեսներորդ ամի ծննդեանն Դաւթի մեռաւ Սամուէլ. և զկնի հինգ ամի մահուանն Սամուէլի սպանաւ Սաւուղ, և Յովնաթան. և Թագաւորեաց Դաւիթ ամս քառասուն: Ի տասներորդ ամի Թագաւորութեանն իւրոյ՝ եհան զտապանակն 'ի տանէն Աբեդդարայ, և էր քահանայապետ Աբիաթար, և մարգարէք՝ Գադ և Նաթան, որ յանդիմանէր զԴաւիթ: Յերեսներորդի ութերորդի ամի Թագաւորութեանն իւրոյ՝ ընտրեաց Դաւիթ հարիւր ութսուն և ութ անձինս 'ի Ղևտացւոց անտի, և արար քսան և չորս դաս, երկոտասան այր 'ի դաս մի սաղմոսասացս, և սպասաւորս տապանակին Տեառն:

Այս կեցեալ ամս եօթանասուն վախճանի , տուեալ զԹագն Սողոմոնի , ամս քառասուն . եւ էր երկոտասան ամաց , եւ յառաջին ամին եղեւ նմա Ռոբովամ , 'ի Նաամայէ կնոջէ յամմոնացւոյն : Ի չորրորդ ամի Թագաւորութեանն իւրոյ սկսաւ շինել զտաճարն , 'ի չորեքհարիւրերորդի ութսներորդի ամի ելանելոյ նոցա յերկրէն Եգիպտացւոց , ըստ Թագաւորութեանց գրոց եօթանասնիցն ասացեալ , զոր Եբրայեցին չորեքհարիւր քառասուն ասէ . բայց անսխալ այսպէս է . քառասուն ամ Մովսեսին , քսան եւ եօթն ամ Յեսուայն , որ է վաթսուն եւ եօթն ամ . եւ չորեքհարիւր եւ յիսուն ամ դատաւորացն , ծառայութեանն այլազգեաց՝ որ է հինգհարիւր եւ եօթնեւտասն . յետ որոյ Սամուէլ եւ Սաւուղ քառասուն ամ , եւ քառասուն ամ Դաւթի , լինի ին-նըսուն եւ եօթն , եւ չորս ամ Սողոմոնին , եւ լինին միանգամայն ամք վեց հարիւր եւ մի : Այս չափ տաճարին վաթսուն կանգուն , եւ քսան լայն , եւ հարիւր եւ քսան բարձր : Այս շինեաց քաղաքս եօթն . եւ առ սա եկն դշխոյն հարաւոյ , եւ զովեաց զպաշտօնեայս տաճարին . զքսան եւ չորս դասն զԴաւթի կարգեալն , զոր Սողոմոն երկոտասան դաս յօրինեաց , քսան եւ չորս հազար այր 'ի դաս մի , եւ զվեց հազար դատաւորսն , եւ չորս հազար քնարերգակսն , եւ զչորս հազար դռնապանսն , եւ զայլ ամենայն յօրինուածսն . եւ գնաց 'ի նմանէ տեսլեան : Այս մեռաւ Սողոմոն յերեսուն եւ եօթն ամի Թագաւորութեանն իւրոյ , եւ մեռաւ յիսուն եւ երկու ամաց : Այս էին մարգարէք Սադովկ , եւ Աքիաս եւ Սամեա : Այս իմաստասէրք՝ Հոմերոս , եւ Սիղոս . եւ քահանայապետ՝ Սադովկ 'ի ցեղէն Եղիազարու , կէսք 'ի Իթամարայ ասեն , որպէս կայ 'ի գիրս Թագաւորութեանցն : Այլ 'ի գիրս Փիւնիկեցւոցն , եթէ տաճարն յԵրուսաղէմ շինեցաւ հարիւր քառասուն եւ երեք ամօք յառաջ քան զշինելն Տիւրացւոցն զԿարքեդոն . եւ գրեն առակս ինչ առ միմեանս Սողոմոն եւ Քիրամ , եւ ոչ կարէր Քիրամ լուծանել զՍողոմոնեանսն . բայց գտաւ այր ոմն , Աբդեմոնոս անուն 'ի Տիւրոս՝ որ կարողանայր առեղծուածս , այլ եւ գրէր առ Սողոմոն , եւ տարակուսէր Սողոմոն :

ԺԱ . Ռոբովամ որդի Սողոմոնի Թագաւորեաց զկնի հօրն ամս եօթնեւտասն 'ի վերայ Յուդայ եւ Բենիա-

մենի, և այլ տասն ցեղքն թագաւորեցուցին յինքեանց զՌոբովամ՝ որդի Նաբատայ՝ յազգէն Եփրեմի ։ Յաւուրս սորա՝ եւ Սաւաակիմ արքայ Եգիպտացւոց և կողոպտեաց զգանձարն Տեառն և գնաց ։ Զկնի Ռոբովամայ թագաւորեաց Աբիա որդի նորա ամս երեք. և յետ նորա Ասա որդի նորա ամս քառասուն և մի ։ Իսկ զկնի Ռոբովամու, թագաւորեաց Իսրայէլի Նաբատա որդի նորա ամս երկու. և յետ նորա Բաասա ամս քսան և չորս. յաւուրս սոցա մարգարէք՝ Աքիա, Սամեա, Յովէլ, Ազարիա, որ և Ադդով, և Անանիա. Յովան, զոր այլք Զաքարիա ասեն, և Եղիփան Խուդ ասէ, զոյն զոր սպան առիւծն ։ Ի քսան և իններորդ ամին Ասայ թագաւորեաց 'ի վերայ Իսրայէլի Եղա ամս երկու. և Զամբրի ծառայ նորա սպան զնա, և թագաւորեաց աւուրս եօթն. և առ զթագն Ամրի, ամս երկոտասան. որ շինեաց զՍամարիա, որ կոչեցաւ նա Սեբաստիա, և արդ ասի Ռամլուզ. իսկ զկնի Ասայ թագաւորեաց Յովսափատ, ամս քսան և հինգ. և զկնի երկու ամաց թագաւորեաց Իսրայէլի Աքաաբ որդի Ամրեայ ամս քսան և երեք, որ էառ կին զԵզաբէլ, դուստր Իքթիղ թագաւորի Սիդոնի ։ Ի քսան և ութերորդ ամին Յովսափատու թագաւորեաց Իսրայէլի Ոքոզիա ամ մի, և զկնի նորա եղբայր նորա Յովրամ ամս երկոտասան, և զկնի նորա Յէու ամս քսան և ութ, և յետ նորա Յովաքազ ամս եօթն և տասն ։ Եւ թագաւորեաց 'ի վերայ Յուդայ Յովրամ ամս ութ. և զկնի նորա Ոքոզիա ամ մի. յեօթներորդ ամին Յովրամայ վերացաւ Եղիա ։ Զկնի Ոքոզիայ՝ մայր նորա Գոթողիա, որ էր դուստր Եզաբէլի, և ապա թագաւորեցոյց Յովիդեա քահանայապետ զՅովաս որդի Ոքոզիայ եօթնամեայ 'ի վերայ Յուդայ, և եկեաց Յովիդեա միայն զկնի Սողոմոնի, ամս հարիւր և երեսուն. որոյ որդին Զաքարիա մարգարէանայր, և եղև քահանայապետ զկնի հօրն, և սպան զնա Յովաս յերեմներորդ ամի թագաւորութեան իւրոյ. և յերեսուն և եօթներորդ ամին մեռաւ Եղիսէ. և 'ի քառասներորդ ամի թագաւորութեան իւրում, սպանաւ Յովաս 'ի ծառայից իւրոց, և թագաւորեաց 'ի վերայ Յուդայ Ամասիա քսան և հինգ ամ ։ Ի սոյն տասներորդ ամին թագաւորեաց Իսրայէլի Յո-

վլաս ամս վեշտասան. և զկնի նորա Ամուղամ՝ ամս քա-
ռասուն. ոմանք ասեն թէ սպան զԷմասիա, և քակեաց
'ի պարսպէն Երուսաղեմի չորեքհարիւր գիրկ. և թա-
գաւորեաց 'ի վերայ Յուդայ Ոզիա ամս յիսուն և եր-
կու: Ի քսան և հինգերորդ ամին նորա թագաւորէ Իս-
րայելի Զաքարիա ամս վեց. և զկնի նորա Սեղլում ա-
միս մի, և զկնի նորա Մանաեմ ամս տասն: Ի քսա-
ներորդ չորրորդ ամին բորոտեցաւ Ոզիա, և լռեաց Ե-
սայի մինչև ցմահ նորա քսան և ութ ամ, և վերստին
մարգարէացաւ Եսայի վաթսուն և մի ամ. և նախ քան
զլռութիւնն քսան և չորս ամ: Յերեսներորդ չորրորդ
ամին Ոզիայ եկն Փուա, և առ 'ի Մանաեմայ հազար
քանքար ոսկւոյ. և 'ի քառասներորդ ամին Ոզիայ, թա-
գաւորէ Իսրայելի Փակէէ միւս ամս տասն: Ի քառա-
սուն և ութերորդ ամին Ոզիայ ել Թակղաթփաղ-
սար, և գերեաց զմեծ մասն տասն ցեղիցն: Զկնի
Ոզիայ թագաւորէ Յովաթան որդի նորա ամս տասն:
Պորփիւրոս[1] պատմէ Ճանաչիւր, և մարգարէք՝ Ե-
սայի, Յովնան, Ամովս, Ովսէէ. և Կուկր[2] Եգիպտա-
ցւոց օրէնս դնէր. առ որով գառն խօսեցաւ: Եւ յետ
Յովաթանու թագաւորէ Աքազ ամս վեշտասան. յա-
ւուրս սորա Փակէէ և Հռասոն արքայ Դամասկոսի կո-
տորեցին յԵրուսաղէմ երկոտասան բիւր. և Աքազ
վարձեաց զԹակղաթփաղսար, և եկեալ առ զԴամաս-
կոս, և սպան զՀռասոն արքայ Դամասկոսի, և գե-
րեաց զԵդոմ: Յերկրորդ ամին Աքազու Ովսէէ սպան
զՓակէէ, և թագաւորեաց ամս ինն: Յութերորդ ա-
մին Աքազու ել Սաղմանասար, և հարկ եդ Իսրայելի
և գնաց:

ԺԹ. Յետ Աքազու թագաւորէ Եզեկիա. յերրորդ
ամին սորա՝ եկն Սաղմանասար, և առ զՍամարիա, և
գերեաց զտասն ցեղսն, և տարաւ 'ի Բաբելոն, և բար-
ձաւ թագաւորութիւնն Իսրայելի, տևեալ ամս երկե-
րիւր և յիսուն. լինին յԱդամայ չորեք հազար երեք
հարիւր և երեսուն ամք: Ամուղամ, Եղբատ, Աւայաս,

1. Պորփիւրոս պատմէս ոչ ու-
րեք լսի. ընդ Որփեւսի կամ Եսիո-
դեայ կամ այլում թուի շփոթել
հեղինակս:

2. ՕՕ. Կուկր [illegible] օրէնս
դնէր. ուղղագրելի է ըստ Եւսե-
բեայ «Բոկքորիս Եգիպտացւոց
օրէնս դնէր»:

Ելա, Զամբրի, Ամրի, Աքաաբ, Ոքոզիա, Յովրամ; Յէու՝ որ սպան զՈվրամ և զԵզաբէլ մայր իւր, Յովաքազ, Յովաս, Երոբովամ, Զաքարիա, Սեղում, Մանայեմ, Փակէէ, Փակէէ, Ովսէէ վերջին։ Ի վեցերորդ ամին Եզեկիայ գերեցաւ Իսրայէլ. որ թագաւորեաց 'ի վերայ Յուդայ ամս քսան և ինն։ Յիններորդ ամին սորա Հռոմելաս շինեաց զՀռոմ։ Մանասէ ամս յիսուն և հինգ, Ամոն՝ ամս եօթն և տասն. Ովսիա՝ ամս երեսուն և մի. Յովաքազ՝ ամիսս երեք. Եղիակիմ եղբայր նորա ամս մետասան. Յեքոնիա՝ ամիսս երեք. Սեդեկիա՝ ամս մետասան, որ գերեցաւ, և աւերեցաւ տաճարն։ Ամենայն ժամանակ թագաւորացն Յուդայ են չորեքհարիւր երեսուն և երկու ամ. և տեւեաց տաճարին շէն չորեքհարիւր քառասուն և երկու ամք։

Յութերորդ ամի թագաւորութեան իւրոյ՝ Նաբուգոդոնոսոր տարաւ զՅեքոնիա և եդ 'ի բանտի, երեսուն և հինգ ամ. քանզի՝ Նաբուգոդոնոսոր որդի՝ Նաբոպալասարայ՝ թագաւորեաց ամս քառասուն և երկու. յութերորդ ամին գերեաց զՅեքոնիա, և եդ 'ի բանտի զամենայն ժամանակս իւր, որ է երեսուն և չորս ամ մնացեալն, զոր փոխեալ Եւիլմարովդաք զաթոռ հօր իւրոյ ամս երեք, և յառաջին ամին իւրոյ թագաւորութեանն եհան զՅեքոնիաս 'ի բանտէ, և ուտէր 'ի սեղան արքայի։ Յետ որոյ եղբայր նորա Բաղտասար ամ մի, առ որով Դանիէլ զգիր բառնալոյ թագաւորութեանն Քաղդէացւոց ընթերցաւ, զոր էառ Դարեհ արքայն Մարաց, որ թուի թէ Աժդահակն է[1], զի երկանուն ասեմք զնա, որ յերեսներորդ վեցերորդ ամի թագաւորութեանն իւրում 'ի վերայ Մարաց, առ և զՔաղդէացւոցն ամս երկու. և Կիւրոս պարսիկ սպան զնա, և տիրեաց Մարաց և Պարսից և Քաղդէացւոց և Ասորւոց ամս երեսուն։ Զոր ասեն թէ յառաջին ամին չարչարեաց զՀրեայսն և սպան զԴանիէլեանսն, և չարչարեաց զնա Տէր 'ի տեսլեանն, և ողորմեցաւ նմա. յորմէ զարհուրեալ՝ ետ հրաման արձակել զգերին Հրէից, տալով զսպաս տաճարին ցՍաբանասար հան-

1. Դարեհ արքայ Մարաց որդւոյն Աժդահակն է։

դերձապետ Յուդայ արծաթի և ոսկի անձնս հազար չորեքհարիւր քառասուն և երեք. բայց ոչ եբրաւ յԵրուսաղէմ, մինչև ցԶօրաբաբելի գալն: Այս ամս լցան եօթանասուն ամացն վճռին, յԵրեմիայէ ասացելոյն, որ հաշուեալ լինի յութևտասներորդ ամէն Ովսիայ արքայի, որպէս Եզեկիէլ երեսուն ամ ասէ 'ի հինգերորդ ամի գերութեանն Յեքոնիայ, յորում սկսաւ մարգարէանալ. քանզի Յովսիա երեսուն և մի ամ թագաւորեաց, և յութևտասներորդ ամին վճռած հասաեօթանասուն ամին, չորեքտասան Ովսիայն, և մետասան Յովակիմայն՝ լինի քսան և հինգ, և հինգ գերութեանն՝ լինի երեսուն. և երեսուն և չորս ամ Նաբուգոդոնոսորայն, մնացեալն լինի վաթսուն և չորս. երեք՝ Եվմարոդաքայն. մի՝ Բաղդասարայն, և երկու Դարեհին, լինի եօթանասուն. և զի լցեալ էր եօթանասունն, և Կիւրոս յաջողէր, թարկացաւ նմա Տէր. և Դանիէլի ասէր հրեշտակն թէ իշխանն Պարսից կացընդ իս, չտալով թոյլ արձակել զգերիսն ըստ աղօթից քոց: Այս յառաջին գալն էին հրեայքն հինգ բիւրք, որք կանգնեցին սեղան, և արկին հիմն տաճարին, և նեղեալ 'ի շրջակայ ազգացն, մնաց անկատար մինչև ցԴարեհ արքայ: Յետ Կիւրոսի Կամբիւսոս որդի նորա ամս ութ. հրեայք Նաբուգոդոնոսոր զնա կոչեն. Մոգքն երկու եղբարք, ամիս եօթն. Դարեհ Վշտասպ ամս երեսուն և վեց. Քսերքսէս Դարեհի որդի, ամս քսան և մի. 'ի սորա հօրն յերկրորդ ամին Զօրաբաբել ել յԵրուսաղէմ, և շինեաց զտաճարն. առ որով լցաւ երկրորդ անգամ եօթանասունն յաւերմանէ տաճարին, երկու ամ աւելի. Նաբուգոդոնոսորի և որդւոցն՝ երեսուն և երկու, և երկու Դարեհ մարին, և երեսուն և ութ Կիւրոսին և որդւոյն, լինի եօթանասուն և երկու. և զԴարեհին երկրորդն եդեալ՝ լինի եօթանասուն և չորս. որ լինի աւելիքն չարութեանն և ծուլութեանն հրէից, և ոչ Աստուծոյ քաղցրութեանն:

ԺԳ. Արտաշէս երկայնաբազուկ քառասուն և մի ամ. առ սովաւ Եզրաս և Նեեմի առաքեալ եկին յԵրուսաղէմ և շինեցին զպարիսպն: Դարեհ հարճորդի ամս իննևտասն. Արտաշէս, ամս քառասուն, առ սովաւ Եսթեր: Արտաշէս Ոքոս, ամս չորս. Դա-

րեհ Արշամայ, ամս վեց. զոր սպան Աղեքսանդր, և եկեալ նորա այլ ևս ամս վեց. յերկրորդ ամէն Դարեհի Վշտասպեայ մինչ 'ի մահն Աղեքսանդրի՝ լինին ամք հարիւր եօթանասուն և մի[1]։ Զկնի որոյ թագաւորեաց Պտղոմէոս Լագիդոս, որ Լագոսեան կոչի, ամս քառասուն. Պտղոմէոս Փիղադելփոս, ամս երեսուն և ութ. առ սորա թարգմանեցան Հրէից գրեանքն։ Պտղոմէոս Եւերգետէս, ամս քսան և չորս. Պտղոմէոս Փիղոպատոր, ամս քսան և մի. Պտղոմէոս Էպիփանէս, ամս քսան և երկու. Պտղոմէոս Փիղոմետոր, ամս երեսուն և երեք. առ սորա Անտիոքոս Էպիփանէս նեղէր զՀրեայսն, որ թագաւորեաց ամս մետասան։ Անտիոքոս Եւպատոր ամս երկու. 'ի սոյն ամի և 'ի Փիղոպատոր Պտղոմեայ եօթնևտասներորդին, ամբարձաւ Յուդա Մակաբեայ ամս երեք. և լինին 'ի թագաւորութենէն Զօրաբաբելի մինչև զՅուդա Մակաբեայ՝ ամք երեքհարիւր երեսուն և երկու։ Յուդա Մակաբեայ, ամս երեք. Յովնաթանէս, ամս տասն. Սիմովն, ամս ինն։ Հիւրկանոս՝ որ և Յովհաննէս, ամս քսան և վեց. Արիստաբուղոս, ամ մի. Յաննէոս, որ և Աղեքսանդրոս, ամս քսան և եօթն. Աղեքսանդրիա կինն, ամս ինն. Հիւրկանոս, ամս երեսուն և չորս. Հերովդէս այլազգի, ամս երեսուն և եօթն։ Յերեսներորդ երկրորդ ամի սորա ծնանի Քրիստոս Աստուած։ Լինի 'ի Յուդայէ Մակաբեայ մինչև 'ի ծնունդն Քրիստոսի հարիւր յիսուն և մի ամք. և 'ի Զօրաբաբելէ մինչև ցՀերովդէսի յերեսներորդ երկրորդ ամն, յորում Տէրն ծնաւ, չորեքհարիւր ութսուն և երեք ամք։ Իսկ ըստ Դանիէլի եօթներորդացն, որ ասէ եօթներորդք եօթն և եօթներորդք վաթսուն և երկու, որ լինի վաթսուն և ինն. և եօթներորդ մի, և կէս եօթներորդի. զմի եօթներորդն 'ի վերայ հաշուեալ, եօթանասուն եօթներորդք է, որ լինի չորեքհարիւր իննսուն. և զի յայս թուղս, որ չա-

1. Յերկրորդ ամէ Դարեհի Վըշտասպեայ (521 նախ քան զՔրիստոս) ցմահ Աղեքսանդրի Մեծի (324ն. Քրիստոս) լինին ամք 197։ Գաղափարին և այլուր ձեռագրաց յամս և 'ի կարգս թագաւորաց յիշեալս 'ի հեղինակէդ, զոր դիւրին է ընտրել 'ի ժամանակագրական գըրոց. վասն այսորիկ և զանց արարաք առ անցեալն յիշատակել։

րեքհարիւր ութսուն և երեք է, մինչքն եօթն ամիս կայցէն Թագաւորքը, այն մի եօթներորդն եօթն ժամանակ է, այն չէ հաշուած, վասն 'ի վերայ չորեքհարիւր ութսուն և երիցդ գիր, և լինի չորեքհարիւր իննսուն. զի այս միաւոր եօթնս՝ ամօղք է, իսկ կէս եօթներորդի՝ երեսուն և երեք տարի և կէսն է, յորում սպանաւ Օծեալն: Օք այլ եօթներորդքն քառասուն և ինն, քառասուն և ինն է հաշուած, և այս կէս է, զի դեռ չէ 'ի լրմն. քառասուն և ինն այլ կէս է, այսինքն պակաս է. զի սովոր եմք կէս ասել Թերոյն: Մնէ կամիս ընկալ, Թէ ոչ՝ Թողութիւն շնորհեա:

ԺԴ. Հայրն բազմորդի մեծն Աբրահամ եղև ազգիս մերոյ ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ հայր պարծանաց, քանզի վեց որդիս ստացաւ 'ի Կենդուրայ, զԶմրան, և զՅեկսան, զՄադան, զՄադիամն, զՅեսբոկ և զՍովիէ: Իսկ երեց որդին Զմրան՝ ստան զՅեկսան և զՄադան. և վասն այսորիկ արձակեաց զնա հայր իւր յարևելս, յԻսահակայ որդւոյն իւրմէ. յորմէ սերեցան ազգն Պարթևաց, ուստի քաջն Արշակ. որ զկնի վաթսուն ամաց մահուանն Աղեքսանդրի, ապստամբեալ 'ի Մակեդոնացւոցն՝ Թագաւորեաց յերկրին Քուշանաց, 'ի Բահլ շահաստանի ամս քսան և վեց, տիրեալ ամենայն արևելից և Ասորեստանեայց, սպանանելով զԱնտիոքոս, հալածէ 'ի Բաբելոնէ և 'ի Քաղդէացւոց երկրէն զՄակեդոնացիս: Ասեն Թէ սա էր որդի Արշաւրայ, որ էր Մարաց արքայ: Սա էառ կին յազգէ որդւոցն Մովսիսի՝ որ բնակեալ էին 'ի Տափնաս, և խընամեցեալ ցեղին Տաճկաց, և եկեալ բնակեցաւ 'ի մէջ Մարաց և Պարսից, Հայոց և Քուշանաց: Նու զի 'ի դիմաց և 'ի Թիկանց, յաջմէ և 'ի ձախմէ Թեւեալ էին չորք ազգք, Պարթևք կոչեցան, պարունակեալք 'ի չորից ազգաց, և վասն Բահլ քաղաքին արքունական՝ Պահլաւք կոչեցան[1]:

Օսա փոխէ Արշան որդի իւր, որ և Արտաշէս ասի, չքնաղ այր և անձնեայ և գոռ պատերազմող. սմա

1. Վասն ծագման և կարգի րէ մեզ մեկել գործս այս: Իսկ Թագաւորաց Պարթևաց բազում, Պարթևք անուն փախստեայ և և տարաձայն բանք են առ մերսն գաղթ նշանակէ, ըստ բազմաց: և առ օտար պատմիչս, յորս ոչ նե-

որդի նորա, և զայլ արքայազունսն առաքէ 'ի Հաշ-տեանն գաւառն։ Նա եղև այս 'ի կրսեր ամենայն Թա-գաւորաց, զմի որ ունէր ընդ ինքեան ժառանգ և զայլսն 'ի Հաշտէնս առաքել, զի կայցեն յազատու-թեան։ Թագաւորեալ Վաղարշակայ ամս քսան և եր-կու, մեռանի 'ի Մծբին. և Թագաւորեաց Արշակ որ-դի նորա ամս քսան և երեք։ Սա կառոյց զնիզակն յար-ձաքարի յեղերս ծովուն Պոնտոսի, մխեալ արեամբ թիւնաւոր սողնոց, զոր պաշտեցին Պոնտացիք իբրև զգործ աստուծոյ։ Զկնի նորա Թագաւորեաց Արտա-շէս որդի նորա ամս քսան և չորս, յերրորդ ամի Արշա-կանայ Պարսից արքայի. զոր իւր երկրորդ կոչեաց և տի-րեաց բոլոր ցամաքի, և անց յայնկոյս ովկիանու, և ե-հաս մինչև 'ի Սպանիա, և զարձան ձեռբակալ արա-րեալ զԿրիսոս Լիդայ Թագաւորն[1]. առանց Թագ ունելով զօրս. և 'ի յերկրորդ անգամ զնալն յարև-մուտս, մեռանի 'ի ծովուն։ Նա առնու զԹագն Տի-գրան որդի նորա, 'ի քսաներորդ և եօթներորդ ամի Թագաւորութեանն Արշականայ. սա գերեաց զԵրու-սաղէմ, և սատակեաց զԿրասոս[2] զօրավարն Հռով-մայեցւոց, և կացուցանէ զՄիհրդատ 'ի Մաժաք. ո-րոյ որդին ապստամբեալ երԹայ առ Հռովմայեցիս, առեալ զՊերգէս քաղաք, և զՄաժակ ընդարձա-կեալ կոչէ յանուն Կայսեր. և զկնի Ռաբրազաքրան մե-րըստին գերէ զԵրուսաղէմ, ածեալ գերի զՀիւրկա-նոս քահանայապետ՝ բնակեցուցանէ 'ի Վան։ Եւ Տիգրան Թագաւորեալ ամս երեսուն և երեք, մեռա-նի. և առնու զԹագն Արտաւազդ որդի նորա, և բնա-կեցուցանէ զեղբարս և զքորս իւր յԱղիովիտ և յԱռ-բերանի, որպէս զայլ Արշակունիս՝ 'ի Հաշտէնս. ինքն խաղայ 'ի Միջագետս, և Անտոնիոսի լուեալ զայս կո-տորէ զզօրս նորա, և զնա գերեալ տանի յԵգիպտոս՝ պարգև Կղէոպատրայ դշխոյի։ Եւ առնու զԹագն Ար-շամ որդի Արտաշիսի, եղբայր Տիգրանայ[3], և այս

1. Համառօտութիւնքդ Ար-տաշիսի ըստ Խորենացւոյ պատ-մութեան, այլ ոչ անդր քան զՅու-նաստան ձգէ սա. նոյնպէս և խնդ-դիր Կրեսոսի, որոյ անպատշաճու-թիւն յայտնի է, այլ պատճառ վրիպանացն և բանից պատմչաց զորս յիշէ Խորենացին, տակաւին ոչ քաջայայտ։

2. ՕՕ. Կրասոս։

3. Ընդ մահ Արտաշիսի հօր Տիգրանայ և ընդ Թագաւորու-

հարկս 'ի Միջագետաց Հռովմայեցւոցն, յաւուրս Հերովդի, զոր կացոյց Անտոնիոս արքայ Հրէից, և յաւուրս Արշաւրայ Պարսից Թագաւորի յայժ տղայոյ, որ չկարէր օգնել Արշամայ. վասն որոյ հնազանդեցաւ կայսեր, և գործաւորս տայր Հերովդի, ձալակապ առնել զփողոցն Անտիոքայ։ Սա Թագաւորեալ ամս քսան՝ մեռանի, և առնու զԹագն որդի նորա Աւագայրն, զոր Ասորիք Աբգար կոչեն։ Ի սորա երկրորդ ամին ծնաւ Տէրն, և ել հրաման յՕգոստոս կայսերէ աշխարհագրութեան, և բերաւ պատկեր նորա 'ի Հայս, և ամենայն Հայք մտին ընդ հարկաւ. նոյնպէս և Ասորեստան և Եգիպտոս և ամենայն Միջերկրայք։ Եւ էր յելիցն Ադամայ, ըստ Հրէիցն՝ չորեք հազար, և ըստ եօթանասնիցն՝ հինգ հազար հարիւր իննսուն և ութ. ըստ Անանոսի՝ [1] հինգ հազար իննսուն և մի. ըստ Ասորւոց՝ հինգ հազար քսան և վեց. և տարին երկոտասանալուսնեայ։

ԺԶ. Եւ Օգոստոս երկրորդ ինքնակալ զկնի Յուլիոսի զոր ասեն Փորահան [2], որ և Կայսր կոչեցաւ, և Թագաւորեաց զկնի չորս հարիւր վաթսուն և երկու ամի խափանելոյ արքայութեանն Հռոմայ. և Օգոստոս եւս մեծացաւ 'ի ծնանել մեծին Աստուծոյ և ամենակալ արքային. յորում աւուրս եկին մոգքն երկոտասան հազար հեծելովք, և լուեալ եթէ սով է 'ի Պաղեստին, թողին զզօրսն առ Աբգար, և ինքեանք որ մեծք էին գնացին երկոտասան իշխանօք, և հազար հեծելօք. Մելքոն Պարսիկ, Գասպար Հնդիկ, Բաղտասար Արաբ. ոսկի, կնդրուկ, զմուռ ընդ ինքեանս ունելով։ Զայս գրեաց Լուկիանոս անուն Փռանկ [3], որ կայր յԱսորիս, առ կայսրն Օգոստոս. Գիտացէ ինք-

Թուականն Արշամայ 70 ամք են, և զի սա Թագաւորեաց 20 ամ, 'ի դէպ գայ եղբօրորդի ասել զնա և ոչ եղբայր Տիգրանայ. ապա թէ ոչ՝ առաւել քան զսա ինքն որ ընդ երկարակեացս յիշի 'ի Ղուկիանոսէ սոփեստայէ (85 ամաց մեռեալ), յիշելի էր ինքն՝ անցեալ զիննսնամեամենիւք։

1. Անանոս պատմիչ ըստ Միքայելի Ասորւոյ, կրօնաւոր էր Աղեքսանդրացի, որ գրեաց զպատմութիւնն յԱդամայ ցԿոստանդիանոս։

2. Յուլիոս Կեսար Փորահան ասի, զի յետ մօրն մեռանելոյ հանաւ յարգանդէն։

3. Ղուկիանոս Փռանկ, այսինքն Հռովմայեցի։

նակալութիւնդ քո, զի եկին 'ի հարաւոյ արեւելից արք մեծաշուքք և երկրպագեցին տղայոյ մերոյ ծնելոյ 'ի Պաղեստին, հրաման առեալ 'ի վերուստ յաստեղէ մեծէ, որ առաջնորդէր նոցա: Նաև 'ի գնալ մոգուցն ընդ այլ ճանապարհս յաշխարհն իւրեանց, կոտորեաց Հերովդէս հազար չորեք հարիւր վաթսուն և երկու մանկունս յերթալն Տեառն յԵգիպտոս: Եւ Օգոստոս երթայ յԵգիպտոս, և սպանանէ զԱնտոնիոս զօրավարն իւր, որ ապստամբեալ 'ի նմանէ թագաւորեաց: Եւ Աբգար շինեաց զՈւռհա, և անդ փոխեաց զաթոռն իւր և զդիւանն 'ի Մծբնայ, որպէս Տիգրան շինեաց զՏիգրանակերտ, որ ասի Ամիթ: Յերեսներորդ երրորդ ամի Տեառն մերոյ ծննդեանն, մեռաւ Արշաւիր թագաւորն Պարսից, թողեալ երեք որդի և դուստր մի, որք վիճէին 'ի վերայ թագաւորութեանն, զորս խաղաղացոյց հաշտութեամբ Աբգար՝ անդ գնալով. զաւագ որդին Արտաշէս՝ թագաւորեցուցանէ, և զՍուրէն և զԿարէն և զԿոշմ քոյր նոցա՝ պատուէ Պահլաւ անուամբ, և 'ի դառնալն պատահէ նմա ցաւ ուրկութեան: Եւ եկեալ յԵղեսիա՝ առաքէ առ Մառինոս[1] զօրավարն Հռովմայ զՄարիահա[2] բդեշխին Աղձնեաց, և զՇամշագրամ նահապետն Ապահունեաց, և զԱնանէ հաւատարիմ իւր, զի մի խորհուրդ նենգութեան կարծեսցեն զերթն նորա յարևելս: Եւ պատահեալ Մառինեայ յԵլևթերապօլիս[3], լուան բանս բարիս և ելին յԵրուսաղէմ. և տեսին զՏէրն զի առնէր նշանս մեծամեծս, և հաւատացին 'ի նա, և բերին զառեալ նշանսն Աբգարու, և դարձան մեծարել զնա և բերին զպատկերն, և եկաց յՈւռհա, մինչ 'ի Լիկիփինոս թագաւորն Յունաց, որ տարաւ 'ի Կոստանդնուպօլիս 'ի ձեռն Աբրահամու մետրապօլտի:

ԺԷ. Եւ սա եկն Թադէոս առաքեալ և մկրտեաց զսա և զամենայն քաղաքն, և գնացեալ առ Սանատրուկ կատարի 'ի նմանէ յԱրտազ: Ի նոյն վիճակեալ և Բար-

1. Մառինոսդ՝ Սաբինոս կոչի 'ի պատմութեան կամ 'ի Թղթին Աբգարու:

2. Այսպէս ՕՕ. բայց հնագոյն պատճէնք Մար Իհար ասեն:

3. Ուղիղն Էլևթերապօլիս (Ազատ-քաղաք) որ և Բեթոգաբրա, որ նշանակէ տուն հսկայից; մերձ յԱսկաղոն. այժմ կոչի Պէյթ-Ճէպրին, և է գեօղաւան:

ղողիմէի, վճարի 'ի նոյն Թագաւորէ յԱրաբիոն[1] քա-ղաքի։ Իսկ Աբգարու Թագաւորեալ ամս երեսուն և ութ կատարի 'ի Տէր. և Սանատրուկ տիրէ Միջագե-տաց. և շինէ զՄծբին, որ 'ի շարժմանէ փլեալ էր, և մեռանի յորսի Թագաւորեալ ամս քսան, և առնու ըզ-Թագն Երուանդ որդի կնոջ արշակունւոյ, և կոտորէ զամենայն զաւակս Սանատրկոյ, զերծեալ միայնակ մի Արտաշէս անուն, զոր առեալ Սմբատայ՝ անկանի 'ի Պարսս, առ Դարեհ արքայ վերջին։ Իսկ Երուանդ Թողու զՄիջագետս 'ի Տիտոս, և առնէ զնա յ'ոյժ. և շինեալ զԵրուանդաքար, անդ փոխէ զարքունիս յԱր-մաւրոյ, և 'ի նմանէ հեռագոյն շինէ զԲագարան տուն կռոց 'ի վերայ Ախուրեանայ գետոյ, և քուրմն դնէ զԵր-րուազ եղբայր իւր. մինչև 'ի յամն քսան և մի, յորում դառնայ Արտաշէս Թագաւորեալ. և տուեալ ճակատ 'ի Մարաց-Մարգ յԱխուրեան գետ, փախչի Երուանդ 'ի քարն[2] և սպանանի չարակնն այն։ Իսկ առնու զԹագն Արտաշէս. սա շինէ զԱրտաշատ 'ի տեղւոջ ուր խառ-նի Մեծամօր յԵրասխ։ Սա գերի ածեալ յամենայն կողմանց՝ չէթող տեղի անգործ 'ի Հայս. և չորեքան-կիւնի քարիւ նշանակէ զկողպարսն. և կարգէ աւուրս շա-բաթուց և ամսոց և բոլորման տարեաց, և կազմուած նաւագնացութեան, և արուեստ ձկնորսաց[3]։ Թագա-ւորեալ սորա ամս քառասուն և մի մեռանի. որում մա-հակից լինին ոչ սակաւ ծառայք։ Իսկ առնու զԹագն Արտաւազդ որդի նորա, որ զկնի աւուրց ինչ 'ի յորսս. գետամոյն լինի, առ կամրջովն Մեծամօրի, ըմպեալ յայսոց։ Իսկ առնու զԹագն եղբայր նորա Տիրան, յերրորդ ամի առաջնոյ Պերոզի, ամս քսան և մի. ո-րում ձիք առեն երկու երագունս զոր Թեւաւորս կոչէին։ Սա մեռանի 'ի ճանապարհին Եկեղեաց, պատահեալ

1. Քաղաք նահատակութեան Բարթուղիմէոսյ սկսեալ դրի, Ա-րեբանոս, Ուրբանոս, Արաբիոն, Արաբիսոն, Բարմա. առաջինն և վերջինն ստուգագոյնք են, զի Բարմ ըստ Խորենացւոյ նշանաւոր ինչ մասն էր քաղաքին, որ և էր 'ի Մեծն Աղբակ 'ի սահմանակցու-թեան Պարսկահայոց, որ այժմ կոչի Սէր-Ալպաղ՝ նովին հին հայ-կական նշանակութեամբ. բայց և քաղաքն և տեղի նահատակու-թեանն անծանօթք մնան այժմ։

2. Այսինքն միջնաբերդն 'ի քարաբլեր Երուանդաշատ քաղա-քի։

3. Հին Օ. որպէս ճկնոց։

ձեռն [1] սատակագանի . և առնու զԹագն Տիգրան վերջին եղբայր նորա ամս քառասուն և երկու : Զնա փոխէ Վաղարշ որդի նորա , յամի երեսներորդի երկրորդի հնազանդութեան իւրոյ Պարսից արքայի : Սա շինէ զՎաղարշաւան 'ի գաւառին Բասենոյ , ուր ծնաւ զնա մայրն իւր , և պատեաց զՎարդգէս աւանն 'ի վերայ Քասաղ գետոյ . և Վարդգէս քեռայրն Երուանդայ Հայկազնեայ սահմանակալացն շինեալ էր զնա . զոր սա պատեալ պարսպաւ Վաղարշապատ կոչեաց , որ և Նորաքաղաք [2] :

Յաւուրս սորա միաբանեալ ազգն Բուլղարաց [3] և Խազրաց [4] , Թագաւոր ունելով զՎնասեպ անուն Սուրհապ գան առ Կուր գետով անհնարին բանակօք , զոր առաջեալ Վաղարշու կոտորմամբ անցուցանէ ընդ դուռն Չորայ [5] . սակայն 'ի նետէ հարեալ յանկարծա մեռանի , թագաւորեալ ամս քսան : Այլ առնու զԹագն Խոսրով որդի նորա , յերկրորդում ամի Արտաւանայ Պարսից արքայի . և նոյնժամայն անցանէ ընդ լեառն Կովկաս յառնուլ զվրէժ հօրն , և մաշէ սրով զերկուսին ազգսն . և 'ի լաւացն պատանդս առեալ մի 'ի հարիւրոցն , դառնայ այսրէն , զիւրոյ տէրութեան նշան արձան հաստատեալ Հելլենացի գրով : Յորում ժամանակի սպան զԱրտաւան Արտաշիր Սասանցի . և լուեալ Խոսրովու ազդ առնէ Փիլիպպոսի կայսեր , և առեալ զզօրս Եգիպտոսի , և առ անապատօք մինչև ցծովեզերն Պոնտոսի , աւերէ զաշխարհն Պարսից ամս տասն , փախուցեալ զԱրտաշիր 'ի Հնդիկս . մինչև եկն Անակ , և նենգութեամբ սպան զքաջն , և մեռաւ ինքն և իւրքն : Այլ զորդին Անակայ զԳրիգոր առեալ Բուռնդարայ պարսկի որ եկեալ էր ընդ Անակայ , և գնացեալ 'ի Կեսարիա .

1 . Հին Օ . Նէփի :

2 . Քաղաքաւանն՝ առ որում այժմ Էջմիածին :

3 . Բուլղարաց ազգ սկիւթացի յառաջ քան զամենայն 'ի մերում պատմութեան յիշի , հաստատեալ բնակութեամբն Վոլգայ ուրուեմն 'ի սահմանս Կողայ և Բասենոյ :

4 . Խազիրք ցեղակիցք Բուլղարաց , նշանաւորք ասպատակութեամբ իւրեանց յարեւմտեան Ասիա և 'ի Բիւզանդեան կայսերութիւն . յետ Ժ դարու անյայտացեալ լինին :

5 . Դուռն Չորայ կամ Ճորայ , որ և Պահակն Հոնաց , Դարբանդայ գաւառն է . Տէրպէնտ կամ Տէմիր-գափու Թուրքաց , մերձ 'ի պարսպաւանդն Կովկասու յեզր ծովուն Կասպից :

և առեալ կին զքոյրն Եւթաղեայ զՍոփի. և զկնի ամի միոյ դարձաւ գնալ 'ի Պարս, և հասեալ աներոյն արգելու 'ի Վաղարշապատ քաղաքի. ուր մտանէ Սոփի ստնտու մանկանն Գրիգորի, զնա տուեալ այր իւր, 'ի գրկացն Ոգոհեայ առեալ 'ի ժամ կոտորածոյ ազգին Անակայ: Եւ տարեալ 'ի Կեսարիա ընծայեն Քրիստոսի. և վարժեալ անդ յոյն և ասորի գրով, և եղեալ երկոտասան ամաց, Դաւիթ ոմն ամուսնացուցանէ զնա 'ի դուստր իւր Մարիամ. և եղեալ երկուց որդւոց, մեկնեին 'ի միմեանց. Մարիամ 'ի կանանց վանս գնաց երէց որդւովն, և կրտսերն գնաց զկնի ճգնաւորի ումեմն Նիկոմաքեայ. և դարձոյց մայրն զՎրթանէս առ դայեակն իւր, որ և սնուցեալ ամուսնացոյց և զնա ևս: Իսկ զկնի մահուանն Խոսրովու՝ կոտորէ Արտաշիր զյիշատակս նորա. բայց զմանուկ մի փոքրիկ Տրդատ անուն, Արտաւազդ անուն ոմն նախարար յազգէ Մանդակունի, փախուցանէ 'ի Յոյնս, որ և սնաւ առ Լիկիանեայ իշխանի:

Եւ լուեալ Գրիգորի զամենայն պատահումն իւրեանց, գնաց առ Տրդատ, և ծառայէր զնա: Իսկ միւս եղբայր Գրիգորի Սուրէն անուն, տարեալ եղև առ Արտաշիր, և սնաւ առ հօրաքեռն որ էր կին որդւոյն Ջուանշիրի, արքային Հեփթաղաց[1]. որ և զարգացեալ՝ չոգաւ յերկիրն Ճենաց[2] և Դարբանդայ, և թագաւորեաց 'ի վերայ նոցա: Բայց ոմանք ասեն Օզոն ոմն անուն կոչեցեալ Յակոբ, թէ նա է եղբայր Գրիգորի. բայց Յակոբ որդի է քեռն Անակայ Խոսրովուհեայ, որ էր կին Տիրանայ արքայի, զոր սպան թագաւորն Լփնաց Արիդէս. և Յակոբայ առեալ զքոյր իւր զՍակդէն որդւովն իւրով Հրաչէիւ, զկնի մահուան ծնողացն՝ գնաց յերկիրն Գոթաց. ուր և թագաւորեաց Հրաչէն 'ի բարի պատահմանէ. և նա է որ եկն 'ի վերայ արքային Յունաց, և խնդրէր ախոյեան իւր ընդ կայսրն Դիոկղետիանոս. և յերկնչելն նորա 'ի Հրա-

1. Հեփթաղք կոչին և Թետալք կամ Թետաղացիք, և 'ի Բիւզանդացւոց՝ Սպիտակ Հոնք, ազգակից սոցին գոլով, բնակեալք 'ի հիւսիսակողմն աշխարհին Պարթևաց. ըստ քննութեան ուրումն Դիակեգաց են տոհմն:

2. Ճենքս ոչ են Չինք, այլ տոհմ կովկասեան 'ի սահմանս Դարբանդայ:

չէ՝ խնդրեցաւ այլ ոք զօրաւոր․ և գտեալ եղև Տրդատ, և կազմեալ կայսերականերով՝ ըմբռնէր զՀրաչէ և ածէր առ կայսր ։ Սամն որոյ և թագաւորեալ դայ ՚ի Հայս, Գրիգորիւ․ որ և յառաջին ամին իւրոյ չարչարէ զսուրբն Լուսածոյ, և արկանէ ՚ի վիրապն ։ Իսկ ՚ի հնգետասաներորդ ամին Տրդատայ՝ գան սուրբ տիկնայքն ՚ի Հայս և մարտիրոսանան․ և պատահարքն հասանեն ՚ի վերայ թագաւորին․ և ելեալ սուրբն Գրիգոր զհինգ օր անսուաղ պահելով, և այլ ևս վաթսուն օր վարդապետելով, ազատէ զաշխարհս ՚ի դիւապաշտութենէ․ և յեօթնևտասներորդ ամին Տրդատայ քահանայանայ ՚ի Տէր ։

ԺԸ․ Յուլիոս կայսր թագաւորեալ ամս չորս և ամիս եօթն, սպանանէ զնա ներքինի մի ծածուկ, և այրեաց հրով[1]․ ՚ի սմանէ կոչեցան Կայսերք՝ Հռոմայ թագաւորքն, վասն յաջողելոյն սմա ։ Օգոստոս՝ ամս յիսուն և վեց․ սա ՚ի սպանանելն զԱնտոնիոս և յառնուլն զԵգիպտոս և զԱսորիս, Սեբաստոս կոչեցաւ, և Հոկտաւիոս՝ որ է յաղթող և բախտամեծ ։ Ի սորա քառասներորդ ամին ծնաւ Տէրն ։ Տիբերիոս, ամս քսան և երկու ։ Ի սորա հնգետասաներորդ[2] ամին տէրն մեր Աստուածն Յիսուս մկրտեցաւ ։ Գայիոս ամս չորս․ սա աստուած ետ անուանել զինքն, և սպան զնա Աստուած ։ Կղօդիոս, ամս երեքտասան և ամիս ինն ։ Սորա կինն և որդիքն հաւատացին ՚ի Քրիստոս, և գտին զխաչն Տեառն[3] ։ Ներոն, ամս երեքտասան․ սա կոտորեաց զսուրբ առաքեալսն ։ Վեսպիանոս,․ ամս տասն ։ Տիտոս որդի նորա, ամս երկու․ որ առ զԵրուսաղէմ ։ Դոմետիանոս, եղբայր Տիտոսի, ամս հնգետասան․ սա առաքեաց զՅովհաննէս ՚ի Պատմոս ։ Ներուաս, ամ մի․ սա դարձոյց զՅովհաննէս յԵփես ։ Տրայիանոս, ամս իննևտասն, որ սպան զԻգնատիոս ։ Ադրիանոս, ամս քսան և մի․ սա շինեաց զԵրուսաղէմ ՚ի ձեռն Ակիւղասայ աներոյ իւրոյ ։ Տիտոս Անտոնինոս,

1․ Զարմանք են աշխարհալուր սպանման Յ․ Կեսարու անծանօթանալ ՚ի պատմչէդ ։

2․ ԾԾ․ [illegible] ։

3․ Կղօդեայ կինն Պատրոնիկէ կոչի ՚ի պատմութեան գիւտի խաչին, որ դասանի առ մեզ թարգմանեալ ՚ի նախնեաց, այլ ընդ անվաւերս դասի ։

որ կոչեցաւն Բարեպաշտ՝ որդւովքն, ամս քսան և երկու։ Աւրեղիոս, ամս հնգետասան. Կոմիդոս, ամս երեքտասան. Պերտինաքս, ամս վեց. Սևերոս, ամս ութևտասն. Անտոնինոս որդի Սևերեայ, ամս չորս. Աղեքսանդրոս Մամէի, ամս երեքտասան. Մաքսիմոս, ամս երեք. Գորդիանոս՝ ամս վեց. զսմանէ ասեն հաւատացեալ 'ի Տէր։ Փիլիպպոս ամս վեց. սա աջակցեաց մերում Խոսրովու. Դեկոս, ամ մի. Գալլոս, ամս երիս. Վաղերիոս, ամս եօթնևտասն. Կղօդէոս, ամ մի։ Աւրեղիոս, ամս եօթն։ Տակիտոս, ամիսս վեց. սա վրէժխնդիր եղև մահուանն Խոսրովու և սպանաւ։ Պռոբոս, ամս վեց. ոմանք ասեն թէ սա պսակեաց զՏրդատ[1]։ Կարոս համադերձ որդւովքն, ամս երկու։ Դիոկղետիանոս, և Մաքսիմիանոս, ամս հնգևտասն[2]։

Յերրորդ ամին սորա պսակեալ Տրդատայ գայ 'ի Հայս, և գտանէ զիշխանն Օտա զի պահեալ էր զգանձն արքունի, և զքոյր նորա Խոսրովիդուխտ յամուրն Անի. և յղէ 'ի նախարարացն Հայոց ընդ առաջ գալոյն նմա։ Ի հնգետասաներորդ[3] ամին Տրդատայ՝ սուրբն Գրիգոր նստի յաթոռ սրբոյն Թադէոսի առաքելոյն, 'ի Ղևոնդէ 'ի Կեսարիոյ պատրիարգէն ձեռնադրեալ. բերելով ընդ իւր զնշխարս սուրբ Կարապետին Յովհաննու, զոր Յովհաննէս 'ի դառնալն 'ի Պատմայ և 'ի գնալ յԵրուսաղէմ՝ ած յԵփեսոս, և յաւուրս Դեկոսի Փերմելիանոս եբեր 'ի Կեսարիա. և հայցեաց սուրբն Գրիգոր, և ոչ կամէր տալ, մինչև ետ հրաման 'ի հրեշտակէն սրբոյ սուրբն Ղևոնդ, որ և ետ ապա երկու լուսաւոր ակունս, զոր էր տուեալ նմա հայրապետն Հռոմայ, և զնշխարս սրբոյն Աթանագինեայ, զոր ասեն թէ եղբայր էր Մարիամու ամուսնոյ սրբոյն Գրիգորի։ Զոր բերեալ սերմանէր յերկիրս Հայոց, զհասարակն յԱշտիշատ պահելով, 'ի տեղիս Դեմետրեայ և Գիսանեայ, երկուց

1. Պռոբոս նախ դաշն հաշտութեան եդ ընդ Պարսս, ապա մարտ, և յայնժամ հաւաստի պսակին Տրդատայ՝ որ ընդ օգնական գնդին Հռոմոց զինուորէր, այլ ոչ յաջողէ նմա թագաւորել զայն նուագ։

2. Դոկղանէն 'ի կարգէ կայսերացդ երկիր մնասամբ, և թիւ ամաց իշխանութեան նորին ոչ է ուղիղ։

3. Ստուգիւ յեօթնևտասներորդում ամին։

եղբարց Հնդկաց իշխանաց, որք եկին առ Սանատրուկ արքայ, և զկնի հնգետասան ամի սպանման 'ի նեղուձն, որոյ որդիքն ժառանգեցին զՏարօն. և էին զխաւաղք և զեւ եւս կերպարանին ոմանք՝ ծամն պահելով. զոր մի ոք տացէ Թոյլ[1]: Յորում աւուրս հաւատաց 'ի Տէր մեծն Կոստանդիանոս սպանիացի, որ Թագաւորեաց ամս երեսուն և չորս, կոչեալ զամենայն Հռոմայիս և զՄի-ջերկրայս, և զՄ'իջագետս. զոր լուեալ մերն Տրդատ և սուրբն Գրիգոր, չոգան առ նա եօԹանասուն հազար հեծելօք, և եղեն դաշնադիրք միմեանց. և լուա սուրբն Կոստանդիանոս 'ի բերանոյն Գրիգորի զամենաքէնութիւնն Քրիստոսի ոճով. և հրաման եհան ընդ ամենայն Իտալիա՝ նաւակատիս առնել զալստեանն նոցա զենլեօք, ասելով եԹէ լիցուք խնդակից երկնային զօրացն: Այլ հրամայեաց սուրբն Գրիգոր աղ մատուցանել, օրհնեաց և առաքեաց յաշխարհն ամենայն, զի առանց այնր մի զենցեն անասուն. զի յինչ որ ոչ խառնի, ասէ, քահանայական օրհնութիւնն՝ 'ի կռապաշտութիւն հասանէ[2]. զոր Հրեայքն լուանային և սուր ուտէին. և ասէ սուրբն Գրիգոր, եԹէ որդիք են նոցա՝ որ զԹլփատութիւնն յանԹլփատութիւն դարձուցանէին: Այդին երկու արքայքն և երկու պապքն՝ Գրիգոր և Սեղբեստրոս, դաշն ուխտի կեալ և մեռանել 'ի միմեանց վերայ. զգիր ուխտին, ասեն, 'ի գրեն Թացին յահաւոր խորհուրդն[3]: Այլ 'ի դառնալն յարևմտից մեծացն այնոցիկ, լցեալ էին հիւսիսականքն զկողմն Աղուանից, 'ի բանս Շապհոյ Պարսից արքայի. և նահապետ ազգին Սղկունեաց ապստամբեալ՝ մտեալ էր յամուրն Ողկան, զոր երԹեալ Սմբատայ Զենացւոյ՝ կտրեալ զգլուխն առաքէր առ Տրդատ, և նա տայր նըմա զգաւառն, և յանուն իւր կոչէր տուն Սմբատեան: Այլ հսկայն Տրդատէս հարկանէր զհիւսիսականսն 'ի Գարգարացւոց դաշտին, ուր և սպան խոկ զԲասլաց արքայ զՃորպանածիգ հսկայն:

1. Զայս բան ասէ Զենոբ Գլակ վասն իւրոյ ժամանակին:

2. ՕՕ. Հասանէ:

3. Առ բազմերախտ հայրս մեր Լուսաւորիչ՝ տարապայման մեծարանք ոմանց յորդւոցն՝ զայսպիսիս բարբառեցին բանս, որոց Նախօրինակ է Դաշանցն անուանեալ Թուղթ. ոչ եԹէ Դաշինքն՝ այլ բանքն անհեթեթք երկրայականք են և անընդունելիք:

Յերեսներորդ ամի լուսաւորչութեանն իւրոյ սուրբն Գրիգոր զԱրիստակէս առաքէ 'ի Կեսարիա ձեռնադրել, վասն զառաջին ձեռնադրութիւնն անդ առնելոյ Թադէոսի առաքելոյն և արկանելոյն հիմունս եկեղեցւոյ. և անուն եպիսկոպոսապետին՝ զոր արար անդ սուրբ առաքեալն՝ Թադէոս կոչիւր :

Այլ յորժամ եղև Նիկիոյ սինհոդոսն, և Արիստակէս դարձայր կանոնական սահմանաւ, սուրբ պատրիարգն Գրիգոր երթեալ 'ի Տարօն, առնէր չորս ամիս առ Անտոն և Կրօնիդէս : Որք և ասացին ցնա, եթէ ծածկեա զքեզ յառաւել փառացդ՝ մօտ 'ի ծերութիւնդ, որպէս զմեծն Մովսէս, զի մի պաշտեսցեն զոսկերս քո նորադարձ ժողովուրդդ, և կամ գայթակղեսցին 'ի մեռանելն քո տկարամիտ կարծեօք : Զոր և արար իսկ. զի գնաց անտի յայրն Մանեայ. և կատարեցաւ 'ի լեառնն, յեցեալ 'ի գաւազանն. զոր գտեալ հովուաց թաղեցին, ոչ գիտելով զոմն. զոր յետոյ իմացեալ մեծարեցաւ տեղին : Ասեն թէ յորժամ թագաւորն Զենոն խնդրէր զնշխարն, 'ի տեսլեան յայտնեցաւ Ճգնաւորի ումեմն, զի տարցէ զնա գաղտ և ծածկեսցէ 'ի ներքոյ հիման եկեղեցւոյն Թորդանայ, զոր ես, ասէ, շինեցի. և կայ անդէն անյայտ. և զոր ետուն կայսերն՝ ասեն, Արշարունեաց եպիսկոպոս էր Գրիգորիս անուն, և յանուն նորա մեծարեցաւ, ուր և գտանի մասն ինչ. այլ և նա այր առաքինի էր յոյժ և բարի [1]:

ԺԹ. Իսկ սուրբն Կոստանդիանոս երբարձ զՄաքսիմիանոս ամպարիշտն և զՄաքսենտէս, և զՄաքսիմոս, և զԼիկիանոս անօրէն. որ եհան հարիւրապետ զոմն բերով զնդաւն 'ի գաւառն Կապադովկէք, և 'ի թեմն

1. Տարաձայնութիւն մեծ է առ պատմիչս վասն գլխոյն և փոխադրութեան նշխարաց Լուսաւորչին. որ զի յետէ և յառաջ քան զաւուրս Զենոնի, ասէ երկրորդ գլուխ է առ նովաւն, և համանելի է փոխադրութիւն մեծի մասին 'ի Կոստանդնուպոլիս, ուստի դարձեալ մասն մի բերաւ 'ի Հայս, և մասն մի յետ ժամանակաց յԻտալիա. իսկ զոր հեղինակդ յիշէ Գրիգորիս Արշարունեաց եպիսկոպոս՝ այդ անծանօթ է, զի առաջին եպիսկոպոս Գրիգորիս անուն յԱրշարունիս՝ 200 ամաւ կրտսեր է քան զԶենոն : Անհաւատալի է և այսպէս զրուցածն թէ Գրիգորիսի թոռին Լուսաւորչին էին տարեալ նշխարքն 'ի Յոյնս :

Թեղախոնէք և Մնասողիկեայք, և Խաղտանէք և Արամնեակք և Պաղփլոն, չարչարել զորս գտցէ քրիստոնեայս։ Յորմէ խորտակեալք փախեան 'ի կողմանս Սեբաստիոյ, ոմանք 'ի Մելետինէ, որ է ամրոց 'ի լեռնակողմն, և այլք 'ի Տախտալական լեառնն. որք բնակութեամբ արտաքս ածեալ կատարեցան՝ յԱկեղեցաձորն կոչեցեալ, որ և պատուի մինչև ցայսօր։ Իսկ սուրբ քառասունքն երթեալ թաքեան յայրին՝ որ կայ 'ի վերայ Մլիս գետոյ, որ այժմ կոչի Քաղ Վահանայ[1]. ուր կառուցին խաչ, և գրեցին զիւրաքանչիւր անուանս 'ի քարին. զոր գիտացեալ պատմեցին Լիկիանեայ. և հրամանաւ նորա եկեալ հանին յայրէ անտի; 'ի հնգետասան արեգ ամսոյ. զոր Ուխթանէս[2] տօն կարգեաց՝ որ է սկիզբն հանգստին նոցա. և կատարումն 'ի մարտի իննին։

Յետ այսորիկ խաղաղութիւն խնդրեաց Շապուհ արքայ Պարսից 'ի Կոստանդեայ, նեղեալ 'ի Տրդատայ արքայէն. և նորա հաւանեալ խնդրեաց 'ի նմանէ զթագն Դաւթի մարգարէին, զոր առ Յովաբ յորդւոցն Ամոնայ, 'ի տանէ Մեղքոմայ, և եդ 'ի գլուխն թագաւորին Դաւթի. որ անկաւ 'ի Քաղդէացիսն, և ապա 'ի Կիւրոս, և 'ի Դարեհէ յԱղեքսանդրոս, որով պսակեցան Մակեդոնացիք մինչև ցԱնտիոքոս՝ զոր սպան պարթևն Արշակ և եառ 'ի նմանէ. և եկն մինչև ցՇապուհ. յորմէ խնդրեաց կայսրն, զի օրինակաւն արասցէ իւր թագ, և զնորայն առ նա դարձուսցէ։ Այլ յորժամ ետ կազմել, եդ զերկոսին 'ի վերայ սեղանոյ, և ասաց ծառայիցն Շապհոյ առնուլ զիւրեանցն. և նոցա աչք կալեալ՝ առին զնորն և զնո-

1. Կապադովկէ ուղղագոյն ևս կոչումն է Կապպադովկիոյ։ — Թեղախոնեաց թեմն 'ի սահմանս Կապպադովկիոյ, ճշգրտիւ ոչ է յայտնի յայժմուս։ — Մնասողիկէ նշանակէ զԱրմենեան թեմն 'ի Փոքր Հայս, որոյ սահմանք փոփոխեցան ըստ ժամանակս ժամանակս։ — Արամնեակէ ըստ Բիւզանդացւոց թեմադրութեան մասն Փոքր Հայոց՝ որում զօրավարք Հայք կամ Յոյնք 'ի դրանէ ինքնակալին վերակացուք կային։ — Խաղտանէ թեմ 'ի սահմանս Մելիտինոյ և Հայոց Մեծաց։ — Պաղփլոն կամ Պափլագոնիա կողմանք Եւդոկիոյ (Թոքաթու)։ — Տախտալասոս, պարտարական լինել Մուրադասոս, յոր անուն քաղաքս մեծ 'ի հարաւոյ մտից Սեբաստիոյ։ — Վիճամէջք ուր թաքեան Քառասունքն՝ անուրք և անձայն վայրք էին և Քաղ Վահանայ ամրոց կոչէին յաւուրս Ուխթանիսի։

2. Այս է եպիսկոպոսն Սեբաստիոյ և պատմիչն, յորմէ առնումերս և յիշէ զդէպս։

ցին, քանզի խնդրեաց յԱստուծոյ Կոստանդիանոս զի տու նա մնասցէ սրբոյն Պաւղի յիշատակն ։

Ի. Իսկ սուրբն Տրդատ կոչեցեալն յաւազանէն Յովհաննէս, յաղագս պարկեշտ կենացն և չարատեաց քարուցն՝ դեղակուր եղեալ մեռանի յանապատաւորաց ոմանց, թագաւորեալ ամս յիսուն և վեց ։ Իսկ զսուրբն Արիստակէս սպան Արքեղայոս իշխանն չորրորդ Հայոց ՚ի ճանապարհին Ծոփաց, յաղագս միշտ յանդիմանելոյն զնա ՚ի գործս իւր չարս ։ Այլ յաջորդէ զաթոռն Վրթանէս եղբայր նորա, մինչ կենդանին էր Տրդատ ՚ի յիններորդ չորրորդ ամի արքայութեան նորա. և զԱրիստակէս տարեալ եդին ՚ի Թորդան առ հօրն ։

Իսկ զկնի մահուանն Տրդատայ՝ երկրորդ Սանատրուկ արշակունին, զոր կացուցեալ էր ՚ի Փայտակարան, թագ եդեալ՝ խորհէր տիրել բոլոր Հայոց. որ և սպանանել ետ զմանուկն Գրիգորիս բարբարոս ազգին ՚ի Վատնեան դաշտին, զորոյ զմարմինն բերեալ յԱմարաս հանգուցին ։ Լուեալ զայս մեծ իշխանն Աղձնեաց Բակուր, ձեռն ետ յՈրմիզդ Պարսից արքայ, և խորհէր զՍանատրկոյն. զոր իմացեալ նախարարքն Հայոց, ժողովեցան առ մեծն Վրթանէս, և առաքեցին երկուս ՚ի գլխաւորացն առ Կոստանդին որդի մեծին Կոստանդիանոսի, որ զկնի մահուան հօրն թագաւորեաց ամս քսան և չորս, զի օգնեսցէ Հայոց, և թագ դիցեն Խոսրովու որդւոյն Տրդատայ ։ Զոր ընկալեալ զխնդիրն առաքէ զԱնտիոքոս զօրագլուխն. և թագ եդեալ Խոսրովու, խաղան ՚ի վերայ Սանատրկոյ. որ իբրև լուաւ, փախեաւ ՚ի Պարսս. և յաւարի առեալ զաշխարհն զօրացն մերոց՝[1] դարձան ։ Այլ Սանաձիր Աշտունի գնացեալ ՚ի վերայ Բակուրայ՝ սատակէ զնա, և առեալ գերի բազում ՚ի կողմանցն Արծրնայ՝ դառնայ. ընդ որս և զեօթն սարկաւագունս սրբոյն Յակոբայ. և զհետ եկեալ սրբոյն և խնդրեալ. ոչ տայր, և նորա կամեցեալ գնալ առ արքայ, գետընկէց առնէր. և սրբոյն իմացեալ դառնայր ՚ի տեղի իւր՝ անիծանելով զՍանաձիր, և զաշխարհն իւր. յորմէ չարաչար մահուամբ սատակի, և գաւառն անպտուղ լինի՝ մինչև

2. Հին Օ. Հայոց ։

որդի Մանաճրի արժանաւոր ապաշխարութիւն ցուցեալ, և բերեալ հող զկնի մահուանն 'ի գերեզմանէ սրբոյն, օրհնի երկիրն հաշտութեամբն Աստուծոյ, բարեխօսութեամբ սրբոյն Յակոբայ:

ԻԱ. Իսկ մեծն Կոստանդիանոս ունէր և եղբայր մի Դալմատիոս կոչեցեալ, որոյ էին երկու որդիք, Դաղոս և Յուլիանոս. և երեք որդիս, աւագն Կոստանդ՝ անուամբ իւրոյ հօրն, որում ետ զԿոստանդնուպօլիս 'ի կտակին՝ զոր գրեաց. և միջինն իւր անուամբն, որում ետ զԱնտիոք աթոռ, և կրտսերոյն զՀռոմ. և խաբեաց միջնեկն[1] զկտակապահն, և առ զԿոստանդնուպօլիս, խոստովանեցեալ պահել զպատուէր նորա, զի արիական էր. և կալաւ աւագն զԱնտիոք, և չոգաւ 'ի վերայ կրտսերոյն վասն Հռոմայ. և ել ընդդէմ նորա հօրեղբայրն Դալմատիոս, և սպան զնա: Իսկ կրտսերն Կոստաս սպան զնա վասն եղբօրն, և որդիքն փախեան առ միջինն. և 'ի վեցերորդ ամին Կոստասայ բռնացաւ Մագնենտիոս, յափշտակեաց զԻտալիա և զԱփրիկէ, և Թագ եդ 'ի Սերմի[2]. և յայն ապստամբ չարք անձինք, սպանին զԿոստաս և զեղբօրորդի նորա: Իսկ լուեալ միջին եղբայրն գայ սպանանէ զՄագնիտ և լինի ինքնակալ, և կարգէ զԴաղոս կեսար յԱնտիոք, և զՅուլիանոս յուսումն առաքէ յԱթէնս. և զկնի այնորիկ ապստամբէ Դաղոս և մեռանի, և Յուլիանոս ապրի ապաչանօք Թագուհւոյն. զոր կեսար կարգէ յարեւմտեայ կողմանն, տալով նմա զքոյր իւր զՀելինէ 'ի կնութիւն, և ինքն չոգաւ յԱնտիոք: Իսկ Յուլիանոս յաղթեալ բարբարոսացն, և Թագ եդեալ գայ 'ի Կոստանդնուպօլիս. և ելանէ ընդդէմ նորա Կոստանդիոս, առեալ մկրտութիւն 'ի Զոյիոսէ, և մեռանի 'ի մէջ Կիլիկիոյ և Ասորիոյ. ասեն զղջացաւ մտօք 'ի վախճանին, և ուղղափառ հաւատով կատարեցաւ 'ի տէր: Զկնի նորա Յուլիանոս, ամս երկու և ամիսս ութ. և յետ նորա Յովբիանոս, ամ մի. զոր գովէ Սոկրատ, բայց անձինք ասեն զնա աղանդոյն Արիոսի, և վրիժառու ուղղափառաց. վասն որոյ և խեղդեցաւ ասեն: Յետ որոյ

1. Հինն միջնակն:

2. Սերմի, Սիրմիոն քաղաք Պաննոնիոյ, առ Սաւա գետով, որոյ աւերակք միայն մնան առ Միտրովից աւանաւ:

Վաղէս, ամս չորեքտասան, որ էր արիանոս։ Այլ զկնի քառասուն աւուր, եղբայր նորա Վաղենտիանոս կըր-ցորդէ նմա ամս երկոտասան, և մեռանի վասն ուժգին բարբառելոյն խրոխտանօք 'ի վերայ բարբարոսացն։ Իսկ Վաղէս՝ որ աքսորեաց զմերն Ներսէս, շանթահար եղեալ սատակի յԱնդրիանուպօլիս հրաւիրանաւ գեհե-նոյն։

ԻԲ. Իսկ մերն Խոսրով յերկրորդ ամի Արշակի Պարսից արքային, և յութերորդ ամին Կոստանդեայ թագաւորեալ 'ի վերայ հայրենեացն ամս ինն, շինէ զԴուին, որ առի բլուր. անդ ածելով զբնակիչսն Արտաշատու, իւրեանց իսկ կամօք, վասն հրախառն օդոյն. շինէ զարքունիսն իւր անդ։ Յաւուրս սորա միաբանեալ կողմն ծմակայինն[1], բիւրք երեք, ասպատակեցին յԱրարատ. ուր և առաքինացաւ Վահան ամատունի, սատակելով զզօրագլուխն նոցա, զվառեալն կճաւակուռ[2] թաղեաւ, և յաղթահարեալ զօրքն դարձան 'ի փա-խուստ։ Բայց զօրավարն Վաչէ անկեալ 'ի պատերազ-մին, յիշել հրամայեաց զանուն նորա 'ի պատարագին սուրբն Վրթանէս։ Կատարեալ զկեանս Խոսրովու, թաղի առ հօր իւրում 'ի Կամախ։ Այլ ինքնակալն Կոս-տանդիոս յեօթնևտասներորդ ամին իւրում շինէ թագ Տիրանայ որդւոյ նորա, և առաքէ 'ի Հայս. որ ոչ գը-նայր ընդ շաւիղս հարց իւրոց բարեգործաց։ Ի յերրորդ ամին սորա փոխի յաշխարհէս սուրբ պատրիարգն Վր-թանէս, և դնի 'ի Թորդան. և առնու զաթոռն սուրբն Յուսիկ որդի նորա, ամս վեց. որ և սաստիկ յանդի-մանէր զթագաւորն վասն զազիր գործոց նորա։ Յորում աւուր բերաւ պատկերն Յուլիանոսի առ Տիրան. և նա դնել կամեցաւ յեկեղեցւոջն 'ի գաւառին Ծոփաց. և սուրբն Յուսիկ կոխեաց և մանրեաց զնա առ ոտմօքն։ Այլ սրտմտեալ թագաւորն, հրամայեաց հարկանել զնա ջաղոտեօք մինչև յաւանդումն հոգւոյն. զոր տա-րեալ եդին առ հօր իւրում։ Այլ եկեալ սուրբն Դա-նիէլ ծերունի քորեպիսկոպոս, որ լեալ էր աշակերտ սրբոյն Գրիգորի, անէծ զՏիրան. ընդ որ զչարեալ

1. Կողմն ծմակային՝ հիւսի-սականդ է, Կովկասային լերանց երկիր։

2. Հինն կճակուռ։

թագաւորն, խեղդամահ ետ առնել զնա, որ թագեցաւ յիւր մեռանելն, որ առի Հայեաց զգլուխս. և առնու զաթոռն Փառներսեհ յԱշտիշատու, այր լաւ, ամս չորս: Յորում ժամանակի եկն զօրավարն Պարսից մեծ ամբոխիւ, և խաբկանօք առ ինքն կոչեաց զՏիրան, և խաւարեցոյց զաչս նորա 'ի գաւառին Ապահունեաց 'ի գեօղն՝ որ Արծուղն կոչեցաւ 'ի պատահմանէ գործոյն: Այս եւ իրաւունս Տիրան Աստուծոյ, ասելով. Զի զերկու լուսաւորս խաւարեցուցի, վասն այնորիկ խաւարեցան երկու աչքս իմ:

Զսուրբն Յուսիկ միանգամ ասեն գիտացեալ զկինն իւր, և յայնմանէ ծնեալ նորա երկու որդիս երկուորեակս, այսինքն 'ի միում յարգանդի, Պապ և Աթանագինէս. որք 'ի սարկաւագութիւն կոչեցեալք, և նոցա աղտեղութեան տուեալ զանձինս, շանթահարք եղեն 'ի միում աւուր. մնացեալ որդի մի Աթանագինէի Ներսէս անուն, ետուն յուսումն 'ի Կեսարիա: Իսկ 'ի թագաւորելն Արշակայ, որդւոյն Տիրանայ, եկն առ նա, և կայր նմա 'ի հպատակութեան, կրելով զսուսերն պողովատիկ առաջի նորա. զոր յետոյ թախանձանօք ածեալ 'ի հաւանութիւն, և տարեալ 'ի Կեսարիա՝ առնուլ զաթոռ սրբոյն Թադէի և Գրիգորի. զոր սուրբ Հոգին հրաշագործեաց իջմամբ աղաւնակերպ 'ի վերայ նորա 'ի զարմացումն տեսողացն: Այս եկեալ բարւոք կարգաւորէր զաշխարհս մեր, շինելով վանորեայս և օտարանոցս և հիւրանոցս և հիւանդանոցս և տունս ուրկաց. բառնալով զխստութիւն և զանողորմութիւն, և զկոծս 'ի վերայ մեռելոց, և զազգակցացն խնամութիւնս. և էր տեսանել այնուհետև զաշխարհս մեր իբրև զվերինն Երուսաղէմ, լի ամենայն բարեձևութեամբ: Զոր տեսեալ թագաւորին և նախարարացն, և իմաստուն առաջնորդաց եկեղեցւոյ, անուանեցին զնա պատրիարգ. զի առ մեզ կան, ասեն, սիւնքն անշարժելիք՝ Բարդուղիմէոս և Թադէոս, և սուրբ Լուսաւորիչն՝ որ պապն կոչեցաւ 'ի Հռոմ, հաւասար այնմ՝ որ նստի յաթոռն Պետրոսի առաքելոյն[1]: Զի զառաջինն չորս միայն էին, յԱնտիոք՝

1. Ոչ Արշակայ և ոչ նախարարաց նորին են բանքդ, այլ հանա-

Մատթէոսին, 'ի Հռոմ՝ Ղուկայն, յԵփեսոս՝ Յով-
հաննուն, յԱղեքսանդր՝ Մարկոսին. և յաւուրս որ-
դւոցն մեծին Կոստանդիանոսի, Կոստանդնուպօլսեցիք
և Երուսաղեմացիք համարձակեալ՝ պատրիարգունք կո-
չեցին զառաջնորդս իւրեանց, զԿոստանդնուպօլսի՝ վասն
զՅոհաննուն անդ փոխելոյն, և զԵրուսաղէմ՝ վասն
տնօրինականացն. և մեք, ասեն, վստահացուք 'ի մեծ
պարծանս մեր: Իսկ զՍեբաստիայ, և զՄելտենոյ, և
զՄարտիրոսաց քաղաքի զեպիսկոպոսն՝ մետրապօլիտս
կոչեցին. և յօրինեցին զինն դասուցն երկնից զխոր-
հուրդն 'ի Հայս. այսինքն պատրիարգ, մետրապօլիտ,
եպիսկոպոս, քահանայ, սարկաւագ, կէս սարկաւագ,
դպրապետ, կրօնաւոր [1], ժողովուրդք:

ԻԳ. Յորում աւուրս նշկահեալ Արշակայ զՎա-
ղենտիանոս կայսր, և նորա բարկացեալ սպան զՏրդատ
զեղբայր Արշակայ, որ կայր 'ի պատանդի: Եւ գնա-
ցեալ մեծին Ներսեսի, պատուի 'ի կայսերէ, շնորհա-
ւորեալ նմա զանուն պատրիարգութեանն [2], և տուեալ
ցնա զորդի սպանելոյն, և պարգևս բազումս՝ դարձու-
ցանէ 'ի Հայս: Իսկ զկնի մահուանն Վաղենտիանու,
չարափառն Վաղէս լուծեալ զխաղաղութիւնն ընդ
Հայս՝ խնդրէ զանձն Արշակայ 'ի ձեռն զօրավարին
Թէոդոսի: Եւ սուրբ պատրիարքն առեալ զՊապ որդի
Արշակայ գնաց առ Թէոդոս, և նովաւ [3] 'ի դուռն կայսեր.
և տեսեալ զԹագաւորն, քարոզէ նմա ուղղափառու-
թիւն, և 'ի չհաւանելն՝ մեռանէր որդի նորա: Եւ
բարկացեալ աքսորէ զնա 'ի կղզի անբնակ եօթանասուն
ոգւով զինն ամիս. որք շնորհօքն Աստուծոյ կերակրեալ
լինէին 'ի շաբաթն և 'ի կիւրակէսն ձկամբք, զորս ըն-
կենոյր ալիք ջուրցն հանդերձ փայտիւ և հրով: Եւ
որպէս ասեն՝ սպանեալ զՎաղէս Գէորգիոս վկայն, և
հրկէզ լեալ մարմինն. և առնու զԹագն մեծն Թէո-
դոս. և նա դարձուցանէ զսուրբն 'ի կղզւոյն. և առնէ
նովաւ ժողով ընդդէմ հոգեմարտին հարիւր և յիսուն

խոհից անուանեալ Դաշանց Թըղ-
թոյն. իսկ ինքնագլխութիւն կա-
թուղիկոսաց Հայոց յետ մահուան
Ս. Ներսեսի, մանաւանդ յետ
փոխման մեծին Սահակայ և ժողո-
վոյն Քաղկեդոնի եղև:

1. Նոր Օ. [illegible]:
2. Հեղինակիդ է խնդրուած և
ոչ կայսերն:
3. Նոր Օ. Նորա:

եպիսկոպոսաց՝ նզովելով զՄակեդոն, և զամենայն խմորեալս ՚ի նմանէ. և ս հաստատեալ պատրիարգն Ներսէս վկայութեամբ հարիւր և յիսուն եպիսկոպոսացն[1], դառնայ ՚ի Հայս։ Իսկ Արշակայ սպանեալ զԳնէլ եղբօրորդի իւր, վասն Փառանձեմայ կնոջ նորա ՚ի քըսութենէ Տիրիթայ, նզովէ զնա սուրբն Ներսէս, և ինքն գնայ ՚ի Յոյնս, փոխանորդ իւր թողեալ զԽադ եպիսկոպոս Բագրևանդայ, որոյ շտեմարանքն ալեւրացան, որպէս Եղիայիւ կնոջն այրւոյ։

ԽԴ. Ընդ այն ժամանակս Շապուհ արքայն Պարսից գայ յԱտրպատական, և առ ինքն կոչէ զԱրշակ, կապէ զնա և տայ տանել յԱնուշն կոչեցեալ զղեակ, ուր և մեռաւ իսկ անձին արարեալ սրով։ Իսկ սուրբն Ներսէս լուեալ զայս՝ խնդրէ ՚ի կայսերէ թագաւորեցուցանել զՊապ որդի Արշակայ, զոր և արար իսկ. առաքէ զօրու ծանու ՚ի Հայս պատրիարգաւն Ներսիւ. որք եկեալ գտին զաշխարհս մատնեալ Մեհրուժանայ Արծրունւոյ ուրացողին զՔրիստոս, պարսկական զօրօք լցեալ. ընդ որս մարտուցեալ սպանեն զՊարսիկն աղօթիւք սրբոյն, և զՄեհրուժան կալեալ Սմբատայ Բագրատունւոյ, հրացեալ շանթիւք պսակէ զնա, նախատանօք սատակեալ. և հաստատեցաւ երկիրս ընդ ձեռամբ Պապայ ամս եօթն։ Յորում ժամանակի շինեաց Անատոլիս զօրագլուխն Յունաց յանուն կայսերն զԹէոդոսուպօլիս[2]։ Բայց Պապ յանդիմանեալ ՚ի Ներսիսէ յաղագս զազիր գործոցն, տայ նմա դեղ մահու ՚ի գեօղն Խախ յԵկեղեաց գաւառին զանխլաբար, և թաղեցաւ ՚ի Թիլն, որ կալաւ զաթոռն ամս երեսուն և չորս[3]։ Ակացոյց Պապ ՚ի տեղի նորա զՕունակ ոմն սակաւ աւուրս, և ապա զՇահակ ՚ի գաւառէն Ապահունեաց, առանց մետրապոլտին Կեսարու, ըստ օրինի պատրիարգաց, որ պաշտեաց զաթոռն ամս չորս։

Իսկ զօրավարին Անատոլեայ կալեալ զՊապ խաբանօք և կապեալ զնա յերկաթս, առաքէ առ Թէոդոս, որ

1. Եւ այս գիւտ ըստ վերնոյդ։

2. Շինութին Թէոդոսուպօլսեայ, որ է Կարնոյ քաղաքն, անուանեալ եղև յաւուրս Փոքուն Թէոդոսի։

3. Թերևս ՚ի նահատակութենէն սրբոյ Յուսկան մինչև յաթոռակալութիւն մեծին Սահակայ հաշուեցին երեսուն և չորք ամք. բայց սուրբն Ներսէս ոչ աւելի քան զտասն ամ եկաց քահանայապետ։

չարար զնա արժանի տեսանելոյ, այլ հրամայեաց զնա ընկենուլ 'ի ծովն[1]: Այլ թագաւորեցուցանէ Հայոց զՎարազդատ ոմն արշակունի ամս չորս: Յերկրորդ ամին սորա ննջէ Շահակ, և յաջորդէ զնա Զաւէն եղբայր նորա, լաւ իբրև զնա, զամս չորս: Իսկ Վարազդատ որսացեալ վասն սպանանելոյն զքաջն Մուշեղ, հալածի յազգէն Մամիկոնէից, և Թէոդոս աքսորէ զնա 'ի Թուլէս կղզի: Այլ թագաւորեցուցանէ Հայոց զերկուս որդիսն Պապայ, զԱրշակ և զՎաղարշակ: Ի յերրորդ ամին Արշակայ ննջէ Զաւէն. և առնու զաթոռն Ասպուրակէս եղբայր նոցունց և առաքինակեաց, ամս հինգ:

Այլ բաժանեն զաշխարհս Շապուհ Պարսից և Արկադէոս որդին Թէոդոսի, սէր արարեալ ընդ միմեանս. Արշակ առնու յանձն զկողմն Յունաց վասն հաւատակցութեանն. իսկ Վաղարշակ՝ որ ունէր զմասն Պարսից զարևելակողմն՝ մեռանի. և դնէ 'ի տեղի նորա Շապուհ զԽոսրով ոմն արշակունի, որ զկնի երից ամաց մերժի 'ի տէրութենէն 'ի քսութենէ գործակալաց աշխարհիս. այն որ նստոյց յաթոռ պատրիարգութեան զսուրբն Սահակ, որդի մեծին Ներսիսի, որ պաշտեաց զսուրբ աթոռն ամս յիսուն: Իսկ թագաւորն Պարսից կացոյց 'ի տեղին Խոսրովու զՎռամշապուհ եղբայր նորին, ամս հնգետասան:

ԻԵ. Ի հինգերորդ ամին սորա և յառաջին ամին Արտաշրի որդւոյ Շապհոյ՝ սուրբն Մեսրոպ յօրինէ դըպրութիւն հայերէն. քսան և երկու գիր առ Դանիէլի Ասորւոյ գտեալ 'ի հին ժամանակաց, որ վասն ոչ պարզելոյն զընդարձակութիւն լեզուիս, անհոգացեալ եղև յառաջնոցն, յոյն և ասորի և պարսիկ գրով շատացեալք. և ոչ Մեսրոպ կարէր նոքօք փոխել զաստուածաշունչ մատեանս 'ի հայ բարբառ: Վասն որոյ աղօթից տուեալ զանձն գործակցութեամբ սրբոյն Սահակայ, տայ նմա Աստուած զխնդրելին, չորեքտասան գիրս, աջով իւրով դրոշմեալ առաջի նորա որպէս մեծին Մովսեսի 'ի լեառն Սինայ, և սմա 'ի լեառն Բա-

1. Ոչ 'ի ծով ընկեցեալ, այլ սակրով սպանեալ ասեն զՊապ հնագոյն պատմիչք:

լուայ [1], որպէս տակաւին ցուցանի դրոշմն աստուածա-գիծ վիմին և նկարք գրերոյն, և պատուի տեղին խըն-կօք և ջահիւք միշտ 'ի (Տաճկաց և քրիստոնէից [2]) բը-նակչաց տեղւոյն ։ Եւ զի լեալ է հայերէն գիր հնոյն՝ վկայեցաւ 'ի ժամանակս Լևոնի արքայի, զի գտեալ դրամ 'ի Կիլիկիա, հայերէն գրով դրոշմեալ զանուն կռապաշտ Թագաւորացն Հայկազանց [3]. զորոց զԹերու-Թիւնն ելից նորս մեր Եզրաս, աստուածախառն շնոր-հօք լցեալ, նորոգիչ նորոյս Իսրայելի և կարգաւորիչ ։ Որ և 'ի ձեռն աստուածատուր պարգևացն զճառագայթս սրբոյ Երրորդութեանն առեալ, մարգարէիւք և առա-քելովք և աւետարանչօք և երկնային դասուք և ա-մենայն արդարոցն խմբիւք, գայր մտանէր 'ի Հայա-ստան աշխարհս, և գանձէր յեկեղեցիս մեր զանասելի գեղեցկութիւնս 'ի զարդ հոգւոց և մարմնոց, և 'ի պար-ծանս յաւիտենից, զոր ոչ արար ամենայն ազգաց Տէրն բոլորից ։ Քանզի ոչ ճարտարօք և ոչ միջնորդովք ի-մաստնացաք, և առաջնորդեցաք առ նա, այլ 'ի յերկնա-պարզ և յաշխարհատեղծ աջոյն գրեցաւ մեզ դպրու-Թիւն ուսման. և տեառն մերոյ և Աստուծոյ յիշա-տակն կենդանի է 'ի մատեանս մեր, զօրութիւն տա-լով և շնորհս, որք հաւատովս մատչին և բանականա-պէս ։ Վասն որոյ փառք պատիւ և գոհութիւն առա-ղին և օրհնութիւն 'ի Տեառնէ ածողին առ մեզ, և պայծառութիւն յիշատակի անուան նորա 'ի գիրս կե-նաց, (Մեսրոպայ, որ է կանաչացեալ, այսինքն յարա-զուարձ և բերկրեալ [4], հօր մերում տեղի և յիշատակ ընդ առաւել սուրբսն, և մեզ աղօթիւք նորա ողորմու-

1. Աշակերտք Ս. Մեսրովպայ 'ի Սամոսատացւոց քաղաքի, այսինքն 'ի Սամոս կղզւոջ ասեն լեալ գզիւտ հայկական տառիցս, զոր ոմանք Սա-մոսատացւոց քաղաք ընթեռնուն և կարծեն ։ Բալուայ գիւղդ անծանօթ է այլ Թերևս ոչ անպատճառ, զի ոչ միայն աղօթարան և մատուռն Ս. Մեսրովպայ պատուի անդ 'ի գլուխ լերին՝ յորում բերդն Բա-լուայ, և յիշատակի անդստին 'ի ԺԴ դարէ, այլ զի և յանձաւի անդ լերինն՝ ուր հեղինակս ասէ զաստուածագիծ վէմն, գտաւ 'ի նո-րումս բևեռագրանդակ արձանագիր հին ։

2. ( ) ըստ Հ. օրինակին ։

3. Ցանկալի գիւտ և հետաքըն-նելի, այլ և երկբայելի, զի արդ ոչ ուրեք ճանաչի հայատառ դրամ Թագաւորաց մերոց Հայկազանց և Արշակունեաց ։

4. Ի սեմական լեզուաց ստու-գաբանելով, Մեսրոպ [illegible] բեր-կրեալ լոյ յարաբացին ։

թիւն և զթութիւն յԱստուծոյ 'ի հաւատոր աշակերտաց նորա, և հոգևոր որդւոց[1]):

Զուարճացեալ ապա սուրբ պատրիարքն Սահակ երկնաւոր պարգևօքն, ընտրէ մանկունս առաքինազարդս, և առաքէ յազգս, բերել յամենայն ազգաց զարուեստ մատենից. զՅովսէփ և զՂևոնդ, զՅովհաննէս, զԱբրահամ, զԱրձան, զՄուշէ, զԵզնիկ, զԿորիւն, և զայլս. ապա և զկնի ամենեցուն զՄովսէս և զԴաւիթ և զԵղիշէ և զՄամբրէ' զեղբայր Մովսիսի: Զկնի սոցա և զԱրձան արծրունի և զԽոսրով և զԴաւիթ պատմագիր. որք թարգմանեցին զամենայն մատեանս 'ի սոյն օրինակաց սրբոյն Պետրոսի: Նորոգեաց սուրբն Սահակ և զտաճար սրբոց Հռիփսիմեանցն, զաւերեալն 'ի Շապհոյ, և անյայտ եղեալ նշխարացն' խնդրեալ յԱստուծոյ' յայտնեցաւ նմա: Սա ետես զբաժանեալ թագաւորութեանն և զքահանայապետութեան յազգէն Պահլաւունեաց, և վերստին անդրէն նորոգել 'ի լրման աւուրց: Սորա էր դուստր միամօր[2], զոր տայ յամուսնութիւն Համազասպայ Մամիկոնենից, յորմէ ծընաւ սուրբն Վարդան: Նաև աքանչելի այրն Աստուծոյ Մեսրոպ անցեալ 'ի Վիրս, տանէ և նոցա գիրս, 'ի ձեռն Ջաղելի ումեմն, որ աշակերտեցաւ նմա. և դընացեալ յԱղուանս, ստեղծու և նոցա գիր ըստ նոցա լեզուին, ձեռօք Բենիամինի' որ անտի աշակերտեցաւ նմա:

ԺԶ. Իսկ Սահակ ռահճապուհ բարիոք կատարեալ զկեանս իւր. և գնացեալ սուրբն Սահակ առ Յազկերտ, խնդրէ զԽոսրով' որ կայր 'ի բանտի, և վերստին թագաւորեցուցանէ զնա, որ ոչ աւելի կացեալ քան զտարի մի' վախճանի: Իսկ 'ի մեռանելն Յազկերտի, նստի յաթոռն Վռամ երկրորդն. որ և բազում չարիս խորհէր ածել 'ի վերայ Հայոց: Զոր իմացեալ սուրբն Սահակ' գնաց առ Յունօք, և առաքէ զսուրբն Մեսրոպ և զՎարդան թոռն իւր առ Թէոդոս որդի Արկադեայ. զոր խնդութեամբ ընկալեալ, կոչէն զՎարդան ստրատելատ, և զՄեսրոպ վարդապետաց վարդապետ, և

1. ( ) Այսչափս չիք 'ի Բ. Օ: նաև անուն, բայց նախնիք Սահակա-
2. Նոր Օ. մի յաւելու Մա- նոյշ կոչէն զնա:

դպրոցս հրամայեն կարգել Թէոդոս և պատրիարքն Ատտիկոս, և ռոճիկս յարքունի տանէ կարգեն։ Այլ դարձեալ եկին առ սուրբն Սահակ, և կատարեն զհրամանն։

Յետ այսորիկ առաքէ զՎարդան առ Վռամ խնդրել զհաշտութիւն, և թագաւորեցուցանել զԱրտաշիր, որդի Վռամշապհոյ, զոր և արարին իսկ։ Իսկ Մովսէս ասէ թէ զկնի Խոսրովու թագաւորեցոյց Յազկերտ զՇապուհ զորդին իւր, ամս երեք. որ և 'ի համբաւ մահու հօրն գնացեալ, մեռաւ 'ի զօրացն. և ապա, մընաց երկիրս անիշխան և չփոթ ամս մետասան. և ապա թագաւորեաց Արտաշիր, որ և ատեցեալ եղև 'ի նախարարացն վասն զազիր գործոցն. վասն որոյ աղաչեն զմեծն Սահակ ընկենուլ զնա. և 'ի չհաւանելն նորա՝ ինքեանք երթան 'ի դուռն Վռամայ, կոչել տան զԱրտաշիր և յղել 'ի Խուժաստան։ Այլ ընկեցեալ զսուրբն Սահակ, կարգեն 'ի տեղի նորա զՍուրմակ չարախօսակից իւրեանց, որ ոչ յամեալ տարի մի՝ հալածի. և դընեն զԲրքիշու ասորի, ամ մի. և ապա զՇմուէլ 'ի նոյն ցեղէ, ախտացեալք և վատավարք, յորոց տաղտկացեալ նախարարացն Հայոց՝ հալածեն, և աղաչեն ըզսուրբն Սահակ առնուլ զաթոռն. որոց ոչ հաւանէր, բայց 'ի վարդապետութենէ ոչ բնաւ դադարէր, այլ դիեցուցանէր հոգևոր գառանցն զերկնաւոր աղբիւրն 'ի տուէ և 'ի գիշերի։ Ոմանք զկնի Բրքիշոյ և Շմուէլի ասեն առեալ Սուրմակայ զաթոռն ամս եօթն։ Իսկ սրբոյն Սահակայ արարեալ դոյզն ժամանակս 'ի գաւառին Բագրևանդայ, 'ի գեօղն Բլուր, կատարի առ Քրիստոս, և ամփոփի յԱշտիշատ, զկնի սատակմանն Վռամայ և տիրելոյն Յազկերտի որդւոյ նորա։ Զկնի ապա վեցից ամաց կատարի սուրբն Մեսրոպ 'ի Վաղարշապատ, և դնի 'ի յՕշական գեօղն, խաչանման լոյս երկնաւոր կալով 'ի վերայ դագաղացն, մինչև եդաւ 'ի գերեզմանի։ Բայց զաթոռն տեղապահութեամբ խընամէր Յովսէփ աշակերտ Մեսրոպայ, 'ի Վայոց ձորոյ, 'ի գեղջէն Հողոցմանց. և ասեն Սուրմակն կատարէր զձեռնադրութիւն, մինչ կենդանին էր, զամս եօթն։

ԻԷ. Իսկ նախարարացն 'ի մի վայր ժողովեալ, կացուցանեն տեղապահ թագաւորութեան զսուրբն Վար-

դան ։ Օ այսու ժամանակօք դարձան 'ի Թարգմանութենէ Ղեւոնդ, Կորիւն և Երձան, որ դիպեցան 'ի ժողովն Եփեսոսի, զոր արար Թէոդոս 'ի մետասաներորդ [1] ամի Թագաւորութեանն իւրում վասն Նեստորի չարի, և բերին անտի կանոնս գլուխս վեց ։

Բայց գունդն Հայոց՝ էր զի հնազանդէին Պարսից, և էր զի դիմանային պատերազմաւ, յորժամ վասն հաւատոց ոյժ հասանէր ։ Քանզի Շաւասպ արծրունի և Վնդոյ աւագ նախարարք ուրացեալք զհաւատս՝ շինեն 'ի Դուին մեհեան Որմզդի և տուն կրակի, և քրմապետ դնեն զՇերոյ զորդին Վնդոյի․ զոր լուեալ սուրբն Վարդան, գայր իւրով գնդաւն, և սատակէր զՇաւասպ և զմարզպանն Մշկան փախստական առնէր, և զպիղծն Վնդոյ յատրուշանն հրոյ արկեալ այրէր, և զՇերոյ 'ի վերայ բագնին կախէր զփայտէ, և զտեղին շինէր եկեղեցի անուամբ սրբոյն Գրիգորի ։ Այզուքն Յովսէփ ձեռնադրեն կաթողիկոս, որ արար զժողովն 'ի Շահապիվանս, ուր զուտգանաց կանոնն կարգեցին ։ Որ զկնի երկու ամաց եկեալ գունդ 'ի Պարսից, և ըմբռնեալ զնա և զՍահակ և զՂեւոնդ և զայլսն, եդին 'ի բանտի, որպէս զխրատտուս Վարդանայ, հեռագոյն որսացեալ 'ի յըմբռնել զսուրբսն․ զոր և խնդութեամբ ընկալան զկապանսն վասն Քրիստոսի, և ոչ յօժարեցին հանել զնոսա մինչ ցժամանակն ։ Վասն որոյ 'ի մի վայր եկեալ իշխանքն Հայոց, դնեն զԳիւտ պատրիարք, և 'ի Դուին փոխեն զաթոռն, հրամանաւ նորին Յովսէփայ․ յորմէ մանաւանդ հնազանդեցան սրբոյն Վարդանայ ամենայն նախարարքն Հայոց, որովք տայր պատերազմ ընդ Պարսս զամս ինն և տասն, յաղթեալ քառասուն և երկու [2] պատերազմաց, մինչև ցկատարումն իւր մարտիրոսութեամբ, օրհնութեամբ սրբոյն Սահակայ․ որ 'ի ժամ վախճանի իւրոյ յամսեանն նաւասարդի յերեսունն, յաւուր ծննդեանն իւրոյ, օրհնեաց զնա և զեղբարս իւր զՀմայեակ և զՀամազասպեան․ նոյնպէս և սուրբն Մեսրոպ յիւրում կատարմանն յերեքտասան մեհեկի

1․ Ոչ 'ի մետասաներորդի ամի այլ 'ի քսաներորդէն Թէոդոսի գումարեցաւ ժողովդ ։

2․ Զայսպիսի դէպս գործոց սրբոյն Վարդանայ ոչ գտանեմք առ հնագոյնս 'ի պատմչաց ։

անձոյ. որոց աղօթիւք և օրհնութեամբ պարարեցան և պատկեցան :

Բանզի ընդ այն ժամանակս եկաց 'ի գործ հազա-րապետութեան Յազկերտի չարաժամն Միհրնեհ, և չո-գաւ առ նա սեպուհն Վարազվաղան, որ էր փեսայ Վասակայ Սիւնեաց իշխանի, 'ի նոյն ազգէ, ատեցեալ և հալածեալ յաներոյն իւրոյ. որ և ուրացեալ զՔրիս-տոս, գրգռեաց զնա 'ի յանցանս զոր անցոյց ընդ Հայս. որ և 'ի նոյն խորխորատն սատանայի անկանէր անէր զորին Վասակ. և եղեն պատճառք այնքան աղետից, որ եանց ընդ Հայս, զոր յընդարձակ պատմութիւնն է ուսանել : Այլ վկայեցին Վարդանանքն, հազար եր-կերիւր երեսուն և երկու [1] 'ի հրատից երեսունն, 'ի վեշտասանմն Յազկերտի. և զկնի երկուց ամաց սուրբ երէցն Սամուէլ և սուրբ սարկաւագն Աբրահամ, 'ի հրատից եօթն. և սուրբ եպիսկոպոսն Բասենոյ Թա-թիկ, որ յառաջագոյն տարեալ էր 'ի Խուժաստան, դառն տանջանօք 'ի տասն հրատից. և սուրբ կաթու-ղիկոսն Յովսէփ և տէրն Սահակ և սուրբ քահանայքն Ղեւոնդ և Մուշէ և Արշէն, և սուրբ սարկաւագն Քաջաջ, վեցեքեան սոքա կատարեցան 'ի քսան և հինգն հրատից, յԱպար աշխարհի 'ի փառս Աստու-ծոյ : Այլ երանելի մոգպետն 'ի մարգաց տասն : Ասո-ղիկն ասէ, թէ ստուգեցաք զվեշտասաներորդն Յազկեր-տի՝ երրորդ ամ Մարկիանոսի [2] :

ԺԲ. Յորում աւուր սուրբն Մովսէս և Մամբրէ և Դաւիթ եկեալ յուսմանէ, հոգայինն զտուն կաթու-ղիկոսարանին : Այլ թուի թէ 'ի լինել ժողովոյն Քաղ-կեդոնի, վախճանեալ էր Գիւտ [3], և չև էր նստեալ

1. Ի թուոյ այսմ երկերիւրքն յետոյ ուրեմն կատարեցան, և ոչ 'ի պատերազմին :

2. Սոյնք օր նահատակութեան Վարդանանց է երկուքն յունիսի, 451 ամին Քրիստոսի. որ է եր-կրորդ ամ Մարկիանոսի :

3. Ի լինել ժողովոյն Քաղկե-դոնի՝ ոչ միայն թէ վախճանեալ չէր Գիւտ, այլ և ոչ նստեալ կա-թողիկոս. աղմկին Պարսից և պա-տերազմին Վարդանանց ժամանակ էր 'ի Հայս, վասն այնորիկ և չյղ-տաւ ոք 'ի մերոցս յայնմ ժողովի, գոնեայ երբև երեսփոխան մերոյ հայրապետի : Իսկ որ զՄովսէսեան և զԴաւթեայ և զՄամբրեայ բանիցն հակաճառութիւնք, զաւանելն և այժմ՝ խմաստակեալ և ճամարտակեալ բանիցն և ոճիցն իսկ գիրք. բայց ոչ 'ի Մովսիսեանց առաջ յօրինեալք կամ թելադրեալք, այլ զկնի ու-րեմն կարկատեալք յաւուրս Ե-զրայ և Հերակլի կայսեր՝ 'ի համան-

Յոհան Մանդակունի. և բերեալ առ սոսա Թուղթ դաւանութեան, ոչ ընկալան, զի արտաքոյ էր սուրբ հարցն աւանդից: Նաև չոգան Մովսէս և Պաւլիթ, Թէ հնար իցէ օգնել ուղղափառութեանն (!). վասն զի գտանէին այսպիսի բանս առ մեզ, Թէ Պաւլիթ խօսե֊ ցաւ յերկար ընդ Յուլիանեայ, և ընդ դորան երեցն Պող֊ քերայ (և ընդ Սամբրէի արքեպիսկոպոսն Կորնթա֊ ցւոց [1]), և կարկեցան և յամօթ եղեն: Եւ ապա յառն եկաց Մելիտոս մետրապոլիտն Աղեքսանդրացւոց, և ա֊ սէ ցՄովսէս. Գիտեմ զքեզ և զաշակերտս քո 'ի մանկութենէ կրթեալ, և թեքեալ 'ի ճոռոմ բանս կո֊ կողաբանիցն և կկզայօնից փիլիսոփայից, և ոչ ոք կա֊ րէ յաղթել ձեզ. այլ և նախանձու վառեալ էք զի ոչ կոչեցաք զձեզ, զի չէր կենդանի պատրիարգն ձեր: Եւ ասէ Մովսէս. Նախքէն ճանաչես զմեզ, զի ան֊ դրանիկ էաք եկեղեցւոյն, և դատաւորք հայրապետա֊ նացն, և ընդէ՞ր ոչ կոչեցիք զմեզ, և զասազմահմանու֊ թիւնս մեր նախատինս ասես: Բայց պատճառ ժողո֊ վոյն ձեր՝ չէ ծածկեալ յումեքէ, այլ մեք զճշմարտու֊ թիւնն ոչ թողումք, մի բնութիւն ասել մարմնացելոյ բանին Աստուծոյ: Ասէ Մելիտոս. Որպէս ասես զմինն, յատկացեա՞լ ասես զՈրդի 'ի Հօրէ, և միացեալ 'ի մարմնի: Մովսէս ասէ. Ոչ բաժանեալ 'ի Հօրէ, և միացեալ 'ի մարմնի: Եւ այլ այսպիսի բազում բանս խօսեցան: Ուստի կարծեցաք այսպիսի գալ զժամանա֊ կըն, զի զատան առ կալեալ Գիւտայ զաթոռն՝ կատարի, և յաջորդէ զնա Յոհան Մանդակունի, իմաստասէր և լի հոգւով Աստուծոյ, որ բարիոք յօրինեաց զկարգս ձեռնադրութեան և ժամակարգութեան, և զճառս խրատուց: Եւ սա թարգմանեաց զերկրորդ Կորնթա֊ ցւոց թուղթն, զՅոհաննն, և այլ բազում օգուտս գործեաց 'ի կեանս իւր: Եկաք 'ի կողմն Յունաց ասեն զԳիւտ կաթուղիկոս, և զՅովհան 'ի Պարսից 'ի միում ժամանակի: Ընդ սոքօք էր ճգնաւորն Նիսոն, որ

խոհից Մայրագոմեցւոյն: — Յուշ լեցի աստանօր և վասն ժամանակի կաթողիկոսացդ, զի անհամաձայ֊ նութիւն և շփոթութիւն է առ պատմիչս. հնագոյնքն ընդ մէջ Յով֊ սեփայ և Գիւտայ կարգեն զՄելի֊ տէ և զՄովսէս, զոր յետինք ոչ յիշեն:

1. Չիք 'ի Բ. Օ:

և Խաթուլ, թողեալ զամենայն ինչ վասն Քրիստոսի Վարոսիւ Հարազատուն երթեալ կրօնաւորէր 'ի տե֊ ղւոջն՝ որ այժմ աստի սուրբ Խաթուլ :

ՒԹ · Իսկ զկնի վճարման սուրբ Նահատակացն մեր, չարն Վասակ՝ զկինն և զերեսին որդիս Հմայեկայ 'ի դուռն տանէր որպէս զորդիս մահապարտաց. զոր խնդ֊ րեալ Աշուշայի Վրաց բդեշխին 'ի Յազկերտէ, տայ նմա զամանակնունելի պարգևն. որ և աւագն 'ի նոցանէ Վահան՝ սպարապետ եղև Հայոց. քանզի սատակեալ Յազկերտի, Պերոզ որդի նորա սպանեալ զեղբայր իւր՝ թագաւորէ, և հաշտութիւն առնէ աշխարհիս, և զՎահան կացուցանէ հարկահան աշխարհի, և 'ի քուն մտանց ննջեալ՝ տկարանայր 'ի հաւատոցն. և զկնի հարեալ զնա սիրտն իւր զղջանայ, և ապաշխարեալ յարքայէ հարկանէ զզօրսն Պարսից յոլով անգամ : Իսկ Վարազվաղան տիրեալ Սիւնեաց վասն ուրացութեանն, 'ի բազում աւուրս նեղեալ 'ի դիւաց՝ խեղդի անզեղջ : Յորում աւուրս սպանաւ ուրացողն Վազգէն, և այլ բազում ուրացողք ընկալան ատէն զառհաւատչեայ գեհենոյն :

Յետ այսորիկ զօրավարն Պարսից Միհրան գայ բա֊ զում զօրօք 'ի վերայ Վախտանգայ Վրաց արքայի. և յղէ աղաչանս առ Վահան օգնել նմա, և գնաց յօժա֊ րութեամբ. և 'ի խմբել պատերազմին՝ վատ զօրն Վը֊ րաց փախեան Թագաւորաւն հանդերձ, այլ և վատօք 'ի Հայոց, և նահատակեցաւ սուրբն Վասակ եղբայրն Վահանայ, որոյ երեսքն փառաւորեալ փայլէին որպէս զՄովսիսին՝ 'ի ժամ կազմելոյն, յորս ոչ կարէին հայել տեսողքն, և իմացան թէ մեռանելոց է յայնմ աւուր. պսակեցաւ և սուրբ սեպուհն Սիւնեաց Յազդ, յամ֊ սեանն հոռի 'ի վեշտասանն, 'ի գեօղն Բագաւան. զոր ըմբռնեալ Միհրան հարկէր[1] ուրանալ զհաւատն և կեալ մեծութեամբ. և տուեալ ընդդէմ պատասխա֊ նի, մեռանի վասն Քրիստոսի, և պսակի : Նոյնպէս և քաջ ասպետն Սահակ կատարի 'ի ժամ պատերազմին 'ի վերայ սուրբ ուխտին օրհնաց : Զկնի այսորիկ սպա֊ նաւ Պերոզ 'ի Հեփթաղաց եօթն որդւովք. և թա֊

1 · Հին Օ · հարկանէր և հարկէր :

դաւորեցուցին զՎաղարշ եղբայր նորա. և կոչեաց ըզՎահան, և ետ նմա զզօրավարութիւնն Հայոց, և յետ այնորիկ եԹող 'ի նա և զմարզպանութիւնն: Զկնի Վաղարշու՝ նստի Կաւատ որդի նորա. և յետ նորա Խոսրով ամս քառասուն և ութ: Իսկ Վահան շինեաց զեկեղեցին Արտաշատու՝ զաւերեալն 'ի Պարսից:

Յորում ժամանակի երանելին Տեառնթագ յԱրշարունեաց պսակեցաւ 'ի Զանաւուխտայ [1] զօրագըլխէն Պարսից, և այլ եւս բազումք ընդ նմա:

Ն. Իսկ տէր Յոհան կալեալ զաԹոռն ամս վեց. և զկնի նորա տէր Բաբգէն զամս հինգ. և յետ նորա տէր Սամուէլ ամս հինգ. և զկնի նորա տէր Մուշէ ամս ութ. և յետ նորա տէր Սահակ ամս եօԹն. և յետ նորա տէր Քրիստափոր փիլիսոփայ ամս եօԹն: Իսկ Վահանայ բարիոք վախճանեալ, փոխէ զիշխանութիւն նորա եղբայր իւր Վարդ, ամս չորս. զՎահան կէսք քսան ամ, և կէսք երեսուն և մի ասեն կացեալ իշխան: Բայց զտէր Քրիստափոր յաջորդէ տէր Ղեւոնդ ամս երկու. և ապա տէր Ներսէս ամս ինն: Ի ժամանակս նորա առաքեաց Խոսրով Թագաւորն Պարսից հրոսակս, զի կալցեն զՎարդ. և եղև մեծ պատերազմ 'ի դաշտին Խաղամախայ [2], և կոտորեն զզօրսն Պարսից աղօԹիւք սուրբ Հայրապետին Ներսիսի: Նոյն յայն ժամանակս կատարեցաւ սուրբն Յիզտբուզիտ, որ է աստուածապրեցոյց. կատարեցաւ 'ի Դուին՝ 'ի մարզպանէն Վարհամայ. զի զկնի Վարդայ՝ պարսիկք իշխէին մարզպանք. և զմարմին որբոյ վկային ամփոփեալ սուրբ Հայրապետին Ներսիսի առընԹեր կաԹուղիկոսարանին, շինեալ վկայարան կոփածոյ 'ի վերայ նորա:

Ի սոյն աւուրս Աբդաս Բնդեղացի զգաստ Ճարտասանաց բազմացոյց: Զկնի Ներսիսի՝ տէր Յոհաննէս ամս հնգետասան. և յետ նորա տէր Մովսէս Եղիվարդայ ամս երեսուն: Սա 'ի տասներորդ ամի Հայրապետութեանն իւրոյ, և յերեսներորդ առաջներորդ ամին Խոսրովու, որդւոյ Կաւատայ, և 'ի չորեքտասա-

1. Տեառնթագայ նահատակութեան որպէսն անծանօթ է մեզ:

2. Խաղամախ հաւանօրէն է Խողոմխան ըստ Բիւզանդացւոց, 'ի Դ. Հայս, այժմ անծանօթ:

ներքոյն[1] Յուստինիանոսի, որ զսուրբն Սոփի շինեաց, եդիր թուականն Հայոց և տոմար. յորում ժամանակի լցեալ էր շրջանն հնգհարիւր երեսուն և երկուց. և մարզպան Հայոց Մժէժ Գնունի, որ կալաւ զիշխանութիւնն ամս երեսուն և մի: Եւ 'ի դիր թուականին էին Պետրոս եպիսկոպոս քերթողն Սիւնեաց, և Ներշապուհ 'ի Տարօնոյ, և Աբդիշոյ 'ի Մանանայ, զոր եպիսկոպոս ձեռնադրեաց Մովսէս. որ և զԿիւրիոն, որ էր ազգաւ 'ի Վրաց, 'ի գաւառէն Ջաւախաց 'ի գեղջէ Սկուտրի, և գիտէր զդպրութիւն Հայ և Վրացի, ձեռնադրեաց Վրաց կաթուղիկոս, որ եղև յետոյ քաղկեդոնիկ[2]: Քանզի 'ի տղայութեանն գնացեալ էր 'ի Յոյնս, 'ի Կողոնիա գաւառ, և բնակեալ 'ի գեօղն Նիկոպօլիս յեզր Գայլ գետոյ, որ և վարժեցաւ յոյն դպրութեամբ. և յետ հնգետասան ամին, եկն առ Մովսէս 'ի Դուին, և կացոյց զնա վանաց երէց սրբոյ Կաթողիկէին, այլ և քորեպիսկոպոս Արարատեան գաւառին, ամս եօթն. և յորժամ մեռաւ կաթողիկոսն Վրաց, առաքեցին իշխանք աշխարհին առ տէր Մովսէս, ըստ առաջին կարգին, զի տացէ նոցա առաջնորդ, և զնա կամեցաւ տալ որպէս 'ի տանէ իւրմէ. և երթեալ նուաճեաց զամենայն երկիրն. և ապա եկն առ նա խուժիկ մի նեստորական, որ Կիա կոչիւր, այսինքն խառնութիւն, որպէս եղեն, որ էր 'ի Կողոնիոյ, 'ի գեղջէն Զուտառիմայ, մօտ Նիկոպօլսի. որ լեալ էին միմեանց ուսումնակիցք և աղանդակիցք. զնա ձեռնադրէ եպիսկոպոս, և կորնչի նովաւ, և ամենայն աշխարհաւն: Զոր իմացեալ Մովսիսի եպիսկոպոսի՝ որ 'ի Յուրտաւ՝ որ այժմ ասի Գանձէնք, ծանուցանէ պատրիարքին Մովսիսի, և նա գրէ առ նա թուղթ յանդիմանութեան և սպառնալեաց, և նա ընդ ուրանայ յերկեղէ սրբոյն զաղանդն: Եւ զկնի սակաւ ժամանակաց մեռաւ պատրիարքն յերեսներորդ ամի հայրապետութեան իւրոյ, և Կիւրիոն յանհոգս եղեալ ընդունի զժողովն Քաղկեդոնի:

ԼԱ. Իսկ Խոսրով թագաւոր Պարսից մօտ 'ի վախ-

1. Ոչ 'ի չորեքտասաներորդի տեսեալ 'ի հեղինակէ և 'ի համա-
այլ 'ի քսաներորդի չորրորդի ամին: կարծեացն:
2. Յայն սակս և զատափի,

Ճանն հաւատայ 'ի Քրիստոս , և կոչեցեալ առ ինքն զԱյրան կաթողիկոսն՝ զոր տէր Գիւտ էր ձեռնադրեալ հանդերձ այլովք եպիսկոպոսօք , 'ի գնալն իւրում առ Պերոզ արքայ՝ ուր յանդիմանեաց զմոլորութիւնն Պարսից , ցանկալով մահու , մկրտեցաւ յԱյրանայ և հաղորդեցաւ . և զկնի՛ սակաւուց կատարեցաւ , և թաղեցին զնա քրիստոնեայքն յարքունական գերեզմանս : Այլ առ զթագ նորա որդի նորա Որմիզդ . որոյ նենգ գործեալ սպանին զնա յիւրում դահլճի , և առնու ըզթագն որդի նորա Խոսրով . յորոյ վերայ յառնէ Վահրամ գլուխ զօրացն , և առնէ զնա փախստական : Այլ նա գնայ առ Մօրիկ կայսր , և գտեալ 'ի նմանէ օգնութիւն դառնայ և տիրէ հայրենեացն , և լինի երախտահատոյց . թողլով 'ի Մօրիկ զՄիջագետս , և 'ի Հայոց զաշխարհն՝ որ Տանուտերական գունդն կոչի[1] . բայց յոստանէն Դւնայ , և յերկուց գաւառացն՝ որ է Ոստն Մասեաց և կողմն Արագածու , թողու 'ի Մօրիկ 'ի լեռնէն որ կոչի Նծաքիսար , մինչև ցԱռեսան աւան և ցՀացիւնս : Որ յանդգնեալ զեղեալ անուանեն յԱրայէն[2] փոխէ . զԱրմինն կոչեցեալ 'ի նմանէ՝ որ է Առաջին Հայք՝ Երկրորդ Հայք զնա կոչէ , յորում մայրաքաղաքն Սեբաստ . և զԿապադովկիա , յորում մայրաքաղաքն Կեսարիա՝ Երրորդ կոչէ Հայք , և առնէ զնա եպարքի . և զՄելտենի՝ որ ունի զհռոմանուն գաւառն իւր , կոչէ զնա Առաջին Հայք . և զՊոնտոս , յորում մայրաքաղաքն Տրապիզոն , Մեծ մասն Հայոց կոչէ զնա . և զՉորրորդ Հայք , յորում մայրաքաղաքն Նփրկերտ որ ասեն Մուփարկին , Յուստինիանուպոլիս գրէ զնա 'ի դիւան արքունի . և զաշխարհն Կարնոյ՝ յորում քաղաքն Թէոդուպօլիս՝ Մեծ մասն Հայոց կոչէ . և որ 'ի Մեծ Հայոց մասն էր առ նոսա , 'ի կողմանց Դատենոյ մինչև ցսահմանս Ատրպատականի , Մեծ Հայք անուանէ . և զկողմանս Տայոց սահմանօքն իւրովք՝ Խորագոյն Հայք կոչէ . և զկողմն Դւնայ՝ Ներքսագոյն Հայք կոչէ : Զայս անուանս գրէ 'ի դիւանի :

Յորում աւուր Աշխատ Նազարատանի քաղաքէս խանարհեցուցանէ ընդ ոտիւք Խոսրովու զամենայն Թշնա-

1. Տանուտերական երկիր՝ կողմն գաւառակողմն խնամի : Նախիջևանայ է , այլ տասանօք ըն.

2. Պարտ է ասել յԱրայոյ :

միս նորա . և նորա պատուաւորեալ նմա տայ զմարզպանութիւնն Վրկան աշխարհի, ուր երթեալ գտանէ ազգս Հայոց գերեալ, և բնակեալ 'ի Թուրքաստան անապատին մեծի՝ որ Սագաստանն կոչի, մոռացեալ զլեզու և զդպրութիւն . որք տեսեալ զՍմբատ խրախ լինէին, և նորոգէին զլեզու և զգիր . և զերեց մի նոցա Հաբէլ անուն՝ տայ եպիսկոպոս ձեռնադրել մեծի հայրապետին Մովսիսի . հաստատէ զնոսա միջնակ որդոյն Գրիգորի, և առեալ հրաման յարքայէ՝ գայ տեսանել զերկիր իւր ։ Այլ եկեալ 'ի Դուին՝ սկսաւ շինել զփայտաշէն սուրբ Գրիգորն 'ի Վարդանայ որդւոյ . և պահհնակ բերդին բողոքէ 'ի դուռն, թէ միաբանակար է բերդիս . և ելանէ հրաման քակել զբերդն, և հեռագոյն շինել . և խնդացեալ Սմբատ 'ի փառս Քրիստոսի, շինէ զեկեղեցին կոփածոյ վիմօք, և տայ ձեռնադրել պատրիարգ զտէր Աբրահամ զեպիսկոպոսն Ռշտունեաց, որ շատ ջանացեալ թղթով 'ի ձեռն Պետրոսի՝ ոչ կարաց դարձուցանել զՎիրիոն յուղղափառութիւն(!). վասն որոյ արարեալ ժողով 'ի Դուին, անիծին զՎիւրիոն հերետիոսեայ (!) ։ Այլ Մօրիկ կացոյց յիւր. կողմանն կաթողիկոս զՅոհան որ նստէր 'ի գեօղն Աւան[1], շինեալ անդ եկեղեցի, այր սուրբ, և ընտրեալ յամենեցունց[2] ։

ԼԲ . Յայնմ ժամանակի նախարարքն Մօրկայ սպանին զնա, և եդին թագաւոր զՓոկաս, որ և եկեալ 'ի Ռասեն՝[3] ջանայր նուաճել զՀայս . և ընդ առաջ երթեալ Սմբատ, հարկանէ անչափ կոտորմամբ հրամանաւ Խոսրովու, և առնու զԿարնոյ քաղաք, և փոխէ զբնակիչսն յԱհմատան, տարեալ զՅոհան կաթողիկոս զկնի, որ կայր 'ի գաղթի անդ . որ և անդէն վախճանեալ, բերաւ դին 'ի գեօղն Աւան, որ կալաւ զկաթողիկոսութիւնն ամս քսան և վեց . և սուրբ պատրիարգն Աբրահամ փոխի զկնի քսան և երեք ամի

1 . Աւան գիւղ Կոտայից 'ի կողմն Երեւանու ։ — Տարակուսական են ժամանակք կաթուղիկոսութեան Յովհաննու և Աբրահամու, ըստ այլակարծի գրութեան պատմչաց ։

2 . Այսպէս 'ի բնագրին . իսկ միւսն կամակորէ . Այլ սուրբ, և Բնաւ չխոտորեալ յաղանդն Յունաց ։

3 . Թերևս մի 'ի զօրավարաց կայսերն՝ որ տայր մարտ ընդ Պարսից, հանդիպեալ լիցէ 'ի Ռասեն, այլ ոչ ինքն Փոկաս ։

աթոռակալութեանն. և յաջորդէ զնա տէր Կոմիտաս, 'ի գեղջէ Աղցից:

Իսկ յիշխանաց կարգի զկնի Մժեժայ պատրիկք կացին. նախ Դրենշապուհ, որ զչնմոլութիւնն շատացոյց, և յետ նորա Վարազդատ ոմն, և ապա Մուրէն ազգական Խոսրովու, որ չնայր ընդ կանայս իշխանացն. ընդ որ զայրացեալ Վարդանայ՝ որդւոյ Վասակայ Մամիկոնենոյ՝ սպան զնա, և առեալ զընտանիս իւր գնաց 'ի Կոստանդնուպօլիս: Բայց Հերակլ սպանեալ զՓոկկաս, թագաւորեցուցանէ զորդի իւր, և ինքն խաղաց յարևելս. և Խոռեմ աւերէ զՅոյնս հրամանաւ Խոսրովու, քննախնդիր մահուանն Մօրկայ, և գերէ զԵրուսաղէմ և զփայտն փրկական, և զԶաքարիա պատրիարգն Երուսաղէմի: Յայնմ ժամանակի պատրիարգն Կոմիտաս ընդարձակէ զվկայարան սրբոց Հռիփսիմեանցն, և պատահէ սուրբ նշխարաց նոցա. և լինի ոչ սակաւ մխիթարութիւն քրիստոնէից, և էր կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի, և սրբոյն Սահակայ, զոր ոչ իշխեաց բանալ, այլ և զիւրն եդ 'ի վերայ. և չափ հասակին Հռիփսիմեայ՝ տասն թիզ և չորս մատն, և զսուրբն Գրիգոր ասեն ինն թիզ, և զՏրդատ՝ մետասան թիզ:

ԼԳ. Առաքեաց Հերակլ դեսպանս պատարագօք առ Խոսրով խնդրել զխաղաղութիւն, որում ոչ ետ պատասխանի. և բարկացեալ Հերակլի, առնու ընդ իւր զեղբայր իւր զԹէոդոս, երկիցս հարկանէ զզօրսն Պարսից առ Նինուէաւ, և երթայ ընդ Հայս 'ի վերայ Խոսրովու. և զնա ոժառեալ[1] Կաւատայ որդւոյ առաջնոյ Խոսրովու, սպանանէ զԽոսրով, և խնդրեալ սէր 'ի Հերակլէ՝ թողու 'ի նա զՄիջագետս. և դառնայ Հերակլ և գայ 'ի Կարնոյ քաղաք: Յորում յաւուրս յաջորդեալ էր զսուրբ աթոռն Կոմիտասայ տէր Քրիստափոր, և հանեալ զնա զի առնէր խռովութիւն 'ի մէջ իշխանացն, դնեն զԵզր Նիգացի, զոր կոչեաց թագաւորն 'ի Կարնոյ քաղաք, որ վասն տգիտութեանն[2] իւրոյ քաղկեդոնիկ եղև, առեալ զՄզզք,

1. Այսպէս յՕՕ:
2. Գէթ յայսմ մասին գիտնագոյն գտաւ քան զՀեղինակդ:

և զերրորդ մասն Կողբայ[1] զգին հաւատոյն։ Եւ 'ի դառնալ նորա կշտամբեաց զնա Յոհան[2] վարդապետ կաթուղիկոսարանին, ասելով. Յիրաւի Եզր կոչեցար, զի յեզր ելեր յուղղափառութենէ. և ինքն չոգաւ յԱղուանս, 'ի գլուխ Գարդմանն գաւառի, և ճգնեցաւ խիստ վարուք։ Սա գրեաց երիս գիրս, զանուն իւր չդնելով 'ի նոսա. զմինն կոչեաց Խրատատուարք, զմինն Հաւատարմատ, և զմինն Լուսեմակ։ Եւ սորա աշակերտ մի Սարգիս անուն, որ զՍաբելին ախտանայր. զոր հալածեալ մերժեաց յինքենէ։ Յաւուրս յայսոսիկ մեռանի Կաւատ արքայ, և թագաւորէ տղայ որդի նորա Արտաշիր. և լուեալ Հերակլ, յորդորէ զԽոռեմ՝ առնուլ զթագն, սպանանելով զտղայն։ Զոր և արար իսկ. և ետ զխաչն սուրբ 'ի Հերակլ։ Եւ ըսպանեալ զօրացն զԽոռեմ՝ տան զթագն 'ի Բորն դստերն Խոսրովու, և զկնի նորա 'ի Զամիհիկ քոյր նորա. և յետ նորա, զՈրմիզդ թոռն Խոսրովու, զոր խեղդամահ արարին, և եդին զՅազկերտ թոռն Խոսրովու[3]։

Իսկ Հերակլ զխաչն տարեալ յԵրուսաղէմ, կանգնէ 'ի տեղւոջ իւրում. յորում ժամանակի կարգէ զօրավար Հայոց զՄժէժ, զոր սպանեալ Դաւիթ Սահառունի, ինքն լինի իշխան հրամանաւ Հերակլի, զամս երեք, որ շինեաց զեկեղեցին Մրենոյ[4]. և ապա անարգեալ յիշխանացն հալածեցաւ. և անկաւ շփոթ մեծ 'ի Հայս, զմիմեամբք ելանելով. յորում աւուրս ընդարձակեաց Եզր զվկայարան սրբոյն Գայիանեայ. և տէր Քրիստափոր շինեաց միայնարան 'ի յոտն Մասեաց, և առաքինանայր բազում ջանացող աղօթիւք, երեքհարիւր խարազնազգեստ արամբք։ Յորում աւուր ժողովեալ յԵդեսիա երկոտասան հազար Հրեայ՝ ապստամբեցին 'ի Հերակլեայ, և նա երթեալ պաշարեաց զՈւռհա, և առ զնա և արձակեաց զՀրեայսն կենդանի, յն և կամեցին երթեցեն, ոչ կա-

1. Իմա զմասն աղահանից տեղեացն։

2. Մայրագոմեցին մոլորեալ։

3. Ի կարգի թագաւորացս պակասեն և այլք։ Բոր է Բորոր կամ Բերոր, որ և Բորանդուխտ. իսկ Զամիհիկն՝ Ազերմիդուխտ։

4. Մրեն 'ի Շիրակ գաւառի. կիսաւերանդուն կայ ցարդ եկեղեցին այն։

սելով Թէոդորոսի եղբօրն՝ որ կամեցաւ սատակել զնոսա ։ Այլ գնացեալ անտի ընդ անապատ չոգան 'ի Տաճկաստան առ որդիսն Իսմայելի, որպէս առ ազգայինս, և կոչէին յօգնութիւն. և կէսք ախորժէին, և ոմանք ոչ, վասն այլ և այլ աղանդոյ նոցա, որպէս երբեմն Եգիպտացւոցն, ըստ զանազան պաշտամանց նոցա ։

ԼԴ. Յայնժամ ապա այր մի յորդւոցն Իսմայելի, որում անուն էր Մահամէթ Թանգար, որ էր ծնեալ 'ի քաղաքին Մադինա[1], մերձ 'ի Մաքա երկօրեայ ճանապարհաւ, յազգէն՝ որ կոչի Կորէշ[2], որդի Աբդլայ, որ մեռաւ որբ թողեալ զնա. որ և յարեցաւ 'ի վաճառական մի, և եղև 'ի տան նորա յառաջադէմ. մեռաւ վաճառականն և տիրացաւ տան տեառն իւրոյ, առեալ զկին նորա. և երթայր ուղտօք յԵգիպտոս, և պատահեաց նմա միայնակեաց մի Սարգիս անուն յաղանդոյն Արիոսի և Կերինթոսի, որ և ուսոյց նմա 'ի հին մատենիցն զԱստուած, և զգիրս տղայութեան Տեառն մերոյ. և 'ի դառնալն 'ի տուն քարոզեաց զոր լուաւն. և հաւանեցին զնա ազգն իւր. և եկն յանապատն Փառանու[3]. և յորժամ եկին երկոտասան հազար Հրեայքն, առեալ պատճառս 'ի նոցանէ, քարոզեաց որդւոցն Իսմայելի զԱստուածն Աբրահամու, և եղև երաշխաւոր նոցա, որ թէ պաշտեն զնա՝ ժառանգեն զերկիրն զոր ետ Աստուած Աբրահամու ։

Այս լուան նմա, և ժողովեցան յԱրաբիայ մինչև ցՍուր[4], որ է հանդէպ Եգիպտոսի, և զերկոտասան հազարսն ըստ ցեղիցն Իսրայելի երկոտասանից նահապետացն, հազար հազար արկին յինքեանս, և եդեն երկոտասան բաժինս, ազգապետ դնելով ինքեանց, յորոց անուն կոչեցան իսկ՝ Նաբէովթ, Կեդար, Աբդլա, Մասամ, Մասմա, Իդումա, Մասէ, Քոդդադ, Թեման, Յետուր, Նաբէս, Կեդմա ։ Այս գնացին բանակս բանակս յանապատէն Փառանու ցՍաբովթ Մովաբու[5], և անցին յայնկոյս Յորդանանու 'ի

1. Մադինա որ յառաջն Ցադրիպ կոչէր՝ է Մէտինէ ։
2. Քորէշ՝ Քուրէյիշ قريش ։
3. Փառանու անապատն ընդ մէջ Սինեայ և Հրէաստանի է ։
4. Սուր անապատ ընդ մէջ Պաղեստինեայ, Ապառաժն Արաբիոյ, Կարմիր ծովու և Եգիպտոսի ։
5. Ռաբովթ Մովաբու մայրաքաղաք Մովաբացւոց յարենելեան

վրձանքն Մուքինի ։ Այլ զօրն Յունաց էր յԱրաբիա ․ հարկին զնոսա, և փախեաւ Թէոդորոս եղբայր կայսերն մազապուրծ ։ Այլ դարձան ինքեանք յԱրաբիա, բնակեցան ըստ ցեղից ցեղից, և ժողովեցան առ նոսա ամենայն մնացեալքն յորդւոցն Իսրայելի, և եղեն զօր մեծ ։ Այլ յղեն բանս առ կայսր, Թողուլ զերկիրն զոր ետ Աստուած Աբրահամու ․ և արար նոցա ընդդէմ պատասխանի, և գումարեաց զօրս եօթանասուն հազար 'ի ձեռն ներքինւոյ մի հաւատարմի, և պատուիրեաց երթալ յԱրաբիա 'ի վերայ Իսմայելի, ուր և սատակեցան իսկ ․ և լցան մեծութեամբ բանակքն Մահմետի ։

Այլ էր Թիւս մեր վաթսուն և եօթն[1] ․ և զի յաջողեաց նոցա խրատն Մահմետի, խնդրեն 'ի նմանէ օրէնս, և նա գտեալ մեհենից օձիցն՝ զոր պաշտէին, կոչեաց Ալ-քայութա[2], որ է դուռն Աստուծոյ ․ և կոչեաց զընակութիւն քաղաքին իւրոյ՝ տուն Աբրահամու ։ Այլ քանզի 'ի զօրանալ քրիստոնէութեանն, ըղկուռս Դամասկոսի, զՌեմմոնա[3], որ նա ինքն է Հեփեստոս կաղ, տարեալ ընկեցին յանապատ, զոր գտեալ Տաճիկք տարան 'ի մեհեանս օձիցն, և քուրմք օձիցն ոչ կամեցան անդ դնել, այլ հանեալ արտաքոյ արարին տեղի միոյ ոտից 'ի վերայ վիմի, և անդ եդին ․ զոր գողացան եթէովպացի վաճառականք վասն ոսկւոյն, զոր ձուլեցին Իսմայելացիքն ․ և եղև պատերազմ սաստիկ 'ի մէջ երկուց ազգացն, մինչև մռռացան ։ Յայնմանէ ասաց, թէ Աբրահամու ոտնահետն է, յորժամ եկն տեսանել զԻսմայէլ զորդի իւր ․ և քանզի յորս էր Իսմայէլ, հարցանէ ցկին նորա թէ Ո՞ւր է այր քո ․ և նա ասէ ․ Գնա՛, աղձատեալ ալևոր ․ և ասէ Աբրահամ․ Յորժամ գայ 'ի տուն, ասա ցայրն քո, փոխեա՛ զդուռն տանդ քո ։ Իսկ յորժամ եկն Իսմայէլ և էառ զհոտ հօրն,

ափն Մեռեալ ծովու, ուր ցարդ նշմարին աւերակք նորին սակաւք ։

1 ․ Բ․ Օ․ վաթսուն և հինգ․ 616 ամ Տեառն, որ յառաջէ վեց ամօք քան զփախուստն և զնշխարանացն Մահմետի, յորմէ Թուականին նորա սկիզբն, 'ի 15 յուլեայ 622 ամին ։

2 ․ Էլ-Քեապա الكعبا ։

3 ․ Ռեմանայ Դիք որ 'ի Ս․ Գիրս յիշին՝ յոմանց արեգակն համարին, յայլոց Աստղիկ, և 'ի բազմաց անծանօթ ․ վասն որոյ կարծիս հեղինակիդ նշանակելի է առ հնախոյզս ։ Իսկ պատմութիւնք ոչ գիտեմ քանի՛ հաւատալիս ունիցի ։

եհարց ցկինն. և նա ասաց զոր լուաւն. և խնդրեալ Իս֊ մայելի՝ եհան զկինն, և այլ էառ մինչև ցեօթներորդ կինն, որ մաղթեաց զԱբրահամ իջանել յիշէն, և օծցէ զոտսն. և իջոյց ասէ զմի ոտն, և եդ 'ի վերայ վիմին, և տեղի եւս վէմն ոտիցն. և զմի ոտնն ոչ իջոյց 'ի գրաստէն. զի երդումն տուեալ էր Սառայի՝ թէ մի իջանել, երկուցեալ թէ լինի ընդ Հագարու: Օ այս առաս..եաց Մահմէտ: Նաև հրամայեաց յամենայն կողմանց անդ առնել զերկրպագութիւնն, և զվիմին ասաց շուրջ գալ միտանի, և ասել Լապպէք, լապպէք. և որպէս թէ պատասխանի ումեք առնել, Է՛յ այ, աւա՛ս աւա՛ս[1]. և անցեալ 'ի ձորն անապատն սպանանեն, և ե֊ լեալ 'ի գրաստ փախչին մինչև 'ի բլուրն Մաքայ, և թէ 'ի փախչելն հանդերձ անկանի կամ զուլամբի, ոչ ոք իշխէ յետս հայել. և 'ի մէջ երկուց վիմացն ընթա֊ նալով, զոր կոչեն Սաֆա և Մարուա, վիմէ 'ի վէմ եր֊ թան եօթն անգամ անհանգիստ և քարինս ձգեն. և Մահմէտ ասէ այսպէս արար և ուսոյց: Նայլ միտանի վազելն՝ վասն ոտնահետին է, և 'ի ձորն անապատն կո֊ տորեն և փախչելն, ասեն թէ զոհ արար Մահմէտ . . . . . . . . . . . ., զի տեսիլս ցուցցեն նմա, և երե֊ ւեալ նմա՝ փախեաւ: Նաև յերկու վիմամիջին շրջելն և քար ձգելն, լեալ են վէմք նոցա պաշտելիք, նախ քան ըղ֊ կուռսն, և 'ի պաշտելն Մահմետի ըստ սովորութեանն, շուն կատաղի եղ ընդդէմ նորա, և նա ձգեաց նմա քա֊ րինս. և զնոյն հրամայեաց առնել: Նաև օձք և սողունք՝ զի ոչ սպանանեն, զի պաշտելիք լեալ են նոցա, և շուն կոտորելն այն է, որ ասեն թէ 'ի մեռանելն Մահմե֊ տի չկամեցան թաղել, այլ ունելով թէ յառնէ երեք֊ օրեայ, . . . . . . . . . . . . . . . .
և յորժամ իմացան՝ կոտորեցին զշունսն, և 'ի նոյն ամ֊ սեան հրամայեցին զնոյն առնել: Նա ուսոյց ասել մի է Աստուած, և ոչ ոք է նմա ընկեր, և Մահմէտ ծա֊ ռայ նորա: Նաև որ ամէն հրէի միոյ բանիւ, թէ մար֊ գարէքն խօսեցան որպէս վասն Քրիստոսի՝ և վասն Մահմետայ, զայն ասեն որ Եսայի տեսանէր երկու

1. Լէպպէյք Լէպպէյք, էյ ֆէյեազ, لبيك لبيك اى فياض, Հրամայեա՛ հրամայեա ով Աստուած:

վիճակն Ռուբինի։ Այլ զօրն Յունաց էր յԱրաբիա. հարին զնոսա, և փախեաւ Թէոդորոս եղբայր կայսերն մազապուրծ։ Այլ դարձան ինքեանք յԱրաբիա, բնակեցան ըստ ցեղից ցեղից, և ժողովեցան առ նոսա ամենայն մնացեալքն յորդւոցն Իսմայելի, և եղեն զօր մեծ։ Այլ յղեն բանս առ կայսր, Թողուլ զերկիրն զոր ետ Աստուած Աբրահամու. և արար նոցա ընդդէմ պատասխանի, և գումարեաց զօրս եօթանասուն հազար 'ի ձեռն ներքինւոյ մի հաւատարմի, և պատուիրեաց երթալ յԱրաբիա 'ի վերայ Իսմայելի, ուր և սատակեցան իսկ. և լցան մեծութեամբ բանակքն Մահմեդի։

Այլ էր Թիւս մեր վաթսուն և եօթն[1]. և զի յաջողեաց նոցա խորամն Մահմեդի, խնդրեն 'ի նմանէ օրէնս, և նա զտեղի մեհենից օձիցն՝ զոր պաշտէին, կոչեաց Ալ-քայուբա[2], որ է դուռն Աստուծոյ. և կոչեաց զբնակութիւն քաղաքին իւրոյ՝ տուն Աբրահամու։ Այլ քանզի 'ի զօրանալ քրիստոնէութեանն, զկուռս Դամասկոսի, զՌեմանա[3], որ նա ինքն է Հեփեստոս կաղ, տարեալ ընկեցին յանապատ, զոր կրեալ Տաճիկք տարան 'ի մեհեանս օձիցն, և քուրմք օձիցն ոչ կամեցան անդ դնել, այլ հանեալ արտաքոյ արարին տեղի միոյ ոտից 'ի վերայ վիմի, և անդ եդին. զոր գողացան եթէովպացի վաճառականք վասն ոսկւոյն, զոր ձուլեցին Իսմայելացիքն. և եղև պատերազմ սաստիկ 'ի մէջ երկուց ազգացն, մինչև մեռացան։ Զայնմանէ ասաց, թէ Աբրահամու ոտնահետն է, յորժամ եկն տեսանել զԻսմայէլ զորդի իւր. և քանզի յորս էր Իսմայէլ, հարցանէ ցկին նորա թէ Ո՞ւր է այր քո. և նա ասէ. Գնաց, աղձատեալ ալևոր. և ասէ Աբրահամ. Յորժամ գայ 'ի տուն, ասա ցայրն քո, փոխեա՛ զդուռն տան քո։ Իսկ յորժամ եկն Իսմայէլ և էառ զհետ հօրն,

ափն Մեռեալ ծովու, ուր ցարդ նշմարին աւերակք նորին սակաւք։

1. Բ. Օ. վաթսուն և հինգ. 616 ամ Տեառն, որ յառաջ է վեց ամօք քան զփախուստն և զիշխանանալն Մահմէտի, յորմէ Թուականին նորա սկիզբն, 'ի 15 յուլեայ 622 ամին։

2. Էլ-Քէապէ الكعبا ։

3. Ռեմանայ Դիք որ 'ի Ս. Գիրս յիշին՝ յոմանց արեգական համարին, յայլոց Աստղիկ, և 'ի բազմաց անծանօթ. վասն որոյ կարծիս հեղինակիս նշանակելի է առ հնախոյզս։ Իսկ պատմութիւնք ոչ դիտեմ քանի՞ հաւաստիս ունիցի։

եհարց ցկինն. և նա ասաց զոր լուաւ. և խնդացեալ Մա-մայելի՝ եհան զկինն, և այլ եւս մինչև ցեօթներորդ կինն, որ մաղթեաց զԱբրահամ իջանել յիշէն, և օծցէ զոտսն. և իջոյց ասէ զմի ոտն, և եդ ՚ի վերայ վիմին, և տեղի եւս վէմն ոտիցն. և զմի ոտնն ոչ իջոյց ՚ի գրաստէն. զի երդուեալ տուեալ էր Սառայի՝ թէ մի իջաներ, երկուցեալ թէ լինի ընդ Հագարու: Զայս տուաւ...եաց Սահմէտ: Իսկ հրամայեաց յամենայն կողմանց անդ առնել զերկրպագութիւնն, և զվիմնին ասաց շուրջ գալ միոտանի, և ասել Լաբբէք, լաբբէք. և որպէս թէ պատասխանի ումեք առնել, Այ այ, ասա՛ս ասա՛ս[1]. և անցեալ ՚ի ձորն անապատն ապառնանեն, և ելեալ ՚ի գրաստ փախչին մինչև ՚ի բլուրն Սաքայ, և թէ ՚ի փախչելն հանդերձ անկանի կամ զուլամքի, ոչ ոք իշխէ յետս հայել. և ՚ի մէջ երկուց վիմացն ընթանալով, զոր կոչեն Սաֆա և Մարվա, վիմէ ՚ի վէմ երթան եօթն անգամ անհանգիստ և քարինս ձգեն. և Սահմէտ ասէն այսպէս արար և ուսոյց: Բայլ միոտանի վազելն՝ վասն ոտնահետին է, և ՚ի ձորն անապատն կոտորելն և փախչելն, ասեն թէ զոհ արար Սահմէտ.. . . . . . . . . . . ., զի տեսիլս ցուցցեն նմա, և երեւեալ նմա՝ փախեաւ: Իսկ յերկու վիմանցն շրջելն և քար ձգելն, լեալ են վէմք նոցա պաշտելիք, նախ քան ըզ-կուռսն, և ՚ի պաշտելն Սահմետի ըստ սովորութեանն, շուն կատաղի եւլ ընդդէմ նորա, և նա ձգեաց նմա քարինս. և զնոյն հրամայեաց առնել: Իսկ օձք և տողունք՝ զի ոչ սպանանին, զի պաշտելիք լեալ են նոցա, և շուն կոտորելն այն է, որ ասեն թէ ՚ի մեռանելն Սահմետի չկամեցան թաղել, այլ ունելով թէ յառնէ երեքօրեայ, . . . . . . . . . . . . . . .
և յորժամ իմացան՝ կոտորեցին զշունսն, և ՚ի նոյն ամսեան հրամայեցին զնոյն առնել: Նա ուսոյց ասել մի է Աստուած, և ոչ ոք է նմա ընկեր, և Սահմէտ ծառայ նորա: Իսկ որ ասէն հրէի միոյ բանիւ, թէ մարգարէքն խօսեցան որպէս վասն Քրիստոսի՝ և վասն Սահմետայ, զայն ասեն որ Իսայի տեսանէր երկու

1. Լէպպէյք Լէպպէյք, էյ ֆէյյէ..., لبيك لبيك اى فياض, հրամայեա հրամայեա ով Աստուած:

տուեալն իւրոյ. և առնու զաթոռն Զաքարիաս 'ի գեղջէ Ձագայ։ Իսկ Բուղայի կալեալ զիշխանն Սիսական զՎասակ և զեղբայր նորա զԱշոտ, և զմեծ իշխանն Ատրներսեհ 'ի գաւառէն Խաչենոյ, և զիշխանն Գարդմանայ զԿուտրիճն, և յՈւտի երթեալ՝ ըմբռնէ զՍտեփանոս Կոնն, որ 'ի նախնոյն իւրմէ Սեւկոյ՝ Սեւորդիք ազգն անուանեին, և զիշխանն Աղուանից զԵսայի. զամենեսեան խաղացուցեալ տանի առ ամիրապետն. կոչելով զկնի և զսպարապետն Սմբատ խաբէութեամբ, զոր իբրև չոգաւ՝ ընդ կապեալսն խառնէին, և պահանջէին ուրացութիւն. զոր ոչ կամաւ յանձնին քաջ խոստովանողն Սմբատ, այլ անձնէն 'ի բանտին կատարի 'ի Սամառա, և թաղի 'ի գերեզմանի Դանիէլի մարգարէի. և զպատիւ նորա առնու Աշոտ որդի նորա։ Սակայն և Ստեփանոս բազում տանջանօք 'ի նմին տեղւոջ, Կոնն կոչեցեալ։ Իսկ Գրիգոր Մամիկոնեան որ խաբար ապահեալ զհաւատն եղանէ 'ի բանտէն, և գայ մնանէ 'ի գաւառն իւր Բագրևանդ, և կամէր ամրանալ 'ի գաւառն Դարբեղինից 'ի Դարանածակոն. որ և զկնի եօթն աւուրց մեռանի։ Իսկ իմացեալ ոստիկանին Մահմետի որ 'ի Հայս, առաքէ առ Աշոտ որդի Սմբատայ, զի ուր և իցէ ըմբռնեալ առնա տարցի, և նորա հասեալ զգլուխ մեռելոյն առաքէ առ նա, ասելով թէ Կամեցաւ անցանել առ Յոյնս, և իմ զկնի առաքեալ սպանի, և ահա գլուխ նորա։ Իսկ խնդաց Մահմէտ, և զգացուցանէ Ջաֆրի[1], և նորին հրամանաւ պատուէ զԱշոտ, տալով նմա զգաւառն Բագրևանդ, և արծաթ բիւրս հինգ. և յայնմհետէ բարձաւ 'ի Հայոց յաշխարհէս ազգն Մամիկոնէից։

ԽԴ. Բայց ասելի է աստ զսկիզբն թագաւորացն Հայոց և Վրաց, որք 'ի Բագրատունեաց անտի սերեցան։ — Քանզի որպէս ասացաւ՝ զկնի քաջին Աշոտանայ իշխանք Հայոց կացին ըստ դիպելոյ, մինչև 'ի Սըմբատ Բագրատունի, և զկնի նորա Աշոտ, որդի Սասակայ, զոր կուրացուցին Մամիկոնեանքն. սմա լինէին երկու որդիք, Սմբատ՝ նախնի թագաւորացն Հայոց, և

1. Ամիրապետս Ջաֆր կոչեցեալ թուի լինել Մոթավաքէլ (յամս 847-861), կամ մի 'ի յաջորդաց նորա՝ որք ոչ ճանաչէին յայլոց Ջաֆր անուանմբ։

քառասուն և եօթն[1] ամի յերկրորդ ամի Թէոդոսի փոքու՝ եղև ժողովն երրորդ, և պատրիարգքն այս էին. Կեղեստինոս՝ Հռոմայ, Կիւրղոս՝ Աղեքսանդրի, Յոհան՝ Անտիոքու, Յոբնաղ՝ Երուսաղէմի. և Թուղթ Սահակայ Հայոց: Զհետ որոյ երևեցաւ Եւտիքէս շամանդրիտ՝[2] Կոստանդնուպօլսի, որ չփոթմամբ մի բը-նութիւն ասէր Քրիստոսի. զոր հալածեաց Փլաբիա-նոս պատրիարգն, և նա աղաչեաց զներքինապետ ոմն Սա-կևան կոչեցեալ գրել առ Դիոսկորոս, տալ հրաման ընդունել զնա, զոր և արար. բայց յետոյ զղջացաւ և ա-րար կրկին ժողով յԵփեսոս, քան և երկու ամօք զկնի Կիւրղին, և անդ աքսորեաց զՓլաբիանոս, և խոտեաց զԹուղթն Լևոնի, և ելոյծ զԴոմնոս Անտիոքու. վասն որոյ կայ գիր մեղադրանաց առ Թէոդոս, և հրաման զի ժողով արարեալ վերստին տեսցեն. և նա կատարեալ 'ի Տէր, արար Մարկիանոս յետ չորեքհարիւր վաթ-սուն և երկու ամաց յարութեանն Քրիստոսի, զկնի հնգետասան ամի[3] ննջմանն Սահակայ սրբոյ. յորում ամի կատարեցան սուրբ Վարդանանքն, 'ի պատրիար-գութեանն Յոհաննու Մանդակունւոյ, որ չէր պա-րապ գալ 'ի ժողովն: Նա աքսորեաց զԴիոսկորոս 'ի ժո-ղովն. և զՊետրոս յԱնտիոքայ և զԱնատօլիս եղբայր Դիոսկորեայ, նախ 'ի Կիլիկան, ապա յԱնգակլիա, և ա-պա 'ի Պամփլագոնիա: Մարկիանոս մեռեալ զկնի վեց ամի, առնու Լևոն զԹագն ամս իննն և տասն, յորմէ աքսորեցաւ Տիմոթէոս 'ի Քերսոն: Լևոն փոքր՝ ամս հինգ. Զենոն ամս վեշտասան. սա Եբարձ զազմուկ ժողովոյն Քաղկեդոնի, բայց Հռոմ պահեաց..: Անա-տաս, ամս քսան և եօթն, որ եկաց 'ի նմին բարեպաշ-տութեան[4], և դարձոյց զՏիմոթէոս յԱղեքսանդր: Յուստիանոս՝ ամս իննն. սա դարձեալ նորոգեաց զա-ղանդ ժողովոյն (!). Յուստիանոս՝ ամս երեսուն և երեք. Յուստինոս՝ ամս իննն: Սա կամեցաւ հաստատել զուղ-

1. Զկնի 50 ամի. այն է 431 ամին:

2. Այսինքն Արշիմանդրիտ, տաճարերէց:

3. Սխալմամբ են Թուականքդ նշանակեալք. Ս. Սահակ ննջեաց յամի 439. ժողովն Քաղկեդոնի գումարեցաւ յամի 451, յորում և նահատակութիւն Վարդանանց:

4. Բարեպաշտութիւն ասէ և ուղղափառութիւն Յուստինեան ըստ մտաց հեղինակին:

ղափառութիւնն, և դաւով խեղդեցաւ։ Տիբեր՝ ամս եօթն. առ սովաւ եղև ժողով 'ի Կոստանդնուպօլիս [1], և Հայք ոչ ընկալան։ Մօրիկ՝ ամս քսան և երեք. Փոկաս՝ ամս ութ. Հերակլ՝ ամս երեսուն և հինգ. Կոստանդին՝ ամս երեք. Կոստանդին Թոռն Հերակլի՝ ամս քսան և ինն. առ որով Մարտինոս արարեալ ժողով 'ի Հռոմ, և երկու կամս և երկու ներգործութիւնս ասաց Քրիստոսի։ Կոստանդին՝ ամս երեքտասան. առ սովաւ Ագաթոն արար ժողով և զՄարտինոսին հաստատեաց։ Յուստինիանոս՝ ամս երկու. Լևոն՝ ամս երեք. Ապսիմարոս՝ ամս եօթն. Յուստինիանոս՝ ամս եօթն. Փիլիպպոս Վարդան՝ ամս երկու. Արտեմիոս՝ ամս երկու. Թէոդոս՝ ամս երկու. Լևոն՝ ամս եօթն. Կոստանդին՝ ամս հընգետասան. Լևոն՝ ամս հինգ. Նիկեփոր՝ ամս վեց. Ստաւրակոս՝ ամ մի. Միքայէլ՝ ամ մի. Լևոն Հայ՝ ամս տասն. Միքայէլ՝ ամ մի. Թէոփիլոս՝ ամ մի. Միքայէլ՝ ամս երկու. Վասիլ, առ որով Փոտ որ զԹուղթըն գրեաց, և ասաց թէ չկայր հակառակութիւն մինչ 'ի վերջին Ներսէս, առ որով եղաւ Թուականն Հայոց, զամն հարիւր և չորս. որ նա ապա արար ժողով 'ի Դուին 'ի ձեռն Ներգիսոյ Ասորւոյ, որ եկեալ էր 'ի Սասնոյ. և զՓիլաքսինոսի եպիսկոպոսի Մաբուկ քաղաքի և զՏիմոթէի Կզուն գրեանն թարգմանեցին. և 'ի վեշտասան թուին սպան հեռն Վարդան զՍուրէն մարզպան Պարսից, և ինքն ընտանեօք եկն առ Յուստինիանոս յերեսներորդ ամի թագաւորութեան նորա, և 'ի տօնի խաչավերացին չհաղորդեցաւ ընդ մեզ, ասելով թէ մեր վարդապետքն չհրամայեն մեզ։ Վասն որոյ արար ժողով թագաւորն հարիւր և յիսուն եպիսկոպոսաց, որ ասի հինգերորդ ժողով։ Իսկ յորժամ Մուշեղ Հայոց և Յունաց զօրօքն նուաճեաց զԽոսրովու թագաւորութիւնն, և դարձաւ պարգևօք, բան անկաւ վասն հաւատոց, և արար Մօրիկ ժողով հարիւր և վաթսուն եպիսկոպոսաց. քսան և հինգ եպիսկոպոսքն 'ի Հայոց էր [2]։ Արար և Հերակլ եօթներորդ ժողով.

1. Զօրեղերական ժողով, որ է Բ Կոստանդնուպօլսոյ, զոր չընկալան համակարծիկք հեղինակք։

2. Այսն ժողովյն Մօրկայ՝ զոր Փոտ միայն յիշէ, տե՛ս 'ի Գաղամ. Հայ. Բ. 630։

իսկ Մայրավանեցին Յոհան ոչ ընկալաւ. զոր Խոսրովոս Ռշտունի եւ Ներսէս հալածեցին 'ի Կովկաս, եւ յետոյ եկն 'ի Հայս եւ արար զոր ինչ կամեցաւ. եւ 'ի Յունաց 'ի բաց կացին Հայք նզովիւք չափ, եւ առաւել յորժամ թարգմանեցին զգրեանն Յուլիանեայ[1] Ալիկառնեցւոյն 'ի ձեռն Սարգսի 'ի ժողովն Մանծկերտոյ[2]:

Այսքիկ 'ի Թղթոյն Փոտայ սակաւ ինչ գրեցաւ. որոյ գրեաց պատասխանի Սահակ Մռուտն[3] կոչեցեալ, որ եպիսկոպոս էր Տայոց 'ի յԱշունիքն, եւ հալածեալ անտի վասն հաւատոց, եկն 'ի Հայս առ Աշոտ:

ԽԵ. Դարձեալ 'ի նոյն կայսերէ Լեւոնէ եկն ներքինի մի Նիկիտ կոչեցեալ յերեքհարիւր քսան եւ հինգ թուին, խնդրել 'ի յԱշոտոյ թագ, բերեալ շատ պարգեւս. քանզի Սահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա թէ արշակունի իցէ. զի մայրն հայ էր, եւ կատարիլ թուէր տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստիլ թագաւոր արշակունի. եւ կամէր պսակել 'ի բագրատունեայն: Զոր կատարէ Աշոտ, ընդ նմին առաքէ եւ տասն հազար արծաթ ընծայ նորաշէն եկեղեցւոյն, որպէս Սամիկոնեանքն՝ հինգ գրիւ արծաթոյ, առնեն դնել զդուռն արեւմտեան սրբոյն Սոփիայ 'ի Յուստինիանոսէ, յիշատակ Հայոց: Նա պատմեաց Նիկիտն թէ զտաք նշխար սրբոյն Գրիգորի Լուսաւորչին 'ի յաղաւհացսն 'ի հինգերորդ շաբաթուն շաբաթ օրն, զոր տօն կարգեցին:

Յաւուրս յայսմիկ ետր Զաքարիա երթալ տեսանել զՅիսէ որդի Շեխայ, եւ յոյժ մեծարի 'ի նմանէ, տուեալ նմա շատ ինչ պարգեւս, եւ զդրօշ՝ բառնալ խաչ 'ի վերայ նորա, եւ մտանել առաջի նորա միշտ: Զսա յաջորդէ Գէորգ 'ի տանէ պատրիարգարանին: Յուրում աւուրս ընդարձակեալ մեծին Աշոտի 'ի Սիրս եւ Աղուանս, եւ զԿաւկասայինսն հնազանդեալ, եւ չէր ինչ պակաս՝ բայց 'ի թագէ. զոր խորհին իշխանքն Հայոց, եւ 'ի ձեռն Յիսէի ազգ առնեն ամիրապետին, եւ նորա զուարթ սրտիւ առաքէ թագս եւ հանդերձս եւ երիվարս: Զնոյն եւ կայսրն Լեւոն առաքէ. եւ օրհնէ

1. ՕՕ. Լիւխանեայ:
2. ՕՕ. Ի ծոփէ:
3. Սահակ Մռուտ՝ մականուանէր Ապիկուրէշ: Իսկ Աշունք եպիսկոպոսարան 'ի Տայս ոչ է ծանօթ, գուցէ Էօշք աւանն իցէ յայժմեան Թորթում վիճակի:

զԹագն տէր Պետրոս յերեքհարիւր երեսուն և վեց Թուին, և յերկոտասաներորդ ամի հայրապետութեան իւրում, և յութհարիւր ութսուն և ութ ամի ծննդեան Տեառն։ Սա բարիոք կարգաւորեաց զյօրինուածս Թագաւորութեանն ամս հինգ։

Յաւուրս սորա էր Համամ, որ գրեաց մեկնութիւն Առակացն և Քերականին, և 'ի Յոբայ՝ զՄ՞մ է գայն Թարգմանեաց, և զօրհնութիւնս որ 'ի գլուխս Սաղմոսացն ասացեալ գիրս մի, և զՄ՛նբիծսն գիրս մի։

Այլ Աշոտ արքայ դնէ իշխան Սրայ գքեռորդի իւր, և ինքն կատարի 'ի Քրիստոս եօԹանասուն և մի ամաց. և առնու զԹագն Սմբատ որդի նորա յերեքհարիւր քառասուն և չորս Թուականին, ամս քսան և չորս, կամակցութեամբ Լեւոնի որդւոյ Վասլի, որ Թագաւորեաց յետ հօր իւրոյ ամս քսան և վեց, այր առատ 'ի տուրս և ոչ նման Հոռոմի[1], զի նա որդի Հայի էր և յոյժ սիրէր զՀայս։ Իսկ Սմբատ առեալ զպատիւն, շինէ զսուրբ Փրկիչն յԱրաղզաւորն, որ է Շիրակաւանն. ուր և օԹաւն իսկ. զի նա էր նախագահ Թագաւորացն Բագրատունեաց, մինչդեռ չև էր ընդարձակ շինեալ քաղաքն Անի, որ կոչի Խնամք[2], Թէպէտ ներքին բերդն ընդ այս անուամբ էր, և հին ժամանակաւ շինեալ. ուր Օտա նախարարին ամրացեալ պահէր ըղքոյրն Տրդատայ, և զկուռս և զգանձս Թագաւորացն Արշակունեաց զկնի մահուանն Խոսրովու. և 'ի դառնալ Տրդատայ 'ի Յունաց աշխարհէն, ընդ առաջ նորա ելանէին յԱյնկեղեաց գաւառն Օտայն և Տաճատ անուն իւր, Աշոցաց տէր. և այս Տաճատս էր որ տեղեկացոյց զԹագաւորն վասն Գրիգորի Թէ որդի է սա Անակայ։ Այսն Թէ իշխան մի լուծեալ ոտիւք՝ 'ի ներքին բերդն ամրացեալ ոչ հաւանէր գալ 'ի մկրտութիւն, 'ի դառնալն Հայոց 'ի հաւատս. մինչ հնարս խնացեալ որդւոյն Գրիգորի, այլափոխէ զինքն և երԹայ համդէպ բերդին, և ընդ դուռ 'ի վայրն Թաւալգլոր գնայ անկանի 'ի ջուրն, և վաղվաղակի կանգնեալ յոտիցն փառա-

1. Հինն և նորք յաւելուն, յայս է որում տպաւոր, որ ոչ կայ 'ի չէ[illegible] նոցա [illegible], և չէ[illegible] [illegible], որպէս [illegible]։

2. Հինն յաւելու. Կոչի Անի և Կամախին այժմ կոչեցեալ Բերդ. բայց անուամբ Անի ներքին բերդն է ամրացեալ։

ւորէ 'ի ձայն բարձր զԱստուած . որպէս թէ զօս գոլով ատիցն առողջացաւ 'ի ջրոյն զօրութենէ . զոր տեսեալ և լուեալ իշխանին՝ առ ինքն կոչէ , և տեղեկացեալ մկրտի և ողջանայ ատիւք 'ի նշան հոգևոր բժշկութեանն [1] ։

ԽՉ . Իսկ պատուական թագաւորն Սմբատ 'ի Յուսփայ ոստիկանէն Տաճկաց խեղդամահ լեալ 'ի Դուին վասն Քրիստոսի , նշաւակի 'ի փայտի . յորմէ և որդի նորա Մուշեղ դեղակուր եղեալ կատարի 'ի Տէր վըկայութեամբ , և թաղի 'ի Բագարան ընդ հարս իւր ։ Եւ զամս եօթն անիշխան լեալ երկիրս , սպառեցաւ սրով և գերութեամբ ։

Իսկ Աշոտ որդի Սմբատայ , որ և Երկաթն կոչեցեալ վասն արիական քաջութեանն , անկանի առ Լեւոն կայսրն Յունաց , կոչեցեալն Կոստանդին ։ Յորում աւուրս կատարեցան 'ի Քրիստոս փառաւոր և մեծ իշխանքն Դաւիթ և Գուրգէն 'ի տանէն Գնունեաց 'ի Դուին քաղաքի , յանօրինէն Յուսփայ , վկայական արեամբ պսակեալ . որոց պատուի օր կատարմանն 'ի մարերի ամսեան քսան . և սուրբն Սահակ եպիսկոպոս երկերիւր ոգւով և եօթն եկեղեցականօք կատարեցաւ 'ի Բիւրական , յահկի 'ի տասն . և երկու Կիրակոսքն 'ի նոյն ամսեան յեօթնևտասն . որոց տօն գերապայծառ կարգեաց սուրբ պատրիարքն Յովհաննէս , որ ետես աչօք զխաւարաքեր ժամանակն , և գրեաց 'ի յիշատակ ապագայից դարուց . և տօն սուրբ թագաւորին Սմբատայ ։ Իսկ Աշոտ պսակեալ 'ի Լեւոնէ դառնայ 'ի Հայս յերեքհարիւր եօթանասունն թուին . և գտանէ թագաւորեալ զհոմանունն իւր Աշոտ որդի հօրեղբօր իւրոյ . զոր հնազանդեաց 'ի ներքոյ իւր . որպէս և զԳագիկ թագաւոր տանն Արծրունեաց , և զՄովսէս [2] բռնացեալն յԱղուանս , զորոյ խաւարեցոյց զաչսն . և մեծազօր գտեալ քան զնոսա , և քան զթագաւորն Վրաց Ատրներսեհ , կոչեցաւ 'ի վերայ նոցա Շահնշահ , զամս ութ . կատարի , և առնու զթագն Աբաս եղբայր նորա ։ Որ զկնի մահուան հօրն գնացեալ 'ի Վիրս , և փեսայացեալ նոցին՝ դառնայ այսրէն և տիրէ ամենայն

1 . Ոչ պատշաճին Լուսաւորչի այդպիսի հնարք ։

2 . Մովսէս իշխան էր մասին մերոյ Ուտիոյ , որ յԱղուանից տիրապետելոյ կոչեցաւ Աղուանք ։

հայրենեաց իւրոց ամս քսան և հինգ, յերեքհարիւր եօթանասուն և մի թուին։ Ի սորա աւուրս յոյժ բազմութիւնք կրօնաւորաց հալածեալք 'ի Հռոմոց աշխարհէն սակս ուղղափառութեան (!), եկեալ յաշխարհս մեր շինեցին յոլով վանորայս [1]։ Նախ զՍամրըջանձոր, և ապա զՀռոմանսին կոչեցեալ վանք, որպէս թէ 'ի Հռոմոց կողմանցն եկին, և զԴաղպավանքն. 'ի նոցանէ ասեն շինեալ զՍանահնին սուրբ Աստուածածինն։ Շինեաց և թագաւորն Աբաս ըղկաթուղիկէն 'ի Կարս գեղեցիկ յօրինուածով։ Յորում աւուրս եւ իշխանն Սարմատացւոց, որ յայնկոյս Կովկասայ, Ներ անուն [2], բազում զօրօք առ Կուր գետով. և լուեալ եթէ թագաւորն Հայոց պատրաստեալ չինէ եկեղեցի, յղեաց առ նա և ասէ. Գիտեա դու կանխագոյն, զի եկեալ եմ յօրհնել զեկեղեցիդ ըստ իմում օրինացս՝ Քաղկեդոնի ժողովոյն սահմանադրութեանց. իսկ նորա ընդդէմ նորա ելեալ հայաստանեայցս զօրօք, որոյ ճակատ տայ առ հասարակ զզօրսն, և զՆերն 'ի բուռն առեալ բերէ զնա կենդանի 'ի Կարս, և միանգամ տայ տեսանել զեկեղեցին, և ապա բերեալ զտեսանելիսն, վաճառէ զնա ազգին իւրում, զի՞ երդման առեալ, զի յաւիտեան այլ ոչ ևս ելցեն 'ի Հայս։

ԽԷ. Իսկ զկնի կայսերն Յունաց Լևոնի առնու ըղթագն Աղէքսանդր ամ մի. և յետ նորա Ռոմանոս՝ ամս քսան և հինգ։ Յաբասայ և 'ի սորա աւուրս առաւ Մելտենի 'ի Տաճկաց [3] յերեքհարիւր ութսուն և երեք թուին, և յերեքհարիւր ութսուն և ութ՝ Համդուն [4] 'ի Կողոնիա եմուտ զօրօք և անդրէն դարձաւ։ Իսկ ապա թագաւորեաց Կոստանդին [5] որդի Լևոնի յերեք-

1. Վասն վանորայից շինութեանն տես 'ի Պատմ. Հայ. Բ. 823։

2. Բեր՝ Աբխազաց թագաւոր է ըստ այլոց պատմչաց և ոչ Սարմատացւոց. սուղ ինչ զկնի Բեգրաս կոչէ զնա հեղինակդ ըստ այլոց պատմչի. և արդարև յիշատակի Բեգրաս (Բէոդոս) Կուր կոչեցեալ թագաւոր Աբխազաց, թէ և փոքր մի կրսեր ժամանակաւ։

3. Յոյնք առին զՄելտենի 'ի Տաճկաց, և կործանեցին, վասն յապստամբութեն մտադրելոյն քաղաքացեաց։

4. Համտուն կամ Համտաննեան ամիր արաբացի, յետ Թ դարու ձեռն արկ 'ի վերայ Միջագետաց, և հաստատեաց տէրութեան աթոռս 'ի Մօսլ, 'ի Մերտին, 'ի Նփրկերտ, 'ի Բերիա։

5. Կոստանդին Պորփիւռոժէն է թագաւորելոյ երկրորդ անգամ յետ մահուան Ռոմանոսի։

Հարիւր յիսնաւուն և երկու թուին, ամս վեշտասան . որ և 'ի վեցերորդ ամին եղաւ զՄարաշ 'ի Տաճկաց, յե-րեքհարիւր յիսնաւուն և ութ թուին : Զամանէ ասեն 'ի մրումաւուր հինգ աւուծ պատմեալ : Սա եւ արկա-նել 'ի յՄլիս զետ յորով բեուինս Թորքաց, և փախոյց զզօրսն Խամայելի, և կոչեցաւ Թորքաժողով :

Իսկ 'ի սուրբ աթոռն զկնի տէր Յոհաննիսի եկաց տէր Ստեփանոս ամ մի : Տէր Թէոդորոս ամս մետա-սան . և յետ նորա տէր Եղիսէ եղբայր նորին՝ ամս հինգ . և զկնի նորա տէր Անանիա Մոկացի՝ ամս քը-սան և երկու : Սա բազում աշխատութեամբ հնազան-դեաց զԱլուանքս, որ Աղուանից թեւակոխէին[1], և ձեռ-նադրեաց արքեպիսկոպոս զկնի Յակոբայ աթոռականի[2], (զտէր Մաշտոց 'ի Բաղաց, որդի Դաւանչերի իշխա-նին, որ շինեաց զամենապայծառ ուխտն Յոհաննա-վանս, առ ստորոտս անմատոյց գագեկին Բաղաց) . այլ և զԱղուանս ածեալ 'ի հաւան չձեռնադրել իւրեանց կաթողիկոս առանց աթոռոյ սրբոյն Գրիգորի : Զկնի նորա եղաւ զաթոռն Մաշտոց 'ի Բաղաց, ամ մի . որ և ապա կարծիս առեալ, եթէ զաշնագիր է Մբաց, և պատկերաց եռ ածել[3], վասն որոյ փոխեաց զնա, և զկնի յաթոռն զտէր Ստեփանոս ազգական սրբոյն Մաշտո-ցի, որ 'ի Սևան, ամս երկու :

ԽԸ. Իսկ 'ի չորեքհարիւր թուին փոխի սուրբ Թա-գաւորին Աբաս . և առնու զթագն Աշոտ որդի նորա, Ողորմածն կոչեցեալ . որ բազում ուրկանոցս շինեաց, և առատ ռոճիկս դարմանէր զնոսա, յորով անգամ և անձամբ սպասաւորելով նոցա, և զԹարախածոր մնա-ցորդս բաժակին ախորժանօք ըմպէր, կոչելով անուանս գոդեացն իշխանս և կիւրապաղատս, ըստ Յակոբայ՝ եթէ մեծատունք են հաւատովք : Սա զփոքր պարիսպ քաղաքին Անւոյ[4] շինեաց . և զամենայն բրգունսն ե-կեղեցիս յօրինեաց, 'ի չորեքհարիւր երեքտասան թը-

1. Մեծարագոյնքս Սիւնեաց հա-սուածեալ առ վայր մի 'ի կաթո-ղիկոսաց Հայոց յԱղուանից առ-նուլին զձեռնադրութիւն :

2. Փակագծեալ համառօտդ չը-կայ 'ի Բ. Օ :

3. Ոչ առ պատկերսն բերի հա-կառակութիւնդ, այլ առ 'ի Վրաց անուն բերումն :

4. Փոքր պարիսպն Անւոյ յայտ է թէ ներքինն է բարձրագոյն և մե-ծակառոյց, յորայ աշտարակս թը-ւի մատուցանս գործեալ, և այսպէս ամէն թիւ եկեղեցեաց Անւոյ :

ւյն. և բարեպաշտ կողն իւր[1], Խոսրովանոյշ, շինէ զփառաւորագոյն սուրբ ուխտն զՍանահին և զՀաղբատ: Հանգեաւ 'ի Քրիստոս 'ի չորեքհարիւր քսան և հինգ թուին, թողլով երիս որդիս, զՍմբատ, զԳագիկ և զԳուրգէն. որ և 'ի նմին աւուր առնու զթագն երեց որդին Սմբատ, որ Տիեզերակալ կոչեցաւ. սա զմեծանիստ պալատն Անւոյ շինեաց, և զկաթուղիկէն հիմնարկէ. և կրտսեր եղբայրն ժառանգէ զՏաշիր Սեւորդւովքն Ձորոյգետոյն. և զԿայեն և զԿայծոն, զԽորխոռունիք՝ որ 'ի Խոռայ շինեցաւ, որ է Խոշոռնի և Խոռակերտ, և զԲագունիք՝ որ է Բագկերտ 'ի գաւառն Տաշրոյ. և այլ[2] բերդք անուանիք եհաս Գուրգենայ, զոր Վիրք Սոմխէթ կոչեն: Սա 'ի նմանէ սերեցան թագաւորքն Գուրիթ, Ռաքա և Կախեթէ. յորոց կանայքն կրօնաւորք՝ Սամքան, և Մուզուքան: Սա Գագիկ սակաւ ինչ կեցեալ ընդ եղբօրն, հալածական լինի վասն կարծեաց ինչ դրժանաց: Իսկ Սմբատ հասեալ 'ի չորեքհարիւր քսան և ութ թուին՝ կատարի. և նոյնժամայն կոչեն զհալածեալն Գագիկ, և տան նմա զթագն և ածեն նմա 'ի կնութիւն զԿատրամիտէ, դուստր Սահակայ Սիւնեաց թագաւորի, որ վճարեաց աւարտմամբ զկաթուղիկէն, 'ի հրեշտակէ Աստուծոյ յորդորեալ, որ խոստանայր նմա կալ 'ի ձեռնտուութիւն գործոյն, և մնալ 'ի նմին տաճարի, մինչև զՔրիստոս եկեալ տեսցեն արարածք:

Իսկ զսուրբ աթոռն յաջորդէ տէր Խաչիկ ազգային տեառն Անանիայի, ամս իններասան. և զնա փոխէ տէր Սարգիս՝ ամս քսան և չորս: Սա շինեաց զվըկայարան սրբոց Հռիփսիմեանցն, առընթեր կաթուղիկէին Անւոյ, և անդ փոխեաց զնշխարս նոցա բերեալ մեծաւ հանդիսիւ, և կարգեաց զօրն տօն մեծ:

ԽԹ. Այլ զկնի Կոստանդեայ կայսեր[3], առնու զթա-

1. Իմա՛ կողակիցն:

2. Այս անուանքն աւանք և միճակք 'ի հարաւային արեւելեան մասին Գուգարաց աշխարհի են, զոր Վիրք Սոմխէթ կոչեն, որպէս և զՀայս Սոմխս, իբրու հարաւայինս: — Խոռակերտն կամ Խորխոռունիք, և Բաղկերտ կամ Բագունիք՝ յայտ առնեն որդւոց և թոռինն Հայկայ յետ շինութեանցն 'ի Ցուրտուբերան աշխարհի՝ եկեալ և հաստատեալ այսր զբնակութիւն իւրեանց:

3. Զկարգ կայսերացդ ակնածի 'ի Դ Կոստանդեայ, որ է Կոստանդնոս, թագաւորեալ յամն 741-

դըն Լեւոն, եւ ապա Կոստանդին եւ Ռուփինեա մայր իւր, որ խաւարեցոյց զորդին, եւ ինքն տիրեաց ամս հինգ մեծի աթոռոյն։ Յորում աւուրս կատարեցան 'ի Քրիստոս Սահակ եւ Յովսէփ, տաճիկք ազգաւ, յարացի հնգետասան։ Նա զկնի Միքայէլն, եւ ապա Լեւոն, եւ յետ նորա Միքայէլ, ապա Թէոփիլոս. եւ ըզկնի Միքայէլ, ապա Վասիլ, եւ զկնի Լեւոն, ապա Ալէքս. եւ զկնի Կոստանդնոս, որ հալածեաց զուղղափառ (!) վանորայսն յարեւելից աշխարհս. կամեցաւ ձեռնարկել եւ 'ի վանորեայս Սեւ լերինն, յերթալն իւրում ծանր զօրու 'ի կողմանս Հալպայ, որ եւ 'ի բարկութենէն Տեառն հետիոտս փախեաւ միայն մազապուր։ Յետ նորա Կոստանդին որդի Լեւոնի. ապա Կոստանդնոս, եւ ապա Նիկիփոռ, ապա Կիւռ-Ժան, եւ ապա Վասիլ, ամս յիսուն եւ երկու։

Ծ. Իսկ յաղագս Վրաց Թագաւորացն սկզբանց, որ կայ 'ի գիրս նոցա, եթէ Թորգոմ ութ որդւովք եկն յԱյրարատ գաւառ զկնի ջրոյն մեծի. եւ երեք յորդւոց նորա նախագահք եղեն՝ Հայոս եւ Քարթլոս եւ Կոկասոսն, եւ տիրեցին աշխարհաց, եւ իւրեանց անուամբն կոչեցին Հայք եւ Քարթլ եւ Կովկաս. եւ տիրեցին 'ի ծովէն Պոնտոսի մինչեւ ցծովն Կասպից՝ մինչեւ ցՄիհրան. եւ ցԱրբակ թոռն իւր, որ էառ կին 'ի Պարթեւաց՝ Սահակդուխտ անուն 'ի Պարտաւայ. որ եւ ամուլ գոլով հաւատաց 'ի Քրիստոս, եւ ետ նմա զաւակ՝ զՎախտանգ, որ եւ Գուրգասարն կոչեցաւ, որ է Գայլագլուխ 'ի Պարսից բանն [1]. զի ունէր 'ի վերայ սաղաւարտին պատկեր գայլոյ յառաջոյ կողմն, եւ յետի կողմն՝ առիւծու։ Սա էառ իւր 'ի կնութիւն զդուստր Լեւոնի կայսեր. եւ 'ի սմանէ սերեցան Թագաւորքն մինչեւ ցԹեւտաս, զոր կուրացոյց Բագաս. յետ որոյ Թա-

778, եւ հասուցանէ ցՎասիլ Բ որ թագաւորեաց ցամն 1028. բայց մոռանայ յետ Յուստինեայ զՆիկէ-փոռ, եւ յետ Ալէքսի զԿոստանդին Պորփիւրոժէն։

1. Վախտանգ հզօրագոյն 'ի Թագաւորս Վրաց եւ գիւցազն նոցին, զորմէ բազում ինչ առասպելախառն պատմեն. իսկ ժամանակակից նորին մեր Ղազար պատմիչ արդարախոհով նշանակէ երկենենգաւոր եւ դրժող ուխտին ընդ Վահանայ Մամիկոնենից։ Կոչի եւ 'ի Վրաց Գուրգասալ կամ ըստ նո Գուրգասալն, որ ըստ Պարսից եւ Թուրքաց Գայլառիւծ նշանակէ. իսկ Գուրգասար արդարեւ գայլագլուխ է։

դաւորեաց Բագարատ[1], որդի Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ Ողորմածին, 'ի վերայ Աբխազաց. այս ըստ Մխիթարայ երիցու ասիցն[2]:

ԾԱ. Իսկ Վասպուրականի թագաւորքն՝ յազգէն Սենեքերիմայ, Գագիկ որդի Դերենկանն, սա շինեաց զԱխթամար. ապա Դերենիկ որդի նորա, և զկնի եղբայր նորա Աբուսահլ, և յետ նորա Շահնշահ որդի նորա, և զկնի եղբայր իւր Գուրգէն. և ապա եղբայր իւր Սենեքերիմ, որ նեղեալ 'ի Պարսից՝ ետ զերկիր իւր 'ի Վասիլն, և չոգաւ առ նա չորս որդւովք, որոց անուանքն՝ Դաւիթ և Աբուսահլ, Ատոմ և Կոստանդին, և եղբօրորդիքն՝ Դերենիկ, Գագիկ և Աշոտ. և առնու փոխանակ զՍեբաստ և զԼառիս[3], և յոլով պատատինս[4]: Որ զկնի սպան Դաւիթ զՓոկաս պատրատամբ, և ա՛ռ գրով զԽաւստանանեկն[5]:

ԾԲ. Ի չորեքհարիւր քառասուն և չորս թուին մեռաւ Գագիկ, թողեալ զթագաւորութիւնն երից որդւոց իւրոց, Յովհաննիսի, Աբասայ և Աշոտոյ: Օթագն տայ Յովհաննիսի, և զԱնի և զՇիրակ, զսուրբ Գրիգոր Ձորոփն Աշոցաց, զԱնբերդ և զդաշտն Այրարատեան, զԿայեան և զԿայծոն և զՏաւուշ գաւառն Սեւորդեաց. և զայլ մնացեալն՝ Աշոտի և Աբասայ բաժանէ: Իսկ 'ի վիճել նոցա զկնի այնորիկ, գայ թագաւորն Աբխազաց Գորգի, որդի Բագարատայ, որդւոյ Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ Ողորմածին, և առնէ հաշտութիւն 'ի մէջ նոցա և գնայ: Իսկ զի ոմանք յիշխանացն անհնազանդ լինէին, գնայ կրտսերն Աշոտ առ կայսրն Վասիլ, և առեալ 'ի նմանէ զօր, գայ և հնազանդէ զամենեսեան, և նստի թագաւոր Դրոց աշխարհին[6]. և Աբաս 'ի Կարս:

1. Բ. Օ. Աբաս:

2. Մխիթար Երէցն՝ Անեցին է, պատմիչ ԺԲ դարու, որոյ գրուած ընդ կորուսեալսն համարի արդ:

3. Լառիս, զոր յիշեն և Բիւզանդացիք, 'ի կողմանս Սեբաստիոյ ճանաչի, այլ բնիկ տեղին անյայտ:

4. Պատատին՝ զոր այլուր գրեալ Թարգմանէ Հեղինակս, է յունականն Բրաստիոն προάστειον, որ և նշանակէ արուարձան կամ սահմանակայրք քաղաքի:

5. Խաւստանանեկ՝ ըստ Չամչեան Հօր անուն է 'ի հարաւոյ արևմտից Սեբաստիոյ:

6. Դրոց աշխարհ, բաժինն Աշոտոյ, Թուի որ արտաքոյ Շիրակայ և սահմանացն Անւոյ տեղիք:

Յայնմ ժամանակի վախճանեցաւ կիւրապաղատն Դաւիթ[1], անժառանգ զաւակ. և տայ անդարձապէս զհայրենիսն իւր 'ի Վասիլն, զՍուխթիսն և զԱրամ-բուան, և զքաղաքն Ապահունեաց՝ զՄանծկերտ, և զամենայն ինչս։ Զոր լուեալ Վասիլ կայսեր, գայ բանակի 'ի դաշտն Կարնոյ. զայս իմացեալ Յովանիսի երկեաւ, և առաքէ առ նա զՊետրոս պատրիարգն պատարագօք, զոր տէր Սարգիս 'ի կենդանութեանն իւրում օծեալ էր իւրով ձեռօք 'ի յԱնի, մեծ հանդիսիւ։ Նաև նեղէր զՅովանէս՝ արքայն Վրաց. վասն որոյ պատրիարգին պատուիրէ տալ ձեռագրով զԱնի զկնի մահուան իւրոյ 'ի Հոռոմս, որպէս և կիւրապաղատն, եթէ պահէ զնա 'ի նեղչաց իւրոց. զոր խնդութեամբ լուաւ Վասիլն։ Նա կոչէ առ ինքն զԳորգի Թագաւորն Վրաց, և ոչ եկն 'ի կոչ նորա. վասն որոյ երթայ զայրացմամբ, և աւերէ զնորա գաւառս երկոտասան, և դառնայ յերկիրն Խաղտեաց, անդ անցուցեալ զձմեռն։ Կոչէ առ ինքն զտէր Պետրոս օրհնել ընդ նմա ջուր 'ի տօնի Աստուածայայտնութեանն. որ եղև հրաշալի նշան, լոյս փայլատակեալ 'ի յաջոյ հայրապետին և յօծմանէ սուրբ իւղոյն 'ի հիացումն տեսողացն. և յոյժ գովեցաւ հաւատն[2] Հայոց։ Նա դառնայ Վասիլն 'ի Կոստանդնուպօլիս և վախճանի 'ի չորեքհարիւր եօթանասուն և երեք թուին. և առնու զԹագն Կոստանդին ամս երեք. և զկնի Ռոմանոս փեսայ նորին, ամս հինգ. զոր հրամանաւ կնոջն խեղդեցին 'ի բաղանիսն, և եղին զՄիքայէլ ամս եօթն։

Ծ՟Գ. Իսկ որ զԱմիրալմումնեացն կարգն բերեալ հասուցաք 'ի Ջափր և Թողաք. քանզի սկսաւ իշխանութիւն նոցա 'ի վաթսուն թուին, և դադարեալ չփոթեցան յերեքհարիւր յիսուն թուին. և աստ և անդ բռնակալեալ տկարացան 'ի զօրութենէ, և զօրացան ազգն Թուրքաց այսպիսի պատճառաւ։ Այր 'ի Խորասան ոմն յԱմաղեկացւոցն Մահմուտ անուն, որ անցեալ ընդ Ջահան գետ յերկիրն Թետալացւոց[3], ա-

1. Դաւիթ. ունէր զկողմանս Տայոց և Մեսխեաց և մասն 'ի միջին աշխարհէն Հայոց։

2. Նոր Օր. հայրապետն։

3. Տես յէջ 30 Ծան. 1։

ծէ բազում գերիս 'ի Խորասան՝ որ առևտրականք[1], բնա-կեցուցանէ ստանձինն, և ածեալ նոցա և բազմացեալ՝ զնեն զօրս ամիրա, և ապա տան նմա թագ՝ 'ի մեռանելն Մահմուտին. նա յաջողակ եղեալ տիրեաց Պարսից և Նստաւ սուլտան, որում անուն էր Դողլա-բաք[2]: Նայս ըստ Վահրամայ, որդւոյ Տիգրանայ[3], վիպագրի. իսկ պատմական երէցն Մխիթար Անեցին, որոյ յիշատակն 'ի գիրն կենաց, այսպէս ասէ. Յոլով աշխատ եղէ գտանել զորպէսն սուլտանացն՝ որ 'ի Թուրքաց, և գտի շնորհօքն Աստուծոյ այսպէս. Մահմուտն՝ զոր ասացաք, Սբքթանայ[4] որդի, յանհնչանից մեծացեալ՝ որպէս Արտաշիրն Սասանեան, և եբարձ զիշխանութիւնն Մահմետի ազգին 'ի Մահմատ Մուհթադէ, երեսներորդ երրորդ 'ի Մահմետայ, յերկերիւր քառասուն և վեցերորդ[5] ամի իշխանութեան նոցա. և զօրացաւ նա 'ի Բահլ քաղաքի 'ի յերկրին Քուշանաց, և ել համբաւ զնմանէ ուժգին, մինչև խալիֆայն երկուցեալ՝ առաքէ նմա ընծայս և ալամ, և լագապ՝ Էմին-ադլ[6], և սուլտան կոչէ զնա: Եւ առեալ նորա զպատիւն և ս մեծանայ. և ելանէ 'ի Հնդիկս՝ 'ի համբաւ կռոցն Մաթանայ[7], զոր կործանէ, և առեալ աւար դառնայ, զՄահմատ որդի իւր թողլով անդէն, և գայ 'ի Դուրգան[8]. և առնու 'ի տեառնէն Դուրգանայ չորեքհարիւր հազար դահեկան, և տէհս տամբ միով, 'ի չորեքհարիւր և քսան թուին իւրեանց. և անցանէ գայ յ'Ռէ[9]. և տէրն Ռէոյ Մաջա-դաւլա Ռստոմ,

1. Քանզի Խօր արեգակն լոյ 'ի պարսիկ լեզու:

2. Դողլաբաք, այսինքն Տօղլուղ-բէկ, որ է Տուղրիլ ըստ այլոց:

3. Անծանօթ պատմիչ, զոր Մխիթար Այրիվանեցի՝ ոչ որդի Տիգրանայ՝ այլ Տիգրանակերտցի կոչէ:

4. Սէպէքթէկին կամ Սապըքթաքին:

5. Երկերիւր քառասուն և վեց ամ իշխանութեան Արաբացւոց է 860 ամ փրկչին, բայց Մահմուտ իբրև դարու և կիսով յետոյ հաստատեաց զիշխանութիւնն, յամի 997:

6. Ալամ, Ալէմ علم, վառ, դրօշ իշխանութեան: Լագապ, Լէգապ لقاب, կոչումն պատուոյ.— Էմին-ադիլ امين عادل, ստուգական արդարութեան, կամ արդար և հաւատարիմ:

7. Մաթան կուռք Հնդկաց անծանօթ է մեզ, թէ չիցէ Մօղուլի շատատուած վարիչ կառաց Ինդրայ:

8. Դուրգան կամ Ճուրճան, ըստ մեզ Վրկան, արևելեան հարաւակողմն Կասպից ծովու:

9. Ռէ կամ Հրէ, այժմ Ռայ, է հին Ռագաւ Մարաց, մերձ 'ի Դէհրան:

երեք աւուրս յառաջ առեալ զԴէլմիկսն[1] եւ ընդ առաջ նորա, և գայ 'ի Սրաւ[2] անհնարին ուժով, և ընդ նմա երկերիւր և յիսուն փիղ: Իբր տեսեալ զնա, ասէ. Շահնամակ կարդացեալ ես. և նա ասէ. Այո. և դարձեալ ասաց. Շատրկուց խաղացեալ ես.— Այո: Ապա ասէ. Թագաւոր 'ի Թագաւորի տուն մտէ՞ թէ ոչ. և նա լռեաց: Իբր առժամայն կապեալ զնա յղարկէ 'ի Խորասան, և զամենայն ինչս նորա առեալ՝ տիրեաց Ռէյոյ, և գայ 'ի Տապարաստան[3] և 'ի Տառամբ[4], և 'ի Սարի[5]. տայ 'ի ձեռս Մասուտի որդւոյ իւրոյ զՌէ, և զՂազուին[6] և զՔուհաստան[7] բովանդակ. Թողլով զնա յՌէ, գայ 'ի Սրաւ և առնու հարիւր հազար դենարի, և անցանէ 'ի Նաշաւուրն[8] 'ի չորեքհարիւր քսան և մի թուին իւրեանց: Իսկ Մահմուտն առնու զՀամիան և զԱսպահան, և դառնայ յՌէ. և իսկոյն լսէ թէ սպանին զշահնայն[9] քո յԱսպահան: Իբր դարձեալ անդրէն սատակէ չորս հազար այր և դառնայ յՌէ. և նոյնժամայն բերեն նմա զգոյժ մահու հօրն, և թէ սուլտանացաւ Մահմատ եղբայր քո. և յարուցեալ գնայ, և կալեալ զեղբայրն կուրացուցանէ, և առնու զիշխանութիւնն և զաթոռն: Իբր քանզի հայր նորա 'ի գնալն յօգնականութիւն ազգին՝ որոց գլխաւորն կոչիւր Խորղան-Պօղրղան, 'ի Ճանապարհին պատահէ բանակաց ինչ բազմութեան Թուրքաց, և 'ի դառնալն նոյն Ճանապարհաւ՝ մեծաւ յաղթութեամբ առեալ զամիրայն նոցա զՄջապղու բերէ 'ի Խորասան և դնէ 'ի կապանս. և ազգ նորա եկեալ խնդրեցին 'ի

1. Դէլմիկք, ժողովուրդ Դիլէմ նահանգի կամ Դէլմաստանի, 'ի հարաւոյ Կասպից ծովու, 'ի սահմանս բարձու Տէմաւէնտ լերին :

2. Սրաւ, Սէրաւ կամ Սէր-Աւ, քաղաք Ատրպատականի :

3. Տապարիստան, Դէյլէրիստան, լեռնաւոր նահանգ 'ի հարաւային եզերս Կասպից ծովու :

4. Տառամբ, Թուի Տարամ կամ Տարամկերտ, վիճակ և քաղաք Փարսիստանեայ :

5. Սարի գլխաւոր քաղաք և վիճակ Դէյլէրիստանեայ :

6. Ղազուին կամ Խազուին, Գազվին, երևելի քաղաք 'ի սահմանագլուխս Պարսից աշխարհի :

7. Քուհիստան, որ է Լեռնաստան, մի 'ի մեծամեծ նահանգաց տէրութեանն Պարսից, ընդ մէջ Իրաքայ և Խորասանայ :

8. Այս է Նիշապուհ կամ Նիշապուր, քաղաք Խորասանի մեծ յիրաւ :

9. Շահնէ ըստ տաճկի լեզուի վերակացու կամ հրամանատար :

Հօրէն, և ապա յորդւոցն, և ոչ ետուն ս Խակ նոցա բաւ-կացեալ անցին ընդ Գահան ամենայն բանակօքն իւ-րեանց, և զանձինս ՚ի մահ եդեալ կռուեցան, և յաղ-թեցին և առին զԱշաւուրն և կոտորեցին զզօրս սուլտա-նին ՚ի Դաղանդանն [1] մօտ ՚ի Մրմին [2]. և փախստական եղեալ սուլտանն՝ գնայ ՚ի Բալխնն և անտի ՚ի Հնդիկս: Այլ ՚ի Ճանապարհին սպանաւ սուլտանն, և զեղբայր եղ-բայր նորա թագաւորեցուցին ՚ի Բալուխն, որոյ յեր-կարեալ ՚ի նմին ծնանի որդիս. և մի ՚ի միոջէ առեալ ունին զԲալուխն մինչև ցայսօր:

Իսկ յառաջադէմն ՚ի Թուրքացն՝ որում անուն էր Մուսեափաղըս Արշուքեայ [3] որդի, ունէր հինգ եղ-բօրորդիս. որոց անուանքն՝ Աբուտալիմ, Դաւութ, Չաղրբէկ, Աբուտալիփ, Տողրիլ-Բէկն, որ էառ զիշ-խանութիւն սուլտանութեանն, և հնդետասան ամ ընդարձակեալ զաշխարհն՝ բաժանեաց զամենայն եր-կիրն Խորասանայ. և եկեալ յԱնէ գտանէ երկուս ըն-տանարանս գանձուց լի ոսկւով. և առնու ընդ ձեռամբ, և յղէ առ խալիփայն և խնդրէ օրհնութիւն. և նա մեծարէ զնա արամբք պատուականօք [4], և տայ նմա ա-լամ և ընծայս, և կարդայ զանուն նորա ՚ի մամբարն [5], և դնէ նմա մականուն Ռուքնադօվլա [6]. և յայնմ օրէ քարոզեցաւ աշխարհակալ: Այլ փոխէ զնա Ալփասլան Հօրեղբօրորդի Տուղրիլլին, որ ելից զամենայն աշխարհ արեամբ. և ունէր որդիս ութ, որ և հասանէր յա-թոռ թագաւորութեանն Մէլիք շահն, բարի և խաղա-ղարար. և զկնի Մահմուտ սուլտանն: Այլ յետ նորա

1. Դռազանդանն ըստ Պարսից Դէնտան-Ցաստուն-խան:

2. Մրմին է Մերվ կամ Մրու, նշանաւոր և մեծ քաղաք Պարսից, ՚ի սահմանս Խորասանի և Թուրքաստանի:

3. Սարշուք, Սելջուք կամ Սելճուկ, ըստ աւանդութեան Պարսից ծնեալ յԸֆրէսիապայ դիւ-ցազնէ. որոյ էին որդիք Միքայէլ, Իսրայէլ, Եունուզ կամ Պիկոս, և յետնոյն ՚ի հեղինակէդ՝ Մուսա. Դողրուլ և Չաղր որ է Ճեաֆար՝ Միքայելի որդիք են: Չորք զաւա-ռակք իշխանութեան շառաւիղե-ցան ՚ի Սելջուկեանց ազգ Պարսկացն, որ պայազատեաց զԼաոդիկէանցն. Ա, Խորասանեանց Թուրքաց. Բ, Հալէ-պայ և Դամասկոսի. Գ, Իկոնիոնի որ է Գոնեա և Փոքուն Ասիոյ՝ որ Բում կոչեցաւ յանուն Հռոմայ:

4. Բ. Օ. Մեծարէ զնա առ ինքն:

5. Մամբար է Մինպար منبر բեմն ատոռից, յորում զանուն խա-լիփայից կարդային:

6. Ռուքնէտ-տէվլէհ ركن الدولت Սիւն կամ հաստատութիւն տէրութեան:

աւագ եղբայրն Բագարատին՝ [1] որ կոտորեաց զնա, և առ զաթոռն ամս հինգ ։ Եւ յառնէ 'ի վերայ նորա Կուտլուշն որդի Ալփասլանին, զոր վկանդեալ Բակիարուխն եհար զզօրս նորա, և սպան զԿուտլուշն ։ Եւ Մահմուտ սուլտանն Մահմուդի որդին եհար ըզԲակիարուխն տղայ հասակաւ, և առ զսուլտանութիւնն ամս երեքտասան, և զկնի նորա Մահմուդն որդի նորին․ ընդ որ պատերազմեալ Սանջար սուլտանն կոտորէ զնա, և առնու զԱրաղայ [2] իշխանութիւնն, և դնէ զնա 'ի Բարաղայ․ և զկնի նորա Դաւութ որդի նորա եկաց սուլտան՝ զոր սպանին Մլհետքն [3]։ Եւ ապա եկաց Տօղրիլն, և զկնի Մասուտն, և ապա որդին՝ Ասլան, և զկնի ուժովն Տուղրիլ [4], որ կայր մինչ 'ի պատմագիրս․ որում պատիւ 'ի տեառնէ Աստուծոյ ։

ԾԴ․ Նոյն այր ասէ և յաղագս Թագաւորին Յովհաննիսի, եթէ եղբայր նորա Աշոտ՝ 'ի յոտս Թալինայ՝ [5] կեղծաւորեալ որպէս հիւանդ մերձ 'ի մահ, կոչէ զթագաւորն առ ինքն, փորելով 'ի մնարիցն կուսէ որոգայթս․ և այնու ըմբռնեալ՝ տայ 'ի ձեռս մեծ իշխանին Ապիրատն [6] կոչեցելոյ սպանանել զնա․ և նա յօժար կամօք յինքն առեալ տանի դնէ յաթոռ իւր յԱնի, ասելով․ Զիա՞րդ ձգեցից զձեռս իմ յօծեալ Տեառն, և խելագար մի եղից 'ի տեղւոջ սորա ։ Զսմանէ ասեն յաննշանից մեծացեալ, և վասն խելացի և առատ ձեռացն՝ մինչ լինել տէր երկոտասան հազար հեծելոց․ որ և շինեաց զսուրբ ուխտն Կեչառուս, որպէս Վարհամ իշխանն զՄարմաշէն [7]։

1․ Բարքի-արուք, որ իշխեաց իբրև երկոտասան ամ։

2․ Արաղ, Իրաք․ նշանաւոր աշխարհ Պարսից, 'ի հնումն սահման Մարաց։

3․ Մլհեդքդ, Մըլահիտք ملاحدة ըստ Արաբացւոց, որ է հերձեալք կամ մոլորեալք, ըստ Ասորւոց և Պարսից՝ Հաշիշի և Ասասինք ըստ Եւրոպէացւոց, որ է աւազակք․ հետևողք են Հասան-Սէպահայ մոլեռանդն քահանայի, որոյ ամրոց և կաղաք էր Ալամուդ բերդ, զոր էառն Հուլաղու ղան ։ Յաճախ և կոչին Իսմայելացիք ։

4․ Ուժովն Դողրուլ Բ․, յետին սուլտան տոհմին, տիրեաց յամին 1177-1187 ։ Նորա ժամանակակից է պատմիչ Երէցն Մխիթար ։

5․ Թալին 'ի հին Արագածոտն գաւառի․ այժմ կրկին աւանք են՝ Հին և Նոր Թալին 'ի համանուն վիճակի ։

6․ Ի Պահլաւունեաց տոհմէ և 'ի զարմից Լուսաւորչին ասին զոյգ Ապիրատն և Վահրամ, որ է եղբայր Վասակայ հօր հռչակելւոյն Գրիգորի Մագիստրոսի ։

7․ Հ․ Օ․ յաւելու․ Զի մի յանցաւորիս մեղային իշէն ձեռք, այլ և յան-

Ի չորեքհարիւր եօթանասուն թուին եւ Տուղրիլ-Բէկն և պատահեացնմա 'ի Նախճաւանի Լիպարիտն [1] հինգ հազար հեծելօք, և փախեաւ յահագին բազմութենէն, և 'ի գալ Խորքին 'ի Դուլին և սփռել ասպատակս, եւ ընդդէմ նոցա քաջն Սասակ, և ցուցեալ մեծ քաջութիւն դառնայ 'ի Սերկևլի [2], և 'ի հանգչելն անդ սակաւ մի քնով քարիւ հարեալ զգլուխն այր մի յանգէտս, մեռանի :

Զայսու ժամանակաւ պատրիարգն Պետրոս քինով ինչ Յովաննու թագաւորի գնաց 'ի Վասպուրական, և աղաչանօք ոչ դարձաւ · ապա 'ի ձեռն տուկի [3] կողմանցն ածաւ բռնութեամբ, և արգելաւ 'ի Բջնի : Զոր լուեալ տէր Յովսէփ կաթողիկոսն Աղուանից, գայ և հանէ զնա 'ի բանտէն, և տանի դնէ յաթոռն իւր, հանելով զԴիոսկորոս առաջնորդ սուրբ ուխտին Սանահնին՝ զոր եդեալ էին կաթուղիկոս փոխանակ Պետրոսի ամ մի · և նա դարձաւ 'ի վանս իւր, այր սուրբ և առաքինի :

Յայնմ ժամանակի փոխէ զԳէորգ Վրաց թագաւոր որդի իւր Բագարատ, և իշխանն Վրաց Լիպարիտ ապստամբեալ փախուցանէ զնա 'ի խորին Ափխազք, և չէն ունի ինքն զաշխարհն իմաստութեամբ, ձեռն տուեալ 'ի Միքայէլ կայսրն : Ուր 'ի մեռանելն իւրում տայ զթագն Կալափատայ որդւոյ քեռ իւրոյ, որ զկնի սակաւ աւուրց կուրացաւ հրամանաւ Զոյի թագուհւոյն կնոջն Միքայէլի · յորում տեղւոջ երևեցաւ քար մի ունելով գիր, թէ աստ թագաւոր խաւարի : Իսկ Զոյի առնու այր իւր զՄոնոմախն և դնէ նմա թագ :

ԾԵ · Առ սա գնայ տէր Պետրոս և դառնայ 'ի Սեւաստ, և որդիքն Սենեքերիմայ տան նմա զվանքն, զոր յանուն Վարագայ սուրբ Նշանին շինեալ էին, ընդ ինքեանս ունելով զխաչն, թէպէտ զկնի անդրէն դարձուցին : Իսկ երեք պռաստինս Մոնոմախն եւ պա-

մանկացն գաւառ · որ [illegible] 'ի [illegible], [illegible] ունելով [illegible] :

1 · Լիպարիտ իշխան վրացի, յՕրբելեան տոհմէ :

2 · Սերկեւիլ գեօղ, բլուր և [illegible] 'ի Թալինչ գէհ Արագածոտան :

3 · Դուքս յոյն 'ի գրանէ կայսեր կողմնակալ կարգեցաւ նախ միջնակաց Դուլթի կիւրապաղատի զոր եթող 'ի Յոյնս, և ապա Վասպուրական մարզին, զոր թագաւորք աշխարհին փոխանակեցին ընդ Սեբաստիոյ :

տրիարգին , որ և կեցեալ 'ի տեղւոջն ամ մի , կատարի ։ Եւ առնու զքողն Խաչիկ քեռորդին իւր , զոր ձեռնադրեալ էր 'ի կեանս իւր 'ի յԱնի , և կեցեալ ամս երկու վճարի , և մնաց աթոռն թափուր զամս հինգ ։

Քանզի 'ի չորեքհարիւր իննսունևերեք թուին մեռան Յովհաննէս և Աշոտ , և ետուն զթագն 'ի Գագիկ որդին Աշոտոյ . և յիշեցին Յոյնք զկտակն կորստեան վասն Անւոյ . զի անդարձ է ասեն , և հաստատուն է զկնի մահու կտակ ։ Եւ կոչեցին երդմամբ զԳագիկ 'ի Կոստանդնուպօլիս , որպէս թէ անդրէն դարձուցանեն պարգևօք . և կատապան[1] եդին ինքեանք քաղաքին . և վերացուցին 'ի նմանէ զերկոսեան պսակս , զգահ հայրապետութեան և զթագաւորութեան , յակամայս ածեալ զերկոսեան առ իւրեանս , և անդրէն ոչ դարձուցեալ ։ Վասն որոյ անյոյս եղեալ Գագկայ՝ առնու փոխան զԿալօնպաղատն և զՊիզու[2], և կայր պանդխտութեամբ 'ի մէջ ատեցողացն ազգիս ։

Զայսու ժամանակաւ Գրիգոր որդի քաջին Վասակայ տայ զԲջնի 'ի Մոնոմախն , և զԿայեան և զԿայծոն , զոր ընդ ձեռամբ իւր ունէր , և առնու զդքսութիւնն Միջագետաց . որ և առնու ընդ իւր զԼիպարիտն զիշխանն Վրաց , և այլ ևս երկու Մաժիստրոս , և երթայ ընդդէմ Բրեհիմայ՝ զօրագլխի Տուղրիլ-Բէգ սուլտանին . ուր ըմբռնեցաւ Լիպարիտն և ածաւ առ սուլտանն . և առաքեաց առ նա դաւանել զհաւատ նորա ։ Եւ պատասխանեալ եթէ իբրև տեսից զերեսս քո՝ առնեմ զոր հրամայես ։ Եւ իբրև ետես ասէ . Յորժամ եղէ արժանի տեսանել զքեզ՝ ոչ արարից զկամս քո և ոչ երկեայց 'ի մահուանէ . և ասէ սուլտանն . Զինչ կամիս . և նա ասէ . Եթէ վաճառական ես , ծախեա՛ զիս , և եթէ դահիճ՝ սպա՛ն զիս . իսկ եթէ թագաւոր ես , պարգևօք ազատեա՛ զիս ։ Եւ ասէ սուլտանն . Ոչ գնոյ քո վաճառական , և ոչ արեան քո դահիճ կամիմ լինել , այլ թագաւոր եմ , երթ ուր և կամիս . և արձակեաց զնա պարգևօք ։ Եւ զի կայսրն

1 Կատապան , թուի յոյնն գաթա́բան κατάπαν , իբր ամենապետ կամ համակալ իշխան ։

2 . Կալոնպաղատ կամ Կալոնողէղատ ըստ Մատթէի Ուռհայեցւոյ , և Պիզու , երկոքեին եւ 'ի Կապադովկիա , այլ դիրքն անյայտք ։

նեղէր զնոսա։ Տիրեաց և Պօունայ, և եդ հարկս 'ի վերայ Հայոց երեքհարիւր հազար դրամ։

Այնպիսի օրինակաւ արք ոմանք քաղդէացիք ելեալք յաշխարհէն իւրեանց գան 'ի Պարդաման, և ասեն ցիշխանն Պարդամանայ. Տուր մեզ զմասն խաչին զոր ետ քեզ Հերակլ, և լինիմք քրիստոնեայք և քո ծառայք. և կատարեցան իրքն։ Այլ լուեալ ամիրայն Բաղդատայ սպառնայ յոյժ. յորմէ երկուցեալ գնացին յառն Աղվկասու. և աջողեալք 'ի Քրիստոսէ յոր հաւատացին՝ տիրեցին ամենայն գաւառացն. մինչ զի և անձն 'ի նոցանէ թագաւորեաց Պաւրիթ անուն, որ խնամացաւ ընդ արքային Ձորոյգետոյ։ Այլ կոչեցին զգաւառն Ծանարք[1], զի անդ ծանեան զտեղի բնակութեան իւրեանց. և իշխանն Պարդամանայ կոչեաց զնոսա Քորեպիսկոպոս ըստ լեզուին Սրաց։

ՇԷ. Իսկ զկնի բառնալոյ թագաւորացն Հայոց 'ի Անւոյ, եւ 'ի Հայս հօրեղբօրորդին Տուղրիլին Ալփասան, և աւերեաց քսան և չորս գաւառս. զի էր զօրագլուխ սուլտանին, որ և զկնի մահուան նորա սուլտանացաւ. եկն դարձեալ հարիւր հազարաւ, և առ զՆոր քաղաք, զոր Վիրք Ախալ-քալաք ասեն, և զՍամշուլդէ. և առնու կին զդուստր Կիւրիկէի թագաւորին[2], և զդուստր քեռ թագաւորին Վրաց Բագրատայ։ Առնու և զԱնի, և հազար այր զենու 'ի փոս մի, և լոգանայ յարիւն, զոհ մեռելոց իւրոց արարեալ[3]։

Այլ ապա գայ 'ի խալիֆայէն դեսպան և արկանէ օղ ոսկի 'ի պարանոց նորա, և երկոտասան վարոց 'ի մի կա-

1. Ծանարացդ անուան ծագումն ծաղրական է, քանզի հնագոյն պատմիչք և աշխարհագիրք Թովմաս Արծրունի յԹ դարու, Խորենացի 'ի Ե րդ և Պտղոմէոս յԲ րդ յիշեն զԾանարս. ապա հեղինակիդ յիշածն գաղթական է ելեալ առ Ծանարս փախստեամբ յամիրապետէն։ Արաբացի պատմիչք 'ի Նէզարայ ումեմնէ յԾոմէնայ ասեն զնոսա ծագեալս, և զերկիր նոցին ընդ մէջ Տփխեաց և Դրանն Ալանաց, և զթագաւորս նոցա Սէնէքէրիպ կոչեն. զոր մերս քորեպիսկոպոս ասէ, որպէս և Յովհ. կաթողիկոս՝ Ձեծ քորեպիսկոպոս կոչէ, և զերկիր նորա՝ մասն Գուգարաց մերձ 'ի դրունս Ալանաց. զնոյն և Արաբացիք կոչեն ֆորխոկոշա, ֆորխոկոշաղ, ֆէրֆէռաղ։ Թըւի զերկոսեան միանգամայն վարեալ նոցա զիշխանութիւնս, զհոգևոր և զմարմնաւոր։

2. Կորիկէ Ա որդի Դաւթի Անհողնի։

3. Հին Օ. յաւելու, ասէն ոմանք։

րանն արհեպիսկոպոս ձեռնադրեցին երկոքեան կաթուղիկոսքն սուրբ ուխտին Հաղբատայ, տալով վիճակս յերկուց կողմանցն։ Այլ և զկնի մահուանն տեառն Սարգսի կաթուղիկոսի ես ձեռնադրել 'ի տեղին Փիլարտոսն զԹէոդորոս ոմն։

Ի սոյն աւուրս սպանաւ Բեստն¹ իշխանն Շիրակունի, որ վասն յոյժ լաւութեանն նեղեալ սիրով 'ի կայսերէ՝ եղև² հոռոմ. և տուաւ հայր խոստովանութեան նորա աբեղայ մի հոռոմ. և զի ոչ պահէր զօրէնս հոռոմոց, խեղդեաց զնա պիղծ կրօնաւորն 'ի քուն գըտեալ զնա միայն՝ 'ի բերդն իւր յԱնդրիոնն, զոր խնացեալ զօրացն նորա՝ գահավէժ առնեն զվիրագն անօրէն։ Իսկ զկայսրն Միքայէլ՝ փոխէ Վոտանիոտն ամ մի. և զկնի Մեսելիանոսն՝³ ամիս վեց. և ապա Ալէքս՝ պիտանի այր և խելացի։

Յորում աւուրս եղև նշան սոսկալի 'ի վանքն Պիզու, զոր շինեաց Գագիկ արքայ։ Արք երկու անապատաւորք եղեալ 'ի տեսլեան՝ եկին 'ի վանքն, և նախ քան զհարցն ասացին զոր տեսինն. մինն ասաց թէ տեսանէի, զի կանթեղ եկեղեցւոյ զմբեթին անկաւ յատակ եկեղեցւոյս, և ոչ շիջաւ լոյս նորա. և միւսն ասաց թէ տեսանէի զի անկաւ յերկնից աստղ մի, և լոյսն առաւել փայլէր յեկեղեցիս։ Եւ հայր վանիցն ասաց, տեսէք զի անկեալ է 'ի սուրբ խորհրդոյն. և վառեալ մոմեղէն և գնացեալ գտին մասն անկեալ 'ի սուրբ խորհրդոյն 'ի բեմին 'ի սուրբ պենտեկոստէին, յանզգոյշ առնէ. որ և զկնի երեք աւուր գտաւ 'ի սուրբ պենտեկոստէին. և զայն երեք օրն չէր անկեալ ոչ յաւելն և ոչ յոտս⁴, և գոհացան զԱստուծոյ։

Իսկ զտէրն Անւոյ զԳագիկ՝ որ չոգաւ 'ի Կոստանդնուպօլիս, շատ աղերսեալ Թէոդորին⁵ քեռն Զոյի, զի լիցի հոռոմ և այր նմա և թագաւորէ Յունաց, և

1. Բեստ Թուր. վէսթ (a veste ըստ Լատինաց, պաշտօնեայ ըզգեստատուրից), իշխան Շիրակունի, ծանօթ է առ Բիւզանդացիս, և բնիկ անունն Խաչատուր. այլ բերդն իւր Անդրիոնն անծանօթ, խնդրելի 'ի կողմանս Անտիոքու։

2. Հին Օ. կոփեցաւ։

3. Նիկեփոռ Վոտանիատ և Նիկեփոռ Բրիեն են յիշեալ կայսերքս։

4. Հինն յաւելու 'ի ծառոս անձառ խորհրդոյն։

5. Թէոդորա, այն որ նստաւ 'ի գահ ինքնակալութեան յամին 1054-1056։

զեր տղայ՝ տիրեաց մինչև 'ի ծագս երկրի ։ Այլ առ սա չոգաւ Փիլարտոսն և տկարացաւ 'ի հաւատն ։ Այլ Պոռզանն մեծ ամիրայն՝ հրամանաւ սուլտանին եառ զՈւռհա , և սպան արս ազնիւս 'ի փառաւոր իշխանացն Հայոց 'ի մատնութենէ քսու արանց ։

Ի սոյն աւուրս թագաւորն Պեծենեկաց[1] եկն վեց հարիւր հազարաւ 'ի Կոստանդնուպօլիս 'ի վերայ Աղեքսին . և քրիստոնէիցն աղօթեալ զաւուրս ութ , ջընջեցին զնոսա բովանդակ , արկանելով հուր 'ի սայլս նոցա որովք եկեալն էին ։

Ի նմին աւուրս յայտնեցաւ չարութիւն հոռոմ աբեղայի մի , որ պաշտէր զշունն . և մոլորեցոյց արս իբրև բիւր մի , և զմայր Աղեքսին , մինչ դնել մասն 'ի սուրբ խաչափայտէն Տեառն ծածուկ 'ի կօշկի որդւոյ իւրոյ 'ի ներքանս կոխել միշտ . զոր իմացեալ Աղեքսին կորոյս զամենեսեան , և զմայրն եհան 'ի տիկնութենէ (!) ։

ԿԲ. Ի հինգհարիւր քառասուն թուին մեռաւ Պօղոս կաթողիկոսն որ 'ի Մարաշ , զոր եդեալ էր Փիլարտոսն . և սուրբ և մեծ գիտնականն Գէորգ վարդապետն Հայոց , և թաղեցաւ 'ի Կամրջաձոր[2] առ Սամուելի վարդապետի ։ Այլ եղև միահեծան սուրբ աթոռն պատրիարգութեան . քանզի տէր Բարսեղ 'ի նմին ժամու ընկեց զկաթուղիկոսն Թէոդորոս յաթոռոյն , և առ 'ի նմանէ զքօղն և զգաւազանն և զսուրբ նշանն տեառն Պետրոսի . և շրջեալ 'ի Կեսարիա եկն յԱնտիոք , և անտի 'ի յՈւռհա . և լինէր ամենայն ուրեք խնդութիւն մեծ ։

Այլ խաղաղասէր սուլտանն դեղակուր եղեալ 'ի կընոջէն իւրմէ , վճարէր զկեանս իւր , 'ի հինգհարիւր քառասուն և մի թուին ։ Այլ լուեալ Պուզան ամիրային որ էր 'ի Կիլիկիա , դառնայ յՈւռհա . և տէր Բարսեղ

1. Պիծենակք կամ Բաչենեկք , թուրքք հալածեալք 'ի Խազրաց վտարեցան յայս կոյս Վոլկայ , և արշաւանօք կալան մինչև 'ի Դրանսիլուանիա և 'ի Մոլտաւիա , ստէպ պատերազմելով ընդ Ռուսս և ընդ Յոյնս ։

2. Կամրջաձոր վանք յԵրասխաձոր կամ յԱրշարունեաց գաւառի , ուր ծաղկէր Սամուէլ վարդապետ հեղինակ եկեղեցական գրուածոց և թղթոյն պատասխանւոյ առ Թէոդորոս մետրապօլիտ Մելիտինոյ , զոր գրեաց հրամանաւ Խաչկայ կաթողիկոսի ։ — Իսկ Գէորգ մեծ գիտնական ոչ է Մեղրիկն , այլ Ուռձեցին . սակայն գործք նորա չեն մեզ ծանօթք ։

երթայ յԱնի ։ Այլ Թաղեցաւ Մէլիք-շահն 'ի Մարանդ առ հօր իւրում Ալփասլանայ . որոյ էին երկու որդիք Բակիարուխ և Սափան կոչեցեալք . և Դուդուշն[1] եղբայր Մէլիք-շահին սուլտանացաւ 'ի կողմանս Յունաց . և Բէկիարուխն 'ի վերայ Պարսից և Հայոց ։ Որ և զքեռին իւր զԻսմայիլն արարեալ հէճուբ[2], կարի քաղցր և բարեմիտ առ Հայս . վասն որոյ խնամածեալ ազգիս՝ շինեցաւ աշխարհս . ազատեալ զվանորայս, և զամենայն եկեղեցականս ։ Իսկ Դուդուշն տիրեալ Միջագետաց՝ հարկանէր զԹագաւորն Արաբկաց զԲրեհիմն[3], և առեալ զամենայն բանակս նոցա հարըստանայր . և գայր առ նա գիր 'ի կնոջէն Բէկիարուխին, զի գնասցէ 'ի Պարս և լիցի նմա այր, և առցէ զամենայն աշխարհ ինքեան ։ Այլ նորա խնդացեալ ընդ լուրն խաղայ անթիւ բանակօք, և երթայ 'ի դաշտն Ասպահանայ, և յղէ առ նա Բէկիարուխն աղաչանս, զի տացէ նմա զԱսպահան, և այլ ամենայն տիեզերք նմա լիցին ։ Այլ ոչ կալեալ նորա յանձին, յարձակին 'ի միմեանս, և մեռանի Դուդուշն, և փախչի Ռատուան որդի նորա յՈւռհա, և նստի և նա սուլտան 'ի Հալպ և 'ի սահմանս նորա . և այլ ոմն յազգէ նորա Ալփիրակ կոչեցեալ՝ 'ի կողմն Յունաց սուլտանացաւ, և եկեալ յՈւռհա տիրել ջանայր նմա ։ Այլ Թորոս կիւրապաղատն սպան զնա դեղով զկնի աւուրց երեմնից ։

Ի նմին ամի մեռաւ սուրբ կաթուղիկոսն Թէոդորոս 'ի Հոնին, լի ամենայն առաքինութեամբ, և թաղեցաւ մօտ 'ի տէր Սարգիս ։

ԿԳ. Յայնմ ժամանակի եղև 'ի պատճառս մարախոյ և երաշտոյ սով սաստիկ, և 'ի յԱնի կարի իմն նեղութիւն մեծ . ուստի զմեռեալսն թաղել ոչ կարէին 'ի սովոյն և ոչ օրինացն հաղորդել . որ և այր մի ասէն քաջութիւն ցուցեալ և սէր առ Աստուած՝ թաղեաց վեց հազար անձինս, որում անուն էր Բեխ ։ Օ այսպիսի աղէտս լուեալ այր մի մեծատուն 'ի Պարսս, և

1. Դուդուշ նահապետ է Սուլտանաց Հալպայ և Դամասկոսի ։

2. Հէճուպ, հաճիպ حاجب ըստ Արաբացւոց, դռնապան կամ սենեկապետ ։

3. Իբրահիմ Թագաւոր Արաբկաց Թուի ոմն յիշխողաց անապատին Միջագետաց, թէ ոչ Եթովպացւոց ։

երամակ մի ուղտուց բարձեալ ցորենով գայր 'ի յԱնի, և ասէր, ոչ այլ ումեք տալ բայց տղայոց։ Զոր լուեալ բերէին զբազում յորդառատ արտասուօք, և նա յագեցուցանէր և կերակրէր զնոսա. և 'ի սպառել ցորենոյն ձայն արարեալ ծնողաց մանկանցն զի եկեսցեն համբուրեսցեն զուստերս և զդստերս իւրեանց։ Նա և իբրև կական բարձեալ մրմռքէին գրկախառնեալք, և ահա բարբառ քաղցր և բարի այրն բարբառեալ ասաց. Տարէք զտղայսդ ձեր, և գնացէք 'ի տունս ձեր փառաւորելով զտուողն բարեաց զԱստուած 'ի մեծութեանն իւրում, զոր և արարինն իսկ։

Զկնի անցանելոյ սովոյն, այր մի սկիւթական, որ 'ի վաղեաց ժամանակաց ղօղեալ կեայր առ Արկանօք, անուն գլխաւորին Եղխազի [1] կոչեցեալ, որ եկն եօթն հազարաւ ընդ միջոցս աշխարհի մինչև յԱնի քաղաք պատերազմաւ. և մեռանի անդ եղբայր նորա, որ նման էր Գողիադու հսկայի, 'ի Գրիգորոյ որդւոյ Վասակայ Թոռին Սպիրատին. որ զկնի աւուրց նահատակեցաւ 'ի Կաղզուանն, զերծուցեալ 'ի մահուանէ զամիրայն Անւոյ զՄանուչէ. և տարեալ թաղեցին զնա 'ի Կեչառուս. եղբայր տէր Բարսղի կաթողիկոսի. և Մանուչէ և ամենայն զօր բանակին Հայոց զկնի դիոյն։ Իսկ Եղխազի երթեալ ընդ Միջագետս առնու զՍրուսաղէմ 'ի Փռանգաց, հարկանելով նետ մի 'ի ձեղուն Յարութեանն, որ կայ մինչև ցայժմ 'ի նշան գործոյն։

Ի հինգհարիւր քառասուն և չորս Թուին Մուքման որդի Արդուխին, և ամիրայն Սամուսատայ Պալտուխն՝ որդին Ամիր-ղազէ՝ գան 'ի վերայ Ուռհայոյ. և դարձան լի ամօթով, զի կիւրապաղատն Թէոդորոս իմաստութեամբ և քաջութեամբ պահէր զքաղաքն. մինչև ոչ սուլտանն Պատուան կարաց հնազանդել զնա։ Դարձեալ 'ի հինգհարիւր քառասուն և եօթն

1. Եղխազի, է Օրդօք Էլղազի ամիրայ, յորմէ անուանի Թուրք Որդոքեան, զոր մերքս Արդուխ կոչէին, որք տիրեցին Խլաթայ և բազում այլոց քաղաքաց հարաւային Հայոց, Միջագետաց և Երուսաղէմի իսկ. բայց յառաջ քան զգալն Խաչակրաց, և ոչ որպէս հեղինակս ասէ 'ի ձեռաց Փռանկաց առեալ զԵրուսաղէմ, այլ Փռանկք 'ի սոցանէ, մանաւանդ թէ 'ի յաջորդաց նոցին 'ի զօրավարաց խալիֆային Եգիպտոսի։

թուին Կըլըճ Արսլան [1] սուլտանն արևմտից՝ թոռն Դանիշմէնդոյ՝ գնայ 'ի վերայ Մելտենոյ. և իշխան քաղաքին Գաբրիէլ [2] աներ կիւրապաղատին Ռուհայոյ՝ դարձոյց զնա անարգանօք։

ԿԴ. Յայսմ ժամանակի լինի բան մարգարէութեան սուրբ հայրապետին Ներսիսի՝ որ վասն ելից Փռանգաց. քանզի մինչ տիրէին Սկիւթացիքն Երուսաղեմի, և առնուին վարձս 'ի մտելոցն 'ի սուրբ գերեզմանն, դիպեցաւ կոմս մի փռանգ ազգաւ 'ի խռամն հարամզիլ և զայրանալ, և վասն այնր գանիլ, մինչև հանին զակն նորա զմի 'ի կապճացն և ընկեցաւ 'ի վայր. զոր առեալ եդ 'ի գրպանն, և տարեալ 'ի Հռոմ ցուցանէր. և նախանձու վառէր զքաջուսն։ Եւ ելանէին արք փառաւորք գլուխք զօրաց բազմաց, որոց անուանք էին այս [3]. Կոնդոփր, և Պաղտոյն՝ եղբայր նորա՝ յազգէ թագաւորաց. զոր ասեն ունել զթագն Վեսպիանու՝ որ աւերեաց զԵրուսաղէմ. և մեծ կոմսն Պայմունդ, և Տանկրի քեռորդի իւր, և կոմսն Զնջիլ. և Ռոպերտն՝ Որմնաց կոմսն. և միւս Պաղտոյնն, և Ջօսլին կոմսն. արք յաղթողք և բազմազօրք։ Յուղի անկեալք գան 'ի Բիւզանդիա. և սիրով անցեալք 'ի Ասիա՝ հարին զԿըլըճ Արսլանն միանգամ և երկիցս, և առին զՆիկիա, և եառուն յՄելեքսն. և ինքեանք գնացեալ ընդ Կիլիկէ՝ առին զԱնտիոք, և զամենայն ծով-

1. Կըլըճ Արսլան որդի Սիւլէյմանայ, որդւոյ Կուլթումուշայ, սուլտան Իկոնիոնի։

2. Ղաբրիէլ, է Գաբրիէլ իշխան հայ ըստ ոմանց, ըստ այլոց յոյն կամ յունահայ, աներ Պաղտուինայ թագաւորի Երուսաղեմի։

3. Աշխարհածանօթ առաջնորդք են առաջին խաչակրաց, Կոտոփրէ (Կոտըֆրուա տը Պույոն, Godefroy de Bouillon), և Պաղտին (Պոտուէն, Baudouin) եղբայր նորա, 'ի հանուոյ իւրեանց սերունդք առին Մեծին Կարոլոսի ինքնակալի. իսկ թագ և թուր Վեսպիանու՝ ըստ կարծեաց Մատթ. Ուռհայեցւոյ, յորմէ առնու հեղինակս։ — Պէմունդ (Boémond) որ դուքս եղև Անտիոքայ՝ որդի է հռչակելոյն Ռոպերդայ Կիշարայ։ — Տանկրի, (Դանգրետ, Tancrède) ոչ քեռորդի այլ հօրաքեռորդի Պեմոնդայ կարծի։ — Զնջիլ է կոմսն Ռայմոնտ Սէն-Ժիլ (Raymond de Saint-Gille)։ — Ռոպերդ կոմս Որմնաց (Ալամանաց) է կոմսն Նորմանդիոյ։ — Միւս Պաղտինն է Պոտուէն տը Պուրկ (Baudouin de Bourg) արեանառու առաջնոյն։ — Ջօսլին է Ժօսլէն տը Գուրդընէ (Josselin de Courtenay) որ յաջորդեաց զնիւս Պաղտին։

եզերսն և զՄշրուսաղէմ․ և եղին Թագաւոր, որպէս ծանուցանեն յոլովից պատմութիւնք ։

Նա այսու ժամանակօք եմուտ սուրբ խաչն Յունաց 'ի յԱնի․ այն որ 'ի յուրացմանն Վազգենի Վրաց առաջնորդի գաղթեցաւ 'ի խորշս լերինն Պարխարու, 'ի ձեռն սուրբ վանականին Անդրէասայ յաշակերտաց սրբոյն Սահակայ ։ Նա կացեալ անդ զեօթն ամ, և ապա ազդ արարեալ մամիկոնեանն Գրիգորոյ որդւոյ Հմայեկի՝ տարաւ 'ի Կապոյտն կոչեցեալ բերդ[1] և անդի փոխեցաւ 'ի Վանանդ, և կոչեցաւ Վանանդայ խաչ․ և 'ի բառնալ տանն Մամիկոնէից յանօրէնն Սուքմանայ՝ բերաւ յԱնի, 'ի հայրապետութեանն տեառն Բարսղի․ և կարգեցաւ նմա տօն կիւրակէն՝ որ զկնի ութօրէից Խաչավերացն տօնի ։

Նոյն 'ի հինգհարիւր քառասուն և եօթն թուին Պաղտոյն կոմսն[2] էառ զԹլպաշար և զՈւռհա ։ Նա 'ի միւս ամին սպասալարն Բէկիարուքին եկեալ յԱնտիոք 'ի վերայ Փռանգին, և հարաւ 'ի նոցունց իբրև բիւրս ութ․ քանզի գտին 'ի ձախակողմն սրբոյն Պետրոսի զգեղարդն՝ որով Հրեայքն խոցեցին ընդ կատականս զպատկերն փրկչական, ուստի ել արիւն և ջուր, որպէս 'ի կողէն Տեառն․ և պատուեցաւ զէնն որպէս աստուածամուխն այն՝ զոր Հայք ունին․ որով զօրացեալ Փռռանգքն՝ հարին զթշնամիս իւրեանց, և ապա առաքեցին զնա Ալեքսին ։

ԿԵ․ Ի հինգհարիւր քառասուն և ութ թուին մեռաւ Կոստանդին մեծ իշխանն Հայոց՝ որդին Ռուբինայ, որ էր յազատաց[3] Գագկայ արքայի, ուր ակնյայտնի ցուցաւ նշան մահու նորա ։ Զի 'ի նմին աւուր անկեալ շանթ 'ի յերկնից՝ հարկանէր զարծաթի սկըտեղն՝ որ կայր առաջի նորա 'ի բերդն Վահկա[4] կոչեցեալ․ և մեռաւ այր մի առ ժամայն․ յետոյ ապա և ինքն իսկ, որ բռնացեալ ունէր զլեառն Սեաւ[5] ։ Նա թողու երկու որդի, զԹորոս և զԼեւոն ։

1․ Կապոյտ բերդ յԱրշարունիս ։

2․ Եղբայրն Գոդֆրուայ է առող Թլպաշարայ․ սա նշանակէ և կոչի Թիլ Աւետեաց, և է բերդաքաղաք յարևմտից հարաւոյ Հռոմկլայ և Գիրիճէկայ, յաջմե Եփրատայ ։

3․ Հին Օ․ հարազատ ։

4․ Վահկայ բերդ ոչ հեռի 'ի Սսոյ ։

5․ Սևու Լեառն 'ի Կիլիկիա ,

Թուրքն Կըլիճ Արսլան [1] սուլտանն արեւմտից՝ Թոռն Կոտլըմշոյ՝ գնայ 'ի վերայ Մելտենոյ. եւ իշխան քաղաքին Գաւրիլ [2] աներ կիւրապաղատին Ուռհայոյ՝ դարձոյց զնա անարգանօք:

ԿԴ. Յայսմ ժամանակի լնու բան մարգարէութեան սուրբ հայրապետին Ներսիսի՝ որ վասն ելից Փռանգացն. քանզի մինչ տիրէին Սկիւթացիքն Երուսաղէմի, եւ առնուին վարձս 'ի մտելոցն 'ի սուրբ գերեզմանն, դիպեցաւ կոմս մի փռանգ ազգաւ 'ի խռանն հարամղիլ եւ զայրանալ, եւ վասն այնր գանիլ, մինչեւ հանին զակն նորա զմի 'ի կապճացն եւ ընկեցաւ 'ի վայր. զոր առեալ եդ 'ի գրպանն, եւ տարեալ 'ի Հռոմ ցուցանէր. եւ նախանձու վառէր զքաղաքն: Իսկ եկանէին արք փառաւորք գլուխք զօրաց բազմաց, որոց անուանք էին այս [3]. Կոնդոփր, եւ Պաղտոյն՝ եղբայր նորա՝ յաջորդէ թագաւորաց. զոր ասեն ունել զթագն Վեսպիանու՝ որ աւերեաց զԵրուսաղէմ. եւ մեծ կոմսն Պայմունդ, եւ Տանկրի քեռորդի իւր, եւ կոմսն Զնջիլ. եւ Ռոպերտն՝ Որմնաց կոմսն. եւ միւս Պաղտոյնն, եւ Ջօսլին կոմսն. արք յաղթողք եւ բազմազօրք: Յուղի անկեալք գան 'ի Բիւզանդիա. եւ սիրով անցեալք 'ի Նիկիա՝ հարին զԿըլիճ Արսլանն միանգամ եւ երկիցս, եւ առին զՆիկիա, եւ ետուն յԱլէքսն. եւ ինքեանք պնդեցան ընդ Կիլիկէ՝ առին զԱնտիոք, եւ զամենայն ծով-

1. Կըլըճ Արսլան որդի Սիւլէյմանայ, որդւոյ Գութուլմուշայ, սուլտան Իկոնիոնի:

2. Ղաւրիլ, է Գաբրիէլ իշխան հայ ըստ ոմանց, ըստ այլոց յոյն կամ յունահայ, աներ Պաղտուենայ թագաւորի Երուսաղեմի:

3. Աշխարհածանօթ առաջնորդք են առաջին խաչակրաց, Կոտոփրէ (Կոտըֆրուա տը Պույոն, Godefroy de Bouillon), եւ Պաղտոյն (Պոտուէն, Baudouin) եղբայր նորա, 'ի հանուոյ իւրեանց սերունդք առին Մեծին Կարոլոսի ինքնակալի. իսկ Թագ եւ Թուր Վեսպիանու՝ ըստ կարծեաց Մաթ. Ուռհայեցւոյ, յորմէ առնու հեղինակս:— Պեմունդ (Boémond) որ դուքս եղեւ Անտիոքայ՝ որդի է հռչակելոյն Ռոպերդայ Կիշարդայ:— Տանկրի, (Դանգրետ, Tancrède) ոչ քեռորդի այլ հօրաքեռորդի Պեմոնդայ կարծի:— Զնջիլ է կոմսն Ռայմոնտ Սէն-Ժիլ (Raymond de Saint-Gille):— Ռոպերդ կոմս Որմնաց (Ալամանաց) է կոմսն Նորմանդիոյ:— Միւս Պաղտոյնն է Պոտուէն տը Պուրկ (Baudouin de Bourg) արեանառու առաջնոյն:— Ջօսլին է Ժոսլէն տը Կուրդընէ (Josselin de Courtenay) որ յաջորդեաց զմիւս Պաղտին:

եզերսն եւ զԵրուսաղէմ. եւ եդին Թագաւոր, որպէս ծանուցանեն յոլովից պատմութիւնք :

Եւ այսու ժամանակօք եմուտ սուրբ խաչն Եունեայ 'ի յԱնի. այն որ 'ի յուրացմանն Վազգենի Վրաց առաջնորդի գաղթեցաւ 'ի խորշս լերինն Պարխարու, 'ի ձեռն սուրբ վանականին Անդրէասայ յաշակերտաց սրբոյն Սահակայ : Եւ կացեալ անդ զեօթն ամ, եւ ապա ազգ արարեալ մամիկոնեանն Գրիգորոյ որդւոյ Համայեկի' տարաւ 'ի Կապոյտն կոչեցեալ բերդ[1] եւ անդի փոխեցաւ 'ի Վանանդ, եւ կոչեցաւ Վանանդայ խաչ. եւ 'ի բառնալ տանն Մամիկոնէից յանօրէնն Սուքմանայ' բերաւ յԱնի, 'ի հայրապետութեանն տեառն Բարսղի. եւ կարգեցաւ նմա տօն կիւրակէն' որ զկնի ութօրէից Խաչավերացն տօնի :

Այլ 'ի հինգհարիւր քառասուն եւ եօթն թուին Պաղտոյն կոմսն[2] էառ զԹլպաշար եւ զՈւռհա : Եւ 'ի միւս ամին սպասալարն Բէկիարաւքին եկեալ յԱնտիոք 'ի վերայ Փռանգին, եւ հարաւ 'ի նոցունց իբրեւ բիւրս ութ. քանզի գտին 'ի ձախակողմն սրբոյն Պետրոսի զգեղարդն' որով Հրեայքն խոցեցին ընդ կատականս զպատկերն փրկչական, ուստի ել արիւն եւ ջուր, որպէս 'ի կողէն Տեառն. եւ պատուեցաւ զէնն որպէս աստուածամուխն այն' զոր Հայք ունին. որով զօրացեալ Փռանգքն' հարին զթշնամիս իւրեանց, եւ ապա առաքեցին զնա Ալեքսին :

ԿԵ. Ի հինգհարիւր քառասուն եւ ութ թուին մեռաւ Կոստանդին մեծ իշխանն Հայոց' որդին Ռուբինայ, որ էր յազատաց[3] Գագկայ արքայի, ուր անյայտնի ցուցաւ նշան մահու նորա : Զի 'ի նմին աւուր անկեալ շանթ 'ի յերկնից' հարկանէր զարծաթի սկըտեղն' որ կայր առաջի նորա 'ի բերդն Վահկա[4] կոչեցեալ. եւ մեռաւ այր մի առ ժամայն. յետոյ ապա եւ ինքն իսկ, որ թռնացեալ ունէր զլեառն Սեաւ[5]: Եւ թողու երկու որդի, զԹորոս եւ զԼեւոն :

1. Կապոյտ բերդ յԱրշարունիս :

2. Եղբայրն Կոտոֆրուայ է առող Թըլպաշարայ. սա նշանակէ եւ կոչի Թիլ Աւետեաց, եւ է բերդաքաղաք յարեւմտից հարաւոյ Հռոմկլայ եւ Պիրիճիկայ, յաջմէ Եփրատայ :

3. Հին Օ. հազատաց :

4. Վահկայ բերդ ոչ հեռի 'ի Սսոյ :

5. Սեաւ Լեառն 'ի Կիլիկիա ,

Ի հինգհարիւր քառասուն և ինն թուին Դանիշմանն [1] տէրն Սեբաստիոյ, զորմէ ասեն յազգէն Հայոց, եկեալ 'ի վերայ Մելտենոյ, և Պեմունդն և Ռաջարդն՝ [2] որ կային յՈւռհա, ելին ընդդէմ նորա, և ըմբռնեցան 'ի նմանէ և եդան 'ի բանտի ։

Ի հինգհարիւր և յիսուն թուին յաւուր շաբաթու ոչ վառեցաւ լոյսն յԵրուսաղէմ, այլ յօր կիւրակէին 'ի յինն ժամուն, և զարմացաւ ամենայն երկիրն ։ այլ պատճառն էր անուղղայ գործք Փռանգին, զի կանանց ետուն զսպասաւորութիւն աստուածընկալ գերեզմանին ։

Իսկ 'ի նոյն ամի գայր կոմսն մեծ Պետաւանն [3] կոչեցեալ երեսուն բիւրօք 'ի Կոստանդնուպօլիս, և հրապարտ բանիւք ետպարքոս կոչելով նախատէր զԱլեքսն, և առնոյր զօրս 'ի նմանէ յուղարկաւորս ընդ երկիրն Թուրքաց ։ Իսկ նոցա նենգ գործեալ հրամանաւ իւրեանց թագաւորին, տարան ընդ անջրդի անապատ, և տկարացուցեալ զնոսա՝ մատնեցին Դանիշմանայ և զօրացն Խլիճ Ասլանայ, մինչ զի երեսուն արամբ միայն զերծեալ Պետաւանն՝ անկաւ յԱնտիոք ։ և յԵրուսաղէմ հասեալ և ուխտեալ՝ դարձաւ անդրէն 'ի Հռոմ ։ Ի հինգհարիւր յիսուն և մի թուին՝ տասն ազգ քրիստոնէից թիւր զատիկ արարին 'ի ծաղզարդարն, բայց 'ի Հայոց և յԱսորւոց ։ 'ի չար սերմանց Իռոնի [4] ։

Ի հինգհարիւր յիսուն և երկու թուին՝ իշխանն Հայոց Գողն կոչեցեալ Վասիլ [5] գնեաց զՊեմունդն օգնելով 'ի գինս տասն հազար դահեկան, որ գնեցաւ հարիւր հազարաւ ։ Ի նոյն ամի կոմսն Ուռհայոյ Պաղ-

շար Ամանոս լերանց, ընդ մէջ Ասորւոց և ծովուն ։

1 ։ Դանիշման է Տէնիշմէնտ, دانشمند, որ նշանակէ գիտուն, ընթերցող ։ զի որդի էր գիտնոյ ուրումն Թուրքի բնակելոյ 'ի կողմանս Սեբաստիոյ, իբրու յամի 1084 ։ և սերունդ նորա տևեաց դարս բովանդակ ։ Ոչ յազգէն Հայոց, այլ Թուրք ծնեալ յերկրին Հայոց ։

2 ։ Ռաջարդ է Ռիշար (Richard du Principat) ազգական Պեմունդեայ ։

3 ։ Պետաւանն մեծ կոմս է Գուլիելմոս Թ կոմս Բուատիէի (Guillaume IX comte de Poitiers) ։

4 ։ Ի տօմարագիտութեանն գրեցեն խնդրողք զպատճառս թիւր և ուղիղ զատկաց, և արդարանան դատափետեալքն 'ի հեղինակէդ ։

5 ։ Գող Վասիլ ժամանակակից Ռուբինի Ա, տիրէր 'ի կողմանս Մարաշոյ ։ վասն յանկարծօրէն 'ի վերայ թշնամեացն հասանելոյ՝ Գող կոչեցաւ, զոր Լատին պատմիչք ժամանակին ծեքանօք կոչեցին Covasilius կամ Corouassilius.

տոյնն գնաց 'ի վերայ Թուրքին 'ի սահմանս Մերտնայ. և կալաւ զՍըլխալար[1] ամիրայն, և ած 'ի յՍուհա յոլով գերութեամբ, և հազարս հազարաց ոչխարս: Յորում աւուրս գայր պատրիարգն Բարսեղ 'ի յԱնւոյ, և յոյժ պատուեալ լինէր 'ի կոմնէն գեօղջ և գանձիւք:

Ի հինգհարիւր յիսունն և երեք Թուին մեռաւ Դանըշմանն, Թողլով երկոտասան որդիս. և առ զիշխանութիւնն աւագն Ղազի: Եւ 'ի նմին ամի մեռաւ Բէգիարուխ սուլտանն, և առ զտեղի նորա եղբայր իւր Տափար[2]: Եւ 'ի սոյն աւուրս առ զՄարաշ Ջօսլինն. և իշխանն Յունաց որ կայր անդ՝ Թաթուլն՝ ծախեաց զպատկեր Տիրամօրն՝ Թորոսոյ որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբէնի յոլով ոսկւոյ և արծաթոյ:

Ի հինգհարիւր յիսունն և չորս Թուին 'ի շփոթել իշխանութեանն Պարսից, յարեաւ ամիրա մի Ղզիլ անուն սկիւթացի, էառ զաւանն Լօռէ, և գնայ մտանէ 'ի Դուին բռնութեամբ ուժոյ, սպանեալ զԱբունասր զեղբայրն Մանուչէհի: Եւ գնացեալ Մանուչէհի առնու զօր 'ի դրանէ արքային Պարսից, և գայ սպանանէ զՂզիլն 'ի վերայ գերեզմանի եղբօր իւրոյ, և զԴուին տայ 'ի ձեռս Պարսից:

ԿԶ. Յայնմ ժամանակի պատրիարգն Բարսեղ նեղեալ յազգի ազգի շփոթմանէն գնաց յաթոռն իւր յԱնի. և իսկոյն հասանէ նմա խնդիր 'ի տէր Գրիգորիսէ Պահլաւէ, որ և Վահրամն, Վկայասէր կոչեցեալ, եթէ հասեալ է ժամանակ իմ, եկ յուղարկեա զիս առ Տէր: Եւ նա ոչ յապաղեալ յուսով վերջին օրհնութեանն, և պատահէ նմա փորձութիւն ինչ սակաւ 'ի ճանապարհին 'ի բերդն Մենծկերտոյ[3] մօտ 'ի Բալու, 'ի յունականացն որ անդ՝ որք կամեցան կողոպտել զնոսա. բայց նա քաջասրտաբար արհացեալ ոչ ետ ըստ կամաց իւրեանց առնուլ, այլ զոր ինքն Թողացոյց.

1. Ուլու Սալար կամ Սաղըր Թուխ զօրավար կամ իշխան, 'ի ձեռանէ Որդոքեանն Էլղազեայ տեառն Մերտինու:

2. Տաֆար Մուհամմէտ սուլտան Պարսից:

3. Մենծկերտ 'ի գաւառին Ծոփաց Հահունեաց, յայժմեանս Զարսանճագ: — Ծովակն Թուի ոչ Ծովք լիճ (Կէօլճիւկ), այլ լճակ մի փոքրիկ մերձ 'ի Բալու, որ ոչ նշանակի յաշխարհացոյցս:

զաւորն և Պերոզան, առին վերստին զքաղաքն և մաշեցին սրով և կողոպտեցին. և Պերոզան ժառանգեաց զտեղին։

Ի հինգհարիւր յիսուն և ինն թուին Մամտուտն[1] սպասալարն Պարսից՝ աւերեաց զամենայն երկիրն Ուռհայոյ կոտորածով և գերութեամբ, և ՚ի սուգ նստոյց զամենայն քրիստոնեայսն։

Ի նմին ամի ՚ի ժամանակս ձմերանի ՚ի մթին գիշերի՝ անկաւ հուր ՚ի բարձանց ՚ի ծովն[2] Սապուրական. և գոչեցեալ ծովուն անկաւ զցամաքաւն. և դարձաւ ծովն ՚ի գոյն արեան, և մեռան ձկունքն. և ՚ի լուսանալ առաւօտուն կուտեալ կային առ ցամաքաւն իբրև զփայտակոյտս անտառաց։

Իսկ ՚ի հինգհարիւր վաթսուն թուին մեծ իշխանն Հայոց, կորովի իմաստութեամբ իւրով էառ զբերդն Կինտռօսկաւիս[3], ուր սպանին զՊագիկ Շահնշահ։ Եւ զի կենդանի էին սպանողք թագաւորին՝ որդիքն Մանդալէանի՝ երեք եղբարք, եսպան զնոսա չարչարանօք. և էառ զթուրն և զհանդերձս թագաւորին, և զգանձն ամենայն գաւառին՝ որ կայր անդ ՚ի պահեստի վասն անառ ամրութեան դղեկին. և խաչ և պատկեր ոսկի՝ բազում յոյժ. և տարեալ զբովանդակն ՚ի Սահկայն՝ գոհանայր զԱստուծոյ, և կացոյց յիւրոցն պահապան բերդին։

1. Մամտուտն է Մաւտուտ որդի Ալթուն-Թէքինայ, զօրավար Տափար սուլտանի։

2. Մատթ. Ուռհայեցի ասէ և երկրին հերձոտեալ յեզերս ծովուն, և թուեցուցանէ ստորջրեայ հրաբղխի ժայթքումն, քան մեծի օդաքարի անկումն։

3. Կինտռօսկաւիս բերդ ոչ յիշի առ աշխարհագիրս. և զի այլ պատմիչք ՚ի Կիզիստռա ասեն ըզԳագկայ սպանումն, երկոքին մի են, կամ առաջինն է բուն բերդին անուն և միւսն աւանին. որ յոմանց համարի նոյն ընդ Կիւպիստռայ՝ ընդ մէջ Կիլիկեան դրանց և Տիանեայ, յայժմեանս Գարամանն. և յայլոց որիշ և մերձ ՚ի Մաժակ։ Հեթում պատմիչ ՚ի Լիւկանդոն գաւառի ասէ զբերդն. իսկ գաւառդ այդ ստէպ յիշատակեալ ՚ի մերոցս և ՚ի Բիւզանդացւոց՝ է Լականիա գաւառ հին, յարևելեան հիւսիսային ծայր Կիլիկիոյ, սահմանակից Կապպադովկիոյ և Կոմագենիոյ, այսինքն Եփրատացւոց։ Արդ թուի Կիզիստռա որիշ ՚ի Կիւպիստռայ, և զոյգ առաջնոյն կամ մերձաւոր նմին բերդն եղերակոն ՚ի լեռնասահմանին Տաւրոսի, որ բաժանէ ընդ Կապպադովկիա և ընդ Կիլիկիա, և հայի ՚ի դաշտն Արգէոսի. զի և այլ պատմիչ ՚ի սահմանս Արծիաս դաշտի ասէ զբերդն, և մերձ ՚ի Զկրնջուր երկիր. իսկ արդ ծանօթ է հովիտ Պալըգասու գետոյ ՚ի սահմանս Կիւրիւնի։

Իսկ պատրիարգն Ներսէս այլ ոչ դարձաւ 'ի յԱնի, այլ անդէն կեցեալ ժամանակս ինչ՝ ապա եդ 'ի մտի երթալ յԵրուսաղէմ։ Եւ հրաւիրեալ զեպիսկոպոսունս և զվանորեայս երկրին և զիշխանսն գալ 'ի տօն վարդավառին, ձեռնադրել զԳրիգորիս յաստիճան առաքելական. զի ինքն աներկբայ զառաջին եդեալ ճանապարհն վճարեսցէ։ Եւ պատահեալ նմա որոգայթ ինչ 'ի վանքն՝ որ Շուղրն[1] կոչի, շինելով տուն, որ և 'ի վեր տանելն զհեծանն, զերծեալ 'ի ձեռացն անկաւ 'ի վերայ, և հրաւիրեաց մահու։ Սակայն կեցեալ զկնի զաւուրս հինգ, տայ Գրիգորի զաստիճանն, և ինքն վճարի, ուր և թաղեցաւ անդէն 'ի հինգհարիւր վաթսուն և երկու թուին։ Իբրև լուաւ զայս Դաւիթ[2] ոմն որդի Թոռնկայ 'ի կղզւոջն Աղթամարայ, արարեալ ժողով եպիսկոպոսաց հնգից ձեռնադրեցաւ կաթուղիկոս, պատճառելով եթէ Սահանիկ կաթուղիկոս եկն առ Աբուսահլ որդի Գագկայ 'ի Ձորոյվանս՝[3] և անդ վախճանեցաւ. և կայր անդ սեղան պատարագի սրբոյն Գրիգորի, և գաւազանն և գօտին մաշկեղէն, և հողաթափ սրբոյ Հռիփսիմեայ և պերեզոտն ներկեալ արեամբ, և շուրջն՝ որ է դաստառակ, մնացեալ անդ 'ի ժառանգաւորաց. և 'ի ժամանակս հալածանացն ամբարձաւ 'ի կղզին Աղթամարայ։ Եւ զի ասեն աթոռ է սա թագաւորացն Արծրունեաց և վայել է լինել և պատրիարգ։ Սակայն ոչ եղև ընկալեալ, թէ և շատից եղև աշխատ ընծայիւք և աղաչանօք, մանաւանդ 'ի յԱնւոյ գլխաւորացն. որոց գրէ մեծ շնորհակալութիւն օրհնութեամբ պատրիարգն Գրիգորիս ամենայն վանորէիւք Սեաւ լերինն, և շրջակայ եպիսկոպոսացն ձեռագրով։

1. Շուղր անապատ յարևմտից հարաւոյ Մարաշու խնդրելի է։

2. Դաւիթ՝ որ առաջնորդ համարի կաթուղիկոսաց Աղթամարայ՝ սերունդ է զարմի թագաւորաց Վասպուրականի. յորոց և յիշեալդ Աբուսահլ որդի Աշոտոյ երիցու եղբօր Գագկայ՝ և ոչ սորա։ Իսկ կաթողիկոսութիւն Աղթամարայ երկու ևս դարուք երիցագոյն է քան զկարծեցեալն 'ի հասարակաց, հաստատեալ 'ի Գագկայ թագաւորէ յամի 921. և յառաջնոյ կաթողիկոսէն, որ է Տէր Եղիշէ եղբօրորդի նորին Գագկայ, մինչև ցայժմ անընդհատ կարգին շարք կաթուղիկոսացն 'ի դիւանս Աղթամարայ։

3. Ձորովանք որ և Սալնապատ, 'ի սահմանս Վանայ քաղաքի։

Բայց մինչ կենդանին էր տէր Բարսեղ, մեռաւ պարոն Վասիլն մեծ իշխանաց իշխանն, որ Աստուծոյ յաջողելովն տիրեալ էր բազում բերդից և գաւառաց. և հոգաց զտունն նորա պատրիարգն Բարսեղ, և ետ զիշխանութիւնն 'ի տղայ Վասիլն, ձեռնասուն մեծ Վասլին՝ յազգէ կամսարական։ Զի տուն Վասլին էր յայնժամ հաւաքարան Թագաւորազանց և ազատաց Հայոց, և աթոռ հայրապետաց։

Ի նմին ամի մեռանէր մեծ կոմսն Անտիոքու Տանկրի քրիստոսասէրն և իրաւադատն. և առ զիշխանութիւնն Ռոճէր քորորդին իւր։

ԿԷ. Ի հինգհարիւր յիսուն և երեք թուին 'ի մարերի երկոտասանն՝ դողաց երկիր[1] հանդերձ աղխողորմ ձայնիւ որ գայր 'ի լերանց և 'ի դարաւփուլ վիմաց, և օրն էր կիւրակէ և ձայնն վսա. վասն որոյ և կարծեցաւ թէ օրն է կատարած աշխարհիս. և փլան յոլով քաղաքք և մեռան քառասուն հազար անձինք, զոր թուել կարացին։

Ի նմին ամի մեռաւ Գէորգ վարդապետն մականուն Մեղրիկ կոչեցեալ սակս քաղցրուսոյց վարդապետութեանն, նորոգօղ սուրբ ուխտին Դրազարկուն[2], որ էր 'ի Սասուրական գաւառէ 'ի յԱնալիւր կոչեցեալ գեղջէ, սուրբ և սքանչելի և մեծ ճգնաւոր։ Իսկ 'ի գալ միւս ամին, անկաւ հուր յերկնից 'ի ճէմիայն Ամթայ, որ է մնիրայն հաւաքման մլիմանաց, և այրեաց զքարաշէն յարկն և ելանէր բոցն մինչև յերկինս։

Ի հինգհարիւր յիսուն և հինգ[3] թուին Թորոս եղբայր Լևոնի որդի Կոստանդեայ՝ կալեալ զտղայ Վասիլն ետ 'ի Պաղտոյնն 'ի կոմսն Ուռհայոյ, և նա չարչարեալ զնա էառ զամենայն երկիր նորա, և ելաւ աշխարհն 'ի Հայոց։ Իսկ Վասիլն գնաց 'ի Կիլիկէ առ աներն իւր Լևոն, և անտի 'ի Կոստանդինուպօլիս. և պատուեցաւ 'ի կայսերէ ազատովքն իւրովք։ Իսկ 'ի միւս այլ ամին գնայ Պաղտոյն 'ի Աղէպն[4] 'ի վերայ Ա-

1. Սասանութիւնս մեծ եղև 'ի կողմանս Եփրատացւոց և Մարաշոյ, որպէս պատմէ Մատ. Ուռհայեցի։

2. Դրազարկ անուանի մենաստան Կիլիկիոյ և քնարան Թագաւորաց Ռուբինեանց, յարևմտակողմն Սսայ խնդրելի է և հետաքննելի։

3. Հին. Օ. հինգ հարիւր յիսուն և եօթն։

4. Աղէպ, Ախսիպ, ուռն ամուր

պըլղարիպին՝ Հայոց իշխանին, որդւոյ Վասակայ [1], եղ-
բօր Լիկոսին, որ էին տեարք հազար զօրականի. որ
յառաջ ունէին զԹլպաշարն և զՊիրն, առեալ 'ի
Թուրքաց մեծաւ քաջութեամբ. զոր 'ի խսար արկեալ
ամ մի, էառ 'ի նմանէ զբովանդակն. և նա գնաց առ
Թորոսն: Նոյնպէս քակեաց զմիւս իշխանն որ բնա-
կեալ էր յՈւռընդան՝ [2] զՐոգարատ, և զԿոստընդին
տէրն Կառկառայ [3], զոր մեռոյց 'ի կապանս 'ի բերդին
Սամուսատ:

Ի հինգհարիւր վաթսուն և եօթն թուին մեռաւ
Թագաւորն Երուսաղեմի Պաղտոյնն, և առ զԹագն
միւս Պաղտոյնն կոմսն Ուռհայոյ: Ի նմին ամի մեռաւ
Տափարն սուլտանն Պարսից, որ և մերձ 'ի մահ եղեալ՝
ետ սպանանել զաւագ կինն իւր զՊոհար խաթունն,
որ ունէր ասէն առաջի իւր ութսուն [4] կուսանս 'ի սպա-
սու ինքեան Թագ 'ի գլուխ, և էր տէր զօրաց բազմաց,
յորոց պաղտ զենուլ ետ. զի մի, ասէ, արասցէ այր զեղ-
բայրն իմ, որ ունէր զխորին աշխարհն Պարսից. զՄէզ-
կան [5] քաղաք, և զԽզնէ, որ ինըսուն աւուրբ ճանա-
պարհաւ անդր է քան զԽօպահան. և զաթոռն տայր
յաւագ որդին 'ի Մահմուտն, և զկըտսերն՝ զՄէլիքն՝ [6]
գնէր տէր Գանձակայ Հայոց: Այլ 'ի գալ տարւոյն՝
մեռաւ Ալեքսն, և առ զԹագն որդին իւր Փեռփեռօ-
ժէն, որ եղև բարեմիտ առ Հայս. և մեղադրէր հօր
իւրում, որ մոլեալ 'ի սուտ առաջնորդաց, կրկին մկըր-
տելով խաչէր կրկին զՏէրն:

ԿԸ. Յայնմ ժամանակի զօրանայր Գուրիթ Թա-
գաւորն Վրաց որդի Գէորգեայ, որդւոյ Բագարատայ.
և առ զՏփխիս 'ի Պարսից. և եհար զՄէլիք զսուլ-

յաջմէ Եփրատայ, ընդ մէջ Հռոմ-
կլայ, Պիրայ, Թլպաշարայ և Այն-
Թապայ:

1. Վասակ Պահլաւունի է հօր-
եղբայր Ս. Ներսէսի Շնորհա-
լւոյ:

2. Արևընդան Թուի յաջմէ Ե-
փրատայ, յարևմտից Այնթապայ
և Քիլիսայ, մերձ 'ի Կուրիս (Խռ-
բոս) քաղաք, ըստ Չամչեան հօր:

3. Հին օր. Ն, որ է ըղէփհարէու:

4. Կարկառ նովին անուամբ
ճանաչի յարդ, բերդաւան ամուր
յեզր Եփրատայ յաջմէն, 'ի հիւ-
սիսոյ վերոյնշանակեալ տեղեաց,
ուր և հուն է գետոյն:

5. Օզկան է Օզքէնտ քաղաք
առ Սիհուն գետով, 'ի հիւսիսոյ
Սմրղանտայ:

6. Մէլիք Տօղրուլ, որ հակա-
ռակութեամբ կալաւ զաթոռ սուլ-
տանութեան Պարսից, առ կենդա-
նեաւ եղբօրն:

տանն Գանձակայ ՚ի հարուածս սաստիկս. և հնգհարիւր արս սրահանգս բարձրացոյց ՚ի փայտ մինհու ՚ի Տփխիս քաղաքի։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ, զի մեռեալ էր Մանուչէ՝ ամիրայն Անւոյ, և Ապլուար որդի նորա տիրէր նմա, այր անարի և կնամարդի, որ կամեցաւ վաճառել զԱնի վաթսուն հազար դենարի ՚ի վերայ Կարուց ամիրային. և ետ բերել նալ[1] ծանրագին և բարձրահասակ ՚ի Խլաթայ, և դնել ՚ի վերայ գմբեթի կաթուղիկէին, փոխելով զեդեալն յառաջնոցն. վասն որոյ սրտառեալ քրիստոնէիցն՝ կոչեն զԴաւիթ, և տան ՚ի ձեռս նորա զքաղաքն Անի. և ընկեցեալ ըզզէնն ատելի ՚ի պատուական գլխոյ կաթուղիկէին, զոր ունէր վաթսուն ամ վասն մեղաց մերոց համբերելով՝ եդին զպսակն զարդու, և զԹագն Յիսուսի՝ զպարծանքն Պօղոսի, զփրկութեան մերոյ արեգակն, զխաչն աստուածընկալ. և հարեալ զժամահարն առ խաչին՝ դաւանեցին Աստուած զխաչեալն ՚ի փրկութիւն հաւատացելոց։ Իսկ Թագաւորն զԱբուլէթ[2], և զորդին իւր զԻւանէ թողեալ ՚ի յԱնի՝ դառնայ յերկիր իւր, ընդ իւր տանելով զԱպլուար որդւովք իւրովք, որք անդէն մեռան և ոչ ևս դարձան։ Նա՝ ընդարձակեալ Դաւիթ զսահմանս Վրաց, առեալ զՈւխթիս[3] և զսահմանս իւր, և զԳագ, և զՏէրունականն, և զՏայուշ և ըզԿայեան և զԿայծոն, և զԼօռէ և զՏաշիր, և զՄահկանաբերդ, և զբոլոր իշխանութիւնն Հայոց Կիւրիկէի և Աբասայ, հնազանդէր և զլեառն Կովկասու, և ըզԹագաւորութիւնն Սոնաց[4], զՄրաճուլք, և զՃաքէթ, և զԴուալէթ, զՀերէթ, և մինչև ցծովն Կազբից և ցՀաղբանդ[5], և ցՇապուրան[6] քաղաք։ Խնամածեալ

1. Նալ, نعل ըստ Թուրքաց, պայտ. զի լուսնաձև է՝ իբրև նշան մահմետականութեան համարէր։

2. Աբուլէթ յՈւռպէլեան տոհմէ։

3. Ուխթիք, այժմ Օլթի, ՚ի Տայս։ Այլք ՚ի տեղեացդ են ՚ի սահմանակցութեան Գուգարաց և Ուտիոյ, և ՚ի հիւսիսոյ Սիւնեաց և Արցախոյ։

4. Սոնաց թագաւորութիւն է Սուանք, Սուանէթ, ՚ի հիւսիսոյ արևելից Եգերացւոց։ — Մըէճուլք մասն են Ռաճայ, յելից հարաւոյ Սուանաց։ — Ճէքէթ կամ Ճէք են Չէրքէզք, յարևմտից հիւսիսոյ Ափխազաց, յեզեր Սևու ծովու։ — Դուալէթ, Դուալ, յարևելից Ռաճայ։ — Հէրէթ կամ Հէր, յանուն եղբօր Հայկայ, մասն Կախեթու, Աղնաւ կոչեցեալ այժմ, ընդ մէջ Վրաց, Աղուանից և Հայոց։

5. Նոյն ինքն Դարբանդ։

6. Ցայժմեանս Տաղստան։

և անիմաստ ազգին Վրաց, ընտրեալ մանկունս քառասուն առաքեաց 'ի Յոյնս ուսանել լեզու, և առնել թարգմանութիւնս և բերել. զոր և արարին իսկ. երեք 'ի նոցանէ լուսագոյն գտան և մտաւոր, զարդարեցին զազգն անզարդ: Այլ ոչ էր նա երկմիտ յեկեղեցւոյ և յաղօթից մերոց. վասն որոյ բազում անգամ դնէր զգլուխ իւր 'ի ներքոյ ձեռաց մերոցն՝[1] խնդրելով օրհնութիւն: Սա թագաւորեաց երեսուն և երեք ամ, և մեռաւ 'ի Տփխիս. և թաղեցաւ 'ի Գելաթ[2] 'ի գերեզմանս հարց իւրոց: Այլ առ զթագն Դեմետրէ որդի իւր, որ պահեաց նոյնպէս զիշխանութիւն հօրն. և յաւել ևս զԴմանիս[3], և զԽունան[4] քաղաք առեալ 'ի Պարսից:

կթ. Ի ժամանակին յայնմիկ որդի մի Ապլուարայ, որ կայր 'ի Խորասան, իբրև լուաւ զանցս հօրն և զեղբարցն և զմահն Դաւթի, գայ 'ի խնդիր հայրենի քաղաքին Անւոյ, և աղերսանօք խնդրէ յԱպուլեթէ և յաւագաց քաղաքին. և զի կայր քաղաքն 'ի մեծի վըտանգի 'ի Թուրքաց, ետ 'ի նա Ապուլէթ խնայելով 'ի քրիստոնեայսն, ևս առաւել յորդին իւր Իւանէ, զի մի կորիցէ 'ի յաձախ մարտիցն. և ինքն անցեալ գնայ 'ի տուն իւր: Իսկ Փատլուն որդին Ապլուարայ բարիոք խնամարկեալ քաղաքին և ամենայն սահմանացն՝ արիաբար ջանացեալ, արար խաղաղութիւն. առ և զԴուին և զԳանձակ և եղև անուանի: Այլ զի կամեցաւ ձեռնարկել 'ի սուրբ կաթուղիկէն, զկնի երից ամաց եղև 'ի վերայ նորա արհաւիրք 'ի խոցոտմանէ հրակերպ արանց, որք ելանէին 'ի բանալեաց եկեղեցւոյն, զոր առեալ էր 'ի սուրբ սպասաւորէն Գրիգորոյ: Այլ 'ի վաղիւն կամէր կողոպտել զեկեղեցին 'ի զարդուէն՝ զոր նոր զգեցեալ էր առագաստն երկնաւոր զկնի վաթսնամեայ

1. Ակնարկէ 'ի խոնարհել թագաւորին ընդ ձեռամբ Յովհ. Սարկաւագայ վարդապետի:

2. Գելաթի մեծահռչակ մենաստան Վրաց յԻմերէթ, կառուցեալ 'ի նոյն ինքն 'ի Դաւթայ Բ, ուր և կայ ցարդ տապան նորին և պատկեր նկարեալ յորմն եկեղեցւոյն:

3. Դմանիք քաղաք և վիճակ Սոմխեթու:

4. Խունան է Հունարակերտ ըստ Հայոց, 'ի սպառուած Գուգարաց, առ մեծահռչակ Կարմիր կամրջաւն Վրաց՝ 'ի վերայ Կուր գետոյ, 'ի սահմանակցութեան Վրաց, Աղուանից և Հայոց:

սգոյն․ յորմէ տեսլենէ հիւանդացեալ և աՀաբեկեալ,
խնդրեաց աղօթս 'ի Գրիգորոյ՝ Հանելով զնա 'ի բանտէ
կապանացն յորում կայր․ յաղագս զի 'ի կարճ աւուրսն
գնացեալ էր 'ի Միրայն․ և 'ի դառնալն նորա 'ի Գրը-
ւէն՝ տեսեալ զաՀագին ժողովն Թուրքաց յոգնախուռն
բանակին, աղաղակեաց 'ի ձայն մեծ և ասաց՝ Օրհ-
նեալ է Քրիստոս Աստուած, որդին Աստուծոյ, զոր
սովորն էր առնել օր ըստ օրէ յԱնի․ քանզի աղօթա-
կից ընկերն ասաց ընդ կատակ յականջս նորա, եթէ
աՀա տեղիս օրհնելոյ զՔրիստոս․ վասն որոյ կապեալ
զնա և տարեալ 'ի Փատլունն եզին 'ի զնդան, և կամե-
ցեալ անդ սպանանել 'ի նմին գիշերի յորում կալան․
բայց Տէր պաՀեաց զնա այսպէս ։

Հ․ Այլն և վարդապետք յայնմ ժամանակի․ Յովհ-
Հաննէս, որ և Սարկաւագ, 'ի գաւառէն Փառիսոսոյ 'ի
քաՀանայական ազգէ, որոյ յիշատակք ճառագայթիցն
փայլեն մինչև ցարդ 'ի բանս իւր, և 'ի նմանէ աշակեր-
տեալսն․ — Երեմիա որ և Անձրևիկ, որ զամս երեսուն
չորակեր եղև, այնչափ Հլու եղեալ վարդապետին իւ-
րոյ, որ և 'ի սաստէն երբեմն թէ լուռ լեր՝ զամս երիս
ոչ խօսեցաւ ընդ մարդ, բայց եթէ ընդ վարժիչն իւր
'ի կարիս․ — և Սամուէլ երեց աշխարՀի՝ [1] որ զգաւա-
ռանսն յօրինեաց քրոնիկոնին՝ Անեցին։ Եւ նախ քան
զսոսա Անանիա, որ զառաքեալսն Համառօտեաց Հրա-
մանաւ կաթուղիկոսին Պետրոսի, ՍանաՀնեցին [2]։ Իսկ
Սարկաւագ վարդապետն կեցեալ 'ի ժիր մշակութեան
զաւուրս իւր, Հանգեաւ 'ի Հինգհարիւր ութսուն և
ութ թուին [3]։ Եւ զկնի ամի միոյ լծակիցն իւր Ալաւ-
կայ որդին Դաւիթ [4], որ կանոնք գրեաց դիւրաՀաս ։
Եւ Թոքակերայ որդին [5] կոչեցեալ աշակերտ նորին, և

1․ Սամուէլ անուանի ժամանակագիրն, որ ըստ Եւսեբեայ շարակարգէ զդէպս պատմութեան, և այլս ըստ նմանէ ։

2․ Անանիայ Սանահնեցւոյ ծանօթագոյն գրուած է մեկնութիւն թղթոց Պօղոսի․ յիշի նորա և մեկնութիւնն Մատթէի, և Դիմադրութիւն առ Յոյնս ։

3․ Հին Օ․ ՇԿԸ, որ է հինգհարիւր վաթսուն և ութ ։ Այլ ժամանակագիրք ՇՀԸ ասեն, հինգհարիւր եօթանասուն և ութ, որ ուղղագոյն թուի ։

4․ Դաւթի Գանձակեցւոյ Ալաւկայ որդւոյ գտանին կանոնքն խրատականք գրեալ առ Արքայութիւն ոմն Համբակ քաՀանայ ։

5․ Թոքակերի որդւոյն, Խոնթկայ որդւոյն Պետրոսի և Աքանչելատեսին Յակոբայ արդիւնք և գրուածք անծանօթք են մեզ ։

Յորում ժամանակի լցաւ դաշտն Գոգայ[1] անթիւ և անհամար հեծելօք յամենայն ազգաց անօրինաց հաւաքեալ, որ կամեցան այրել զտուրբ խաչն՝ որ յանուն զօրավարին Սարգսի։ Այլ 'ի բարկութենէ Տեառն խելացնորեալք կոտորեցին զմիմեանս. զոր լուեալ Դեմետրէ երթեալ ժառանգէր անաշխատ զկարասի նոցա։ Ի սոյն աւուրս պատանի մի յեղբարցն Փատլնոյ լուեալ եթէ հան նորա Կատայն 'ի տանէ Բագրատունի՝ քրիստոնեայ էր յազգէ Թագաւորաց, խաղայր հոգի իւր 'ի սէրն Քրիստոսի, և երթեալ 'ի լեառն սրբոյն Գրիգորի՝ մկրտեալ կրօնաւորեցաւ անդ՝ զամս հնգետասան մեծ ճգնութեամբ[2], մինչ զի տեսանէին լոյս անճառելի բորբոքեալ ընդ երդս խցկանն. և զկնի գնաց 'ի Գրաշարկն և անդ փոխեցաւ 'ի Քրիստոս։

Ի հինգհարիւր ութսուն թուին, Իւանէ որդի Աբուլեթին ապստամբեաց 'ի Գանձի և հարան զօրք նորա 'ի Խուրթէ, զորոց կտրեալ զգլուխսն եփեաց թանով, և զգանկսն դնէր 'ի բարձրութեանն մինրային 'ի շարս քարորմոցն։ Այլ 'ի գալ միւս ամին սպանաւ Իւանէ 'ի Դեմետրէ նենգիւ. և որդին նորա Թխիրքաշն գնաց առ ամիրապետն Շահի Արմէնն, և առեալ 'ի նմանէ զԱշարունիս՝ աւերէր զտունն Սրաց մեծաւ քաջութեամբ։

Ի հինգհարիւր ութսուն և ութ թուին կործանեցաւ Գանձակ 'ի շարժմանէ[3]։

ՀԲ. Եօթն ամօք նախ քան զայս Շահի Արմէնն տիրեաց երկրին Խլաթայ և այլ բազում քաղաքաց, որ էր թոռն Սուքմանայ. և սպան զհանիկն իւր, որոյ ըսպանեալ էր զորդիսն և կալաւ զիշխանութիւնն։ Այլ իբրև զարգացաւ սա, կամեցան և զսա հեղձուցանել,

1. Գոգ դաշտ և բլուր 'ի կողբափոր գաւառի Գուգարաց աշխարհի, 'ի սահմանակցութեան Ուտիոյ, յորոյ կատար շինեալ էր տաճար Ս. Սարգսի, և առաջին մի նորին սրբոյ եդեալ անդ 'ի ձեռն Ս. Մեսրոպայ. յայս ակնարկէ շարականն. “Առաւել պայծառ 'ի գլուխս Գոգայ, 'ի գագաթան տեղւոյն, օրհնեալ սրբոյն Մեսրոպայ”։ Իսկ գումարտակդ այդ էր Թուրքաց ժողով, զորս եհար Դեմետրէ։

2. Հինն յաւելու. և հսկմամբ գիշերոյ։

3. Մեծ ժաժն Գանձակայ եղև յամին 1139 յ30 սեպտեմբերի, զորոյ արկածս մանրագոյն յիշէն Կիրակոս պատմիչ և նորին վարդապետն Մխիթար Գոշ։

այլ արք ճգնաւորք 'ի յԱղուանս, որպէս Պետրոս Խանձկայ որդին, և Յակոբ սքանչելին, որ յաւուր միում տեսանէր զսատանայ հեծեալ յուս կրօնաւորի միում՝ որ գայր առ նա 'ի խոստովանութիւն, և 'ի մօտիլն մտրակեալ զնա և խոյթեալ[1], անդրէն դարձոյց որպէս փախստական։ Եւ նա հրամայեաց սպասաւորին ընթանալ զկնի և բերել առ նա բռնութեամբ. և հարցեալ զնա ասաց. Եկի առ քեզ զղջացեալ 'ի յապաշխարութիւն, և յիշեալ զսովորական գործն իմ դարձայ 'ի քէն։ Եւ սուրբն պատմեաց նմա զտեսիլն. և նորա լուեալ անկաւ յոտս նորա և խոստովանեալ եառ զլուծն ապաշխարութեան։ Նոյն և կանայք թագաւորազունք կրօնաւորեալք կուսութեամբ 'ի Վռոքայրն[2], Խորասու և Մարիամ, առ որս գրէր սուրբ վարդապետն Սարկաւագն զգուշական խրատս։

ՀԱ. Ի հինգհարիւր եօթանասուն և ինն թուին Խուրթի[3], որդի Եղին՝ գայ 'ի Դուին և տիրէ, վիրաւորեալ 'ի պատերազմին զՓատլուն, զոր նենգիչք ոմանք գաղտ խեղդեցին պատճառելով զվէրն, որ չէր մահու։ Եւ առ զամիրայութիւնն կրտսեր եղբայրն Փատլունայ Խուշչերն. և զկնի սակաւու աւուրց Մահմուտ. և անկաւ դարձեալ 'ի թշուառութիւն երկիրն Անւոյ։

Ի նոյն ժամանակս ոչ հեռագոյնս ինչ՝ որդին Ապուլեթի Իւանէ կամեցաւ սպանանել զԴեմետրէ և զեղբայրն իւր զԳէորգի. և հայր նորա Ապուլեթ ճողելով[4] զալիմն իւր առաջի որդւոյն՝ արգել զնա։ Եւ էին երկոքեանն արգելեալք 'ի բերդն Դմանիս պատճառանօք ինչ խաբէութեան 'ի մէջ եղբարցն. զոր ապա իմացեալ Դեմետրէ, ասաց ցԻւանէ. Ակլար զիս, մամ։ Եւ նա զղջացեալ ասաց. Ոչ, արքայ, այլ եդու զեղբայր քո 'ի ձեռս քո, որ խնդրէ առնուլ զթագաւորութիւնդ։ Եւ նա ըմբռնեալ՝ խաւարեցուցանէ, և թողու։

1. Յօր. մըրաքէլ, խոռնէլ: Հին. Օ. խոռնմոռնէլ:

2. Քորայր կուսաստան 'ի Ձորոփոր գաւառի Գուգարաց. իսկ թագաւորազունքդ են 'ի զարմից Կորիկեան կամ Հայ-Աղուան թագաւորաց։

3. Խուրթ էմիր 'ի Ղօզ կամ Ուզ տոհմէ Թրքաց, որք ընդ Սելճուկեանս խաղացին յարևմուտս։

4. Հին Օ. ճէփէլով:

Յորում ժամանակի լցաւ դաշտն Գաղայ [1] անթիւ և անհամար հեծելօք յամենայն ազգաց անօրինաց հաւաքեալ, որ կամեցան այրել զսուրբ խաչն՝ որ յանուն զօրավարին Սարգսի ։ Այլ 'ի բարկութենէ Տեառն խելացնորեալք կոտորեցին զմիմեանս . զոր լուեալ Դեմետրէ երթեալ ժառանգէր անաշխատ զկարասի նոցա ։ Ի սոյն աւուրս պատանի մի յեղբարցն Փատլնոյ լուեալ եթէ հան նորա Կատայն 'ի տանէ Բագրատունի՝ քրիստոնեայ էր յազգէ Թագաւորաց, խաղայր հոգի իւր 'ի սէրն Քրիստոսի, և երթեալ 'ի լեառն սրբոյն Գրիգորի՝ մկրտեալ կրօնաւորեցաւ անդ՝ զամս հնգետասան մեծ ճգնութեամբ [2], մինչ զի տեսանէին լոյս անճառելի բորբոքեալ ընդ երդս խցկանն . և զկնի գնաց 'ի Դրազարկն և անդ փոխեցաւ 'ի Քրիստոս ։

Ի հինգհարիւր ութսուն թուին, Իւանէ որդի Աբուլեթին ապստամբեաց 'ի Գանձի՝ և հարան զօրք նորա 'ի Խուրթէ, զորոց կտրեալ զգլուխսն եփեաց Թանով, և զգանկսն դնէր 'ի բարձրութեան մինարային 'ի շարս քարորմոցն ։ Այլ 'ի գալ միւս ամին սպանաւ Իւանէ 'ի Դեմետրէ նենգիւ . և որդին նորա Քիրքաշն գնաց առ ամիրապետն Շահի Արմէնն, և առեալ 'ի նմանէ զԱշարունիս՝ աւերէր զտունն Վրաց մեծաւ քաջութեամբ ։

Ի հինգհարիւր ութսուն և ութ թուին կործանեցաւ Գանձակ 'ի շարժմանէ [3]։

ՀԲ . Եօթն ամօք նախ քան զայս Շահի Արմէնն տիրեաց երկրին Խլաթայ և այլ բազում քաղաքաց, որ էր Թոռն Սուքմանայ . և սպան զհանիկն իւր, որոյ ըսպանեալ էր զորդիսն և կալաւ զիշխանութիւնն ։ Այլ իբրև զարգացաւ սա, կամեցան և զսա հեղձուցանել,

1 . Գաղ դաշտ և բլուր 'ի Կողբոփոր գաւառի Գուգարաց աշխարհի, 'ի սահմանակցութեան Ուտիոյ, յորոյ կատար շինեալ էր տաճար Ս. Սարգսի, և ատամն մի նորին սրբոյ եդեալ անդ 'ի ձեռն Ս. Մեսրոպայ . յայս ակնարկէ շարականն . "Առաւել պայծառ 'ի ,, գլուխս Գաղայ, 'ի գագաթան ,, տեղւոջն, օրհնեալ սրբոյն Մեսրոպայ ,, ։ Իսկ գումարտակդ այդ էր Թուրքաց ժողով, զորս եհար Դեմետրէ ։

2 . Հինն յաւելու . և հանձանք գեղերայ ։

3 . Մեծ շարժն Գանձակայ եղև յամին 1139 յ30 սեպտեմբերի, զորոյ արկածս մանրագոյն յիշեն Կիրակոս պատմիչ և նորին վարդապետն Մխիթար Գոշ ։

որ և զերծեալ Աստուծոյ յաջողելովն և տիրեալ երկոտասան քաղաքաց, կոչեցաւ Թագաւոր Հայոց. որ է Շահի Արմէն՝ ըստ իւրեանց լեզուին։ Որ և փեսայացոյց ինքեան զՍալդուխն[1] և խորհեցաւ նովաւ բարի առնել աշխարհի։ Յորում ժամանակի էր և Ելտկուզ Աթաբակն[2] նովին բարի կամօք, յԱստուծոյ եղեալ երեքեան սոքա քրիստոնէասէր և աշխարհաշէն։ Այս Շահի Արմէն գնացեալ 'ի Սասունս՝ յօրանայր 'ի գեօղն միում. և լուեալ Միգենայ տեառն երկրին՝ երթեալ 'ի գիշերի միում պատէր զտունն յորում կայր, և յասելն ումեմն 'ի կատակս. Այ Միգէն, ո՞ւր ես. ետ պատասխանի ընդ երդն և ասէ. Կամ առասիկ շնորհօքն Աստուծոյ։ Եւ կալեալ տանի զնա յամուրս իւր. և զկնի աւուրց արձակէ ուխտիւ և երդմամբ սիրոյ։

Յորում աւուրս ել 'ի վերայ նորա զօրավարն Պարսից Ելտկուզն, և հարեալ գնաց ամօթով։ Սա էառ զՄնուկ 'ի Խսետենկայ[3], և զՍասունս 'ի Միգենայ ամենայն վանորէիւքն. և պահէր 'ի խոր խաղաղութեան, զամս վաթսուն։

Յաւուրս սորա եղև սով սաստիկ 'ի Միջագետս, և քահանայ մի Նշետ անուն հայ ազգաւ՝ բարձեալ ցորեան իշոց՝ տանէր աղալ 'ի ջրաղացն, և 'ի տեսլենէ տառապելոցն աղէխարշեալ բաշխէր զամենայն աղքատաց. և զէշսն վաճառեալ նոյնպէս արար, և այլ ոչ դարձաւ 'ի տուն իւր, այլ զգեցեալ այծեայս շրջէր քարոզութեամբ ընդ քաղաքս և ընդ գեօղս քրիստոսաբար. զի ունէր բանս հանճարեղս, և ետ նմա Տէր շնորհս նշանաց. և զղջացեալ 'ի բանս նորա՝ դառնային բազումք 'ի չարեաց. և խնամ ածէր որբոց և այրեաց, լնլով զկարիս նոցա իւրով միջնորդութեամբ 'ի կարողացն։ Եւ ել համբաւ զնմանէ. և գային յարենային 'ի նա յոլովութիւնք ժողովոց, և եկն մինչև 'ի Մանծկերտ, և ել ընդ առաջ նորա Շահի Արմէնն մեծաւ

1. Սալտուխ ամիրայ Կարնոյ։

2. Ելտէկկիզ տիրող կողմանց Նախճաւանայ, աթաբէկ կոչեցեալ վասն խնամակալ և հայրագիր կալոյ սուլտանին Պարսից։

3. Խսեդենեկ 'ի զարմից Թագաւորաց Արծրունեաց, որք յետ վաճառման աշխարհին իւրեանց 'ի Յոյնս՝ տիրէին մասին միոյ, մինչև 'ի ԺԵ դար։

հանդիսիւ և խնդրեաց 'ի նմանէ աղօթս և եմուտ պատուով 'ի քաղաքն ։ Եւ զի յանդիմանէր զպոռնիկ քահանայսն՝ քսեցին զնա առ շահն, թէ լրտես է Հոռոմ թագաւորին, և ետուն զնա քարկոծել ։ յորոյ վերայ տեսին լոյս երկնային զերիս տիւս և զերիս գիշերս ։ Զոր տեսեալ շահն՝ աւաղեաց զմահ սրբոյն, և ետ հրաման պատուել զոսկերս նորա ։

ՀԳ. Ի հինգհարիւր իննսուն թուին եկն Փերփերօժանն և առ զԿիլիկիա, և տարաւ տամբ և որդւովք զԼևոն եղբայր Թորոսոյ, և զպատկեր Տիրամօրն 'ի Կոստանդնուպօլիս ։ և անդ մեռաւ Լևոն, որդին Կոստանդեայ ։ Եւ զկնի երկուց ամաց մեռաւ Փերօժն, և առ զթագն Կիռ Մանիլ որդի նորա ։ Եւ 'ի նոյն ամի մեռաւ թագաւորն Երուսաղեմի ։ երկոքին սոքա [1] 'ի յորսի որոգայթեցան, վասն խոզի՝ թագաւորն Յունաց, և վասն նապաստակի՝ թագաւորն Երուսաղեմի ։

Ի հինգհարիւր իննսուն և չորս թուին Զանգի ամիրայն [2] էառ զՈւռհա ։ և զկնի երկուց ամաց էառ զնա Պօսլինն, որ էր տէր նորա ։ և զկնի եօթանասուն աւուր սպանաւ 'ի Թուրքաց, որք եկին վերստին առին զքաղաքն, և մեռաւ քաջն և յոյժ հայասէրն ։ որում արար ողբս Գէորգ վարդապետն, որ հայրն էր խոստովանութեան նորա ։

Իսկ 'ի հասանել թուիս մերոյ 'ի վեցհարիւր ամն, եկին որդիքն Լևոնի՝ Թորոս և Ստեփանէ, և մեծաւ իմաստութեամբ և քաջութեամբ տիրեցին հայրենեաց իւրեանց Կիլիկիոյ, հարեալ զԱնդրոնիկոս զօրագլուխն Յունաց, որ կայր անդ երկոտասան հազարաւ ։ զոր լուեալ Մանիլն 'ի վարձու կալաւ միանգամ և երկիցս զՄասուդ [3] սուլտանն, առնուլ զքէն վրիժուց նորա ։ որ և 'ի յերկրորդ մուտն սուլտանին անկաւ ահ Տեառն 'ի վերայ նոցա, և փախեան առհասարակ, զմիմեանս սատակելով, անդէն թողեալ զբնաւ արարս իւրեանց ։ քանզի Ուղուպն զօրագլուխ նոցա կամեցաւ գնալ երեք

1. Փերփերօժանդ կամ Փերօժ է Յովհ. Կոմնենոս կայսր. և թագաւորն Երուսաղէմի՝ Ֆուլք, որք մեռան յամի 1142 ։

2. Իմադէտտին Զանկի Ա., սուլտան Դամասկոսի, հաչակեալ առմամբն Եդեսիոյ, զոր ողբերգեաց Ներսէս Շնորհալի ։

3. Մասուտ սուլտան Իկոնիոնի, որ տիրէր յամին 1117-1155 ։

հազարաւ յԱնաւարզու 'ի կողմանս Անտաքու, յորոյ վերայ անկեալ Ստեփանէ եղբայր Թորոսի՝ սատակեաց զամենեսին. և 'ի լսել զձայնն գուժին 'ի բուն բանակին՝ դողացին առհասարակ, և ոչ մնաց շունչ զօրութեան 'ի նոսա: Այլ հազիւ զերծեալ սուլտանն՝ անկեալ 'ի յորձս իւր սատակի, տալով զպատիւն Կլիճ Ասլանայ որդւոյ իւրոյ, 'ի թուին վեցհարիւր և չորս:

Ի նմին ժամանակի առին Փռանգք զԱսկալոն քաղաք: Ի սոյն ժամանակս եկն Մանիլն 'ի Կիլիկիա, և սիրով նուաճեաց զԹորոս. և առեալ զնա և զզօրսն Փռանգաց, գնաց 'ի վերայ Հալպայ. և լուեալ համբաւ յաղթողին՝ դարձաւ 'ի տուն. և ծայրաքաղ արար 'ի նոցանէ Թորոսն երկոտասան հազար 'ի ճանապարհին:

ՀԴ. Իսկ թագաւորն Աբրաց Դեմետրէ կալեալ ըզթագաւորութիւնն ամս երեսուն և երկու, վախճանի. և առնու զթագն՝ Դաւիթ որդին իւր, կորովամիտ և բարեսէր, և հանեալ 'ի բանտէ զԹորքաշն, զհօրն կապեալն, դնէ զօրագլուխ, և զկնի ամսոյ միոյ մեռանի. (ոմանք ասեն 'ի դաւելոյ Օրբելեանց 'ի Սմբատայ և յԻւանէէ, վասն 'ի տեղի նոցա դնելոյ զԹորքաշն, բանս եդեալ ընդ Գէորգայ եղբօր Դաւթի՝ զնոսա դնել զօրավար [1]). և առ զթագն Գէորգի, 'ի թուին վեցհարիւր և հինգ:

Յաւուրս յայսոսիկ յայտնեցան 'ի Ռահապիվանս՝ մարմինք սպանողացն Գնելոյ՝ անփուտ հանդերձիւք, և արիւնաշաղախ մարմնով՝ որպէս և սպանանն, ըստ անիծից սրբոյն Ներսիսի [2]:

Ի վեցհարիւր և տասն թուին էառ Գէորգի Աբրաց թագաւորն զԱնի 'ի Փատլուն ամիրայէն. որ փոխեաց զՌատատն եղբայր իւր. և զկնի յիսուն աւուր եկն Ռահի Արմէնն բազում հրոսակօք 'ի վերայ հարուածեալ և ախտացեալ քաղաքին 'ի Սոնացն: Որ լըւեալ Գէորգի անդրէն դարձաւ, և եհար զնոսա կոտորմամբ սրոյ, զորոց զթիւն ոչ ոք կարաց գիտել.

1. Փակագծեալ հատուածդ չիք 'ի Բ. Օ:

2. Գնել ինքն սպանաւ 'ի Ռահապիվան, իսկ սպանիչք նորա ոմն 'ի Բասեն և այլք այլուր. այլ եթէ ոմանք 'ի դաւաճանացն անդէն առ օրին սպանեան, ոչ գիտեմք 'ի հընաւանդ պատմութեանց:

բայց ձերբակալքն էին քսան հազար. և թողուր 'ի յԱ՞նի զՍադուն[1] իշխանն, յորոյ վերայ կարծիք ապստամբութեան եղեն՝ վասն խնամոյ[2] ամրացուցանելն զպարիսպ քաղաքին, զոր իմացեալ Թագաւորն ընկենու զնա 'ի պատույ: Այլ նա սրտառեալ գնաց հատուած առ Ելտկուզն. զոր խաբէութեամբ կալեալ Երիսթաւն[3] Շաքէոյ[4], բերէ անդրէն առ արքայ և մեռանի. և զիշխանն Զաքարեան զՍարգիս՝ դնեն 'ի տեղի նորա 'ի յԱ՞նի: Իսկ Ելտկուզն զայրացեալ չէր ինչ ձեռնհաս առնել, զի չորեք հազար Պարսիկ կոտրեաւ ընդ Սադունին:

Իսկ Թագաւորն Վրաց կուտէ առ ինքն զկովկասային զօրսն, և գայ առնու զԴունին՝ խստագոյն խայտառակեալ զնոսա 'ի սուր և 'ի հուր, բաց 'ի քրիստոնէիցն որ անդ. և զգագաթունսն թանեփեացս առեալ 'ի մինարայէն՝ զարդարէ ոսկեթել հանդերձիւք. և եդեալ 'ի գագաղս՝ բառնայ 'ի յուս մուկրեաց, և բոկոտիւք տայ տանել մինչև ցՏփխիս, նախագահ քաղաքն իւր, 'ի վեցհարիւր երկոտասան թուին: Զոր լուեալ Ելտկուզն գայ յայրեցեալն և 'ի քանդեալն Դունին, և խոցոտեալ սրտիւ և մռմռեալ իբր զգազան կատաղի՝ գայ 'ի Մ՞րեն և այրէ անդ զամրոցն, ուր ողջակիզեցան վասն Քրիստոսի ոգիք իբրև չորեք հազար. և դառնայ 'ի դաշտն Դուագայ, և ասաց այրել զխաչն հռչակաւոր. վասն որոյ 'ի բարկութենէն Տեառն պատժեալ լինէին 'ի տուէ և 'ի գիշերի 'ի թիւնաբեր օձից: Այլ զկնի 'ի Թագաւորէն Վրաց ահաբեկեալ փախչի, թողլով զկարասին և զգերիսն անդէն. սակայն գրգռէ զՕ՞ռավիզ սուլտանն, զորդին Մ՞ահմուդի զԱ՞սլան[5] և ածէ յԱ՞նի, և զամս չորս պահէ 'ի տառապանս անվար և անհանգիստ. մինչև Թագաւորն Վրաց Գէորգի ողորմելով քաղաքին՝ կոչէ առ ինքն զսուլտանն և տայ 'ի նա զԱ՞նի. զի չէր ձեռնհաս պահել 'ի բազմութենէ անօրինացն:

ՀԵ. Յայնմ ժամանակի աթոռն Հայոց շրջեալ 'ի

1. Սադուն յԱրծրունեաց ազգէ իշխան հուժկու:

2. Խնամոյ. 'ի որդեգրութենէն:

3. Երիսթաւ՝ նախարար կամ իշխան մեծ նշանակէ առ Վիրս:

4. Շաքի անուանի քաղաք և գաւառ Աղուանից. զարգիս մի 'ի կուսակալութեանց Տաղստանի:

5. Ասլան Սելջուկեան սուլտան Պարսից:

յաՀեկի 'ի քսանն[1], և թաղեցաւ 'ի Հաւութառ[2]. որ էր պարսիկ ազգաւ, 'ի սահմանացն Պռունայ, 'ի գեղջէն որ Նորաշէնք կոչի :

Ի սոյն աւուրս և Գէորգ Մչիկայ[3] 'ի գնալն իւր 'ի Հռոմ՝ յարոյց 'ի մեռելոց զառաջնորդն իւր զԳրիգոր, զոր սպանին յեկուզակք 'ի գաւառին Սնկռաց. որ և մեղադրէր նմա, եթէ ընդէ՞ր յանձառելի բարութեանցն յորում կայի՝ դարձուցեր վերստին 'ի թշուառութիւն կենցաղոյս :

Նոյնպէս և 'ի Հռոմայրն 'ի հրաշակաւոր սուրբ Ներշանէն, ածեալ մանուկ մի կոյր 'ի ծնէ և եդեալ 'ի վերայ աչացն տեղւոյ զգէնն աստուածամուխ՝ նոյնժամայն պատառեալ տեղւոյ աչացն և հոսեալ արիւն բազում՝ կազմեցան աչքն անարատ ամենեւին 'ի փառս խաչելոյն Քրիստոսի : Նա էր 'ի յՍւձնայ, (և հօր մանկանն Պետրոս էր անունն 'ի լինել գործոյն[4]) :

Ի վեցհարիւր քսան և մի թուին կատարեաց պատրիարքն Սերգէս զմարս իւր. եօթն ամ պաշտեալ զպատիւն, և եօթն եպիսկոպոս ձեռնադրեալ ձրի, արք անուանիք և ընտիրք, որ վարդապետ և որ փիլիսոփայ : Նա առնու զքօղն Գրիգոր եղբօրորդի իւր ձեռնտուութեամբ Նորադնին[5] : Նա միւս եղբօրորդին Գրիգորէս, որ և Մխիթար կոչէր, չոգաւ 'ի Կամբրօնն, և խնամէր զՏարսոնի մինձակն :

ՀՁ. Ի վեցհարիւր քսան և երեք թուին էառ Գէորգ զԱնի երկրորդ անգամ, 'ի սպրելոյ Խւանէի ամիր սպասալարի, զի ինքն նստէր 'ի նմա, և արացէ գերադարձ քրիստոնէից. և զՇահնշահ[6] ամիրայն տա-

զորոյ զմարս գրեաց Շնորհալին՝ երբեմն աստնջական նորին և խրախուսիչ :

1. Հինն երկաթաքաղաքն է. Վկայէաց Քրիստոսի աստուածութեանն, և Վրաստանի չորրորդաց և աշխարհականաց ժանուամբ հաստատեցաւ 'ի Քրիստոս :

2. Կամ Հայոց-Թառ. հռչակաւոր մենաստան մերձ 'ի Գառնի, յարեւմտից Գեղամայ ծովուն :

3. Ի Յայսմաւուրս, ահկի իէ, մանր պատմին գէպք աչխկայիս, այսինքն կուրին Գէորգայ Արճիշեցւոյ, որ յուխտ երթալով 'ի Հռոմ՝ սրախողխող եղև յերկրին Ունկարաց, և բժշկեալ՝ յետ կատարման ուխտին դարձ արարեալ բնակէր առ դրամբք եկեղեցեաց Անւոյ :

4. Փակագծեալք չեք 'ի Բ. Օ :

5. Նուրէտտին Մահմուտ, որդի և յաջորդ Զէնկեայ :

6. Շահնշահս այս թուի որդի Փատլուն ամիրայի Անւոյ, 'ի Շէտատեան տոհմէ :

րաւ ընդ իւր արքայն , և այլ ոչ ևս դարձաւ անդրէն ։ Այս լուեալ զայս ամենայն Թուրքաստանեաց՝ հաւաքեցան 'ի մի , զԱլփասլանն [1] կոչեցեալ սուլտան՝ ընդ ինքեանս առեալ գան 'ի յԱնի , և աւերեն զտունն Շիրակայ ։ Իսկ Իւանէ կամեցաւ տալ զքաղաքն 'ի Թուրքն , և ոչ աջողեցաւ գործն . զի իմացաւ քաղաքն և զգուշացան , և գնաց սուլտանն և աթաբակն իւր սրտախոցեալ , և մեռան երկոքեան 'ի միում ամի ։

Ի նմին ժամանակի ել 'ի բանտէն Կարուց մեծ իշխանն Ապիրատն և եկն 'ի յԱնի . սա էր եղբայր եպիսկոպոսի քաղաքին տեառն Բարսղի , որ աղաչեաց զԹագաւորն Աբխազաց , և ետ փոխան նմա ամիրայ , և առ զնա և եօթնևտասն հազար դահեկան ։ Յայնմ ժամանակի յայտնեաց Իւանէ զչարութիւնն իւր , զեղբօրորդի Թագաւորին իւրեանց զԴեմնէն և զյոլովս յազատացն յինքն յանկուցեալ՝ խորհեցաւ սպանանել զԹագաւորն , մինչ կայր 'ի Սախատա [2] յանհոգս . զոր իմացեալ յառնէ միոջէ՝ փախեաւ 'ի Տփխիս , զի սակաւամարդ էր . և անդ հաւաքեցան առ նա բազումք՝ Թողլով զչար խորհուրդն ։ Այս յորժամ զօրացաւ կողմն Թագաւորին , և կամէր գնալ 'ի վերայ ապստամբացն՝ որք 'ի Սախատէ , փախեան յամուրս իւրեանց , և ապա մտին 'ի Լօռէ , բաց 'ի Լիպարտէն՝ որ չոգաւ 'ի Պարսից կողմն երկու որդւովք . և էառ Թագաւորն զամենայն գանձ Օրբէլեանց , և ամենեքեան անկան յոտս Թագաւորին , եղբօրորդին և ընդ նմա այլքն , մինչև ինքն իսկ Իւանէ . զորոյ զաչսն կուրացոյց , և զկրտսեր որդի նորա զԲաւլթար և զԱնէն , զորդի Լիպարտին սպան , և յոչինչ եղեն չար խորհուրդքն ամենայն , 'ի վեցհարիւր քսան և վեց Թուին ։

Այլ զԱրփասլան սուլտանն փոխեաց Տուղրիլն , և զԷլտկուզն՝ Փահլաւանն [3], որ տիրեաց խորին աշխարհին , և Կզլասլան՝ վերին աշխարհիս [4], որք էին որդիք

1 . Ալփ Արսլանն է Ասլան շահ Սելջուքեան Պարսից ։

2 . ԶՍախատա յիշէ և Ստեփաննոս Ուռպելեան , երկարագոյն պատմելով զանցս իրացս , և զտեղին կոչէ ևս Պարպասա-Ագարակ . և է այն գեօղ 'ի Ծոբոփոր գաւառի Գուգարաց , յայժմեան Ղալամէր կամ Պօռչալու , մերձակ Սամշուլթու ։

3 . Փահլաւան և Գըզըլ Արսլան որդիք Ելտկուզի աթաբէկի ։

4 . Խորին աշխարհ իմանայ ըղկողմանս Պարսից , Վերին՝ զՄարս ։

նորա ։ Ի նոյն աւուրս առաւ Ծառաքար [1] 'ի գողոց հրամանաւ Ղարաչայ ամիրային Կեչրորոյ, որ վաճառեաց զնա Սղլամանայ ընդ բազում ոսկւոյ. և նա բնակեցոյց անդ արս մենաւորս որք ոչ դադարէին յարենհեղութենէ 'ի տուէ և 'ի գիշերի. մինչև զքրիստոնեայս 'ի խաւարային անդունդս ընկղմեալ սովով և դառն հոտով առաջնոց մեռելոցն՝ սպանանէին. որ և հինգ կրօնաւորս անուանիս դառնակսկիծ վիրօք ընդ կատակս խաչանիշ հարմամբ դանակացն փողոտէին ։

ՃԷ. Ի վեցհարիւր քսան և ութ Թուին Թագաւորն Երուսաղեմի երեքհարիւր ձիաւորով եհար զՍալահադինն [2] 'ի դրանն Երուսաղեմի զօրութեամբ սուրբ խաչին, որ եկեալ էր հարիւր քառասուն հազարաւ յառնուլ զԵրուսաղէմ, բարձեալ ջուր վաթսուն հազար ուղտով, (որք միշտ կրէին 'ի գետոց և յաղբիւրաց [3]) ։ Յառաջ Յուսուփ էր անուն նորա, որդի Այուբին, առն տառապելոյ Դունացւոյ, որ և 'ի մեծամայն կոչեցաւ Սալահադին՝ որ է խաղաղութիւն հաւատոց [4] ։

Ի վեցհարիւր քսան և ինն Թուին Գէորգի եբարձ զգող և զաւազակ յերկրէ. զի ամենայն զօրացն 'ի միասին եղելոյ՝ օրինադրեաց կախել զփայտէ վասն փոքու և մեծի իրաց՝ անողորմ զամենայն մարդ, և յոլովք 'ի պատուաւորաց կախեցան. և զգտեալ ինչսն տանէին կախէին զփայտիցն պատուհասից, և կախեցին մինչև ցանասուն և ցշուն և ցմուկն, և ահ անկաւ 'ի վերայ ամենեցուն, և եղև խաղաղութիւն մեծ ։

Յայնմ ժամանակի մեռանէր Մանիլն. և կին նորա՝ զի դուստր էր Պրնձին Անտաքայ, կամեցաւ Փռանգ այր առնուլ և սպանանել զորդին իւր զԱլէքսն՝ որում տուէին զթագն ։ Եւ փախեաւ տղայն յեկեղեցին և ազդ առնեն Անդրոնիկայ ազգականին Մանիլին. և գայ սպանանէ զսեաստոսն՝ որ կամէր առնուլ զթագուհին. և զազգն Փռանգաց՝ որ էին 'ի քաղաքին՝ կոտո-

1. Ծառաքար վանք և Կեչրոր քաղաքաւան յԱբեղեան գաւառի Այրարատայ, 'ի կողմանս Բասենոյ մերձ յԵրասխաձոր ։

2. Սելահէտտին կամ Սալատին յ'Էյիւպեան Քուրդ տոհմէ, անուանի աշխարհակալութեամբ, նուաճեաց զԴամասկոս, զՀալէպ, և զԵրուսաղէմ յամի 1187 ։ Հօր նորա Դունեցի կոչելոյ ոչ գիտեմ զոք երաշխաւոր ։

3. ( ) Հին Օ ։

4. Բ. Օ. խաղաղութեան հաւատոյ ։

րէ, և որք 'ի նաւ մտեալ փախչէին, նֆատ ձգեալ 'ի նաւսն՝ այրեաց երեսուն հազար արանց. սպան և զտըղայս, և առ զԹագն: Նա առաքեաց կոչել զայր մի Թագաւորազն Փիլիկ անուն, զի և զնա սպանցէ. և նորա զօրացեալ սպան զկոչողն. և մեծաձայն գոչմամբ երԹայր 'ի սուրբն Սոփի. և շարժեցաւ քաղաքն, և չարամահ սատակեցին զԱնդրոնիկոս, և զերկու որդիս նորա անմեղ մանկունս՝ ծովամոյն արարին:

Ի վեցհարիւր երեսուն և մի Թուին Խսարաչայն որ էառ զՈնառաքար, և խորտակեաց կռանաւ զխաչն Գէորգեայ կոչեցեալ, անկեալ 'ի սիրտ նորա արհաւիրք երկիւղի՝ Թողու յանկարծակի զտուն իւր զՍեչրօր և զՍուլԹիան և զամենայն ձորն Այրասխայ, և երԹայ կնաւ և որդւովք 'ի Գունին. և տեսանէ այր մի ահաւոր՝ որ ասէր ցնա, Ես եմ խաչն Գէորգեայ՝ զոր կոտորեցեր. և ահա սպանանեմ զքեզ ձեռօք սիրելոյն քո Շահի-արմէնին: Նա պատմեաց զտեսիլն, և 'ի վաղիւն գնաց բռնուԹեամբ զերծեալ, Թէպէտ արգելուին զնա վասն երկիւղի տեսլեանն, մինչև փակեցին ըզդըրունսն. այլ նա ընդ պարիսպն իջեալ, և երկու Ջնիբայով[1] չոգաւ 'ի Մանծկերտ, և եկաց առաջի Շահին, որ և նոյնժամայն յարուցեալ եհար զգանակն ընդ սիրտն և սատակեաց զնա:

Ի նոյն ամի Սարգիս ոմն խաչէնեցի[2] կայր 'ի Գանձակ և առնոյր խարաճ[3], և ոմն պարսիկ 'ի յաւագ ուրբաԹուն խաչեաց զնա ընդ պարիսպն, ասելով. Խաչակից լեր Քրիստոսին քում. զոր լուեալ իշխանք նորա՝ տարան առ ինքեանս զպարսիկն և չարամահ սպանին:

Ի սոյն աւուրս և Յորդանան ոմն 'ի Տաճիկ տոհմէ վկայեաց մեծ հանդիսիւ 'ի Կարնոյ քաղաք[4]. և եղան նշխարք նորա ընդ Յովսեփայ և ընդ Սահակայ ազգականին իւրոյ[5]:

ՀԸ. Ի վեցհարիւր երեսուն և երեք Թուին մեռաւ Գէորգի Լորաց Թագաւորն և ոչ գոյր նորա որդի, և

1. Ջնիբա, ճէնիպէ, ճէնայիպ جنايب, جنيبة ըստ Արաբացւոց. որ է նժոյգ 'ի ձեռանէ:
2. Հարկահան ամիրային Գանձակայ:
3. Հարկ, մարդահարկ, ըստ արաբ լեզուի:
4. Բ. Օ. Ի Կարին քաղաք:
5. Այսինքն՝ ազգակցացն, որպէս և տես յերես 91:

Դեմնայն յաչաց և յերանաց յապաւած էր, որդին Դաւթի: Նա առնու զԹագն դուստր նորա Թամարն, բերեալ նմա այր զորդին Ալըզոց Թագաւորին ըղ- Սօսլան, որ առ զԴուին քաղաք: Նա 'ի գալ միւսոյ ամին մեռաւ Շահի-արմէնն անորդի, և աւեր և սուր և գերութիւն բազմացաւ 'ի վերայ աշխարհի նորա 'ի շըրջակայ ազգացն: Նա զի Թռան Միգենայ՝ Շահնշահ քեռորդի տեառն Գրիգորի կաթողիկոսի առընթեր կայր մահուան շահին, առեալ զխուրսն անկանի 'ի Սասունս. և անդ անկաւ 'ի ձեռս նորա Բեկդամուրն՝ որ էր իշխան ամենայն տան շահին. առնու 'ի նմանէ զքերդն որ Թառձեան [1] կոչի, և ուխտիւ արձակեաց զնա, որ և ստեաց ուխտին 'ի տիրելն իւրում աթոռոյ շահին. և զայն ևս և զամենայն Սասունք՝ եհան 'ի նմանէ, և արկ ընդ հարկաւ զեկեղեցիս և զուխտս:

Ի վեցհարիւր երեսուն և չորս թուին ըմբռնեցաւ Ռուբէն 'ի բռնձէն, և թափեաց զնա Լևոն եղբայրն իւր, որդին Ստեփաննեայ, որդւոյ Լևոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբենայ, որ տիրեաց եօթնատասն և երկու բերդից և զօրացաւ 'ի վերայ Յունաց և Պարսից, և արար ընդ հարկաւ զԿլիճ ասլան սուլտանն մէջերկրեայ [2]:

Ի վեցհարիւր երեսուն և հինգ թուին առին Նեցիք զՕռաւաքար զհայրենիս տեառն Բարսղի, յանխնայ կոտորելով զորս անդ, բաց 'ի կանանց և 'ի մանկանց: Զոր լուեալ Մլիչէրն ամիրայն Դունայ ձողէր զմօրուսն, և սեաւ զգենոյր 'ի վերայ կնոջն և որդեացն որ անդ, և 'ի վերայ զօրացն կոտորմանն. և 'ի քրիստոնէից փառաւորիւր սուրբ Նորոգութիւնն:

ՀԹ. Իսկ 'ի վերայ Յունաց թագաւորեաց Փիլիկն որ և Սահակ, և յարոյց հալածանս և չարչարանս հայադաւան ազգաց, զի դարձցին յաղանդ նոցա. վասն որոյ գրէ առ նա աղերսանս պատրիարգն Գրիգոր խաղաղանալ ընդ ժողովրդեանն Աստուծոյ. և ոչ լուաւ նմա, այլ զյոլովս դարձոյց 'ի կրօնս իւր, և զայլս հալածականս արար. ուր կային երեք եպիսկոպոսի ա-

1. Թառձեան կամ Հովեանս յիշատակի 'ի Տարօն, որ 'ի ժամանակի պատմութեանս ընդ Սասնոյ համամիաձակ էր ըստ վարչութեան:

2. Գըլըճ-ասլան, սուլտան Իկոնիոնի:

թուք և հազար և վեցհարիւր քահանայք. զորս 'ի մի հաւաքեալ բռնադատէր, յորոց սակաւք զերծան ամբողջ հաւատով։ Եւ զայսպիսի աղէտս գրեաց յարևելս տէր Գրիգոր. և խոշորեալ[1] սրտիւ ոչ ինչ կարացին առնել։ Ուղարկէր և նոյն պատրիարքն եպիսկոպոս մի Գրիգոր անուն 'ի Պապն Հռովմայ վասն վտանգին, որ 'ի Յունաց կրէին Հայք, և զի խնդրեսցեն աղօթս և օրհնութիւնս, որպէս և առաջինքն, զոր կարի մեծարեաց Պապն, և ետ պատարագ առնել և հաղորդեցաւ (!), և զգեցոյց նմա զիւր քահանայապետական հանդերձն։ Եւ հաւաքեաց առ ինքն զամենայն պատուաւորս, զկայսրն Ալամանաց, և զթագաւորն Անկլիզաց, և զթագաւորն Փռանցիսաց, իւրեանցայովքն. և զպատրիարգն Ալամանաց՝ որ ունի քան և հինգ հազար ձիաւոր. և զարհի եպիսկոպոսն Սպանիոյ, որ ունի քան հազար ձիաւոր, և զարքեպիսկոպոսն սուրբ Յակոբայ՝ որ տիրէ հինգ հազար ձիաւորաց. և զմեծ արքեպիսկոպոսն մեծի քաղաքին Մելանայ, որ տիրէ երեսուն և վեց հազար ձիաւորաց. և յայսմ կողմանէ զպատրիարգն Երուսաղեմի։ Եւ 'ի խորհուրդ մտեալ նոքօք՝ գրեաց գիր հրամանաւ սուրբ առաքելոցն 'ի նոցա երեսաց, եթէ Հայոց պատրիարգն յայնկոյս ծովու իշխանութիւն կալցի 'ի վերայ Հայոց և Յունաց և ամենայն ազգաց, որպէս մեք յայսմ կողմանէ երկնաւոր և երկրաւոր բանալեօք։ Եւ վասն զի երկայն ճանապարհ է 'ի մէջ իմ և եղբօրն իմոյ, Հայոց պատրիարգին, առաքեցի նմա զիմ վակասն և զպսակն և զկօշիկն, զի զայն զգեցեալ պատարագեսցէ մատանեաւ հանդերձ։ Եւ ասէ ցեպիսկոպոսն Գրիգոր. Տար և զգեցո պատրիարգին. և յայնմ հետէ նմա լիցի իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից[2]։

2. Այլ 'ի վեցհարիւր երեսուն և վեց թուին եղև զի վաճառականք Սալահադնին անցանէին ընդ Պաղեստինէ չորեքհարիւր ուղտուց բարձեալ ազնիւ կարասի, զոր կամին Տրապօլեաց իմացոյց թագաւորին Երուսաղեմի, և էառ հրաման յաւարի առնուլ։ Զոր լուեալ

1. Այսպէս ամենայն օրինակք։

2. Մեծաքանութիւնք նմանաձայն Դաշանց Թղթոյ. բայց ստոյգ միայն է Թղթակցութիւնն և առաքումն ընծայից առ մերս հայրապետ։

Սալահադինն յղեաց և խնդրեաց միանգամ և երկիցս, գոնեայ զծառայսն միայն, յիշեցուցանելով զուխտ երդմանն՝ որ 'ի մէջ իւրեանց, և ոչ լուաւ. վասն որոյ զայրացեալ գայ 'ի վերայ նորա ։ Նա և ընդդէմ նորա թագաւորն Երուսաղեմի երեսուն և վեց հազարաւ 'ի դաշտն Հերմոնի, և նենգութեամբ կոմսին Տրապօլեաց զտեղի առեալ յոստ մի անջրդի՝ փակեցաւ 'ի Թուրքաց, և ըմբռնեցաւ սաստիկ հարուածովք, և առան ամենայն քաղաքք ծովեզերեայք, և ապա Երուսաղեմ. զորոյ զբնակիչս ոչ հրամայեաց կոտորել, այլ վաճառել զկեանս նոցա, կտրելով գին արուի՝ տասն դահեկան, և իգին հինգ. և զայլ ամենայն ինչս իւրեանց առեալ գնասցեն յո՛ր և կամեսցին, և արարին այնպէս ։ Իսկ անօրէն կոմսն՝ որ միաբանեալ էր ընդ Սալահադինին 'ի ծածուկ, հարեալ 'ի Տեառնէ տատակէր. և երթեալ Սալահադինին 'ի վերայ բերդի նորա՝ խնդրէր զկինն և զբերդն. և նա խնդրեաց պատանդս յերևելի արանց՝ զի գնասցէ առ նա, և լիցի նմա կին. և առեալ 'ի ներքս եհատ զգլուխս նոցա և ընկէց արտաքս, ընդ որ զարհուրեալ 'ի բաց գնացին ։ Քանզի լուան զհամբաւ գալստեան մեծի թագաւորին Ալամանաց, որ գայր 'ի գոյժ սգոյ սուրբ գերեզմանին և ամենայն քրիստոնէից, հարիւր յիսուն հազար հեծեալ առաքելով ընդ ծով. որք եկեալ պաշարէին զԱքքայ. և ինքն գայր ընդ ցամաք անհուն բանակօք ընդ աշխարհն Յունաց, առնլով 'ի նոցանէ զՎեռիաւ քաղաք և զՓիլիպպուպօլիս[1] և զԱնդրիանուպօլիս և այլ յոլով բերդս և աւանս. և առաքէր զորդի իւր յառաջագոյն 'ի վերայ Կոստանդնուպօլսի, և խառնէին հալածեալքն 'ի կիռ Սահակայ մերքն՝ 'ի նոսա, և բազում առնէին աւերս 'ի նոցանէ վառեալ նախանձու ։

Իսկ Կոստանդնուպօլսեցիք խնդրեցին ողորմութիւն, և ետուն հարիւր կենդինար ոսկւոյ և երկու հարիւր արծաթոյ, և ձրի անցուցին զամենայն բազմութիւնն, զոր առեալ էին 'ի Բլախաց[2] և 'ի Բուլղա-

1. Վերիա և Փիլիպպուպօլիս քաղաքք Թրակիոյ (Րումէլի), այժմ կոչին Գարաֆերիա և Ֆիլիպէ։

2. Բլախք՝ Վլահք կամ Ուլահք։

րաց, յոլովութեամբ գանձուց 'ի յանցանելն ընդ աշխարհս նոցա: Իսկ որդիքն Խլիճ-ասլանայ ոչ լսելով հօրն իւրեանց՝ Մուճին Թուրքօճն արարին ընդ նմա պատերազմ, երեսուն և երեք օր ոչ մեկնելով 'ի նոցանէ՝ մինչև հարան և կորեան 'ի նոցանէ, և այնքան սովեցան՝ մինչ զի ութևտասն օր անսուաղ կացին 'ի բերդ հողոյ. և մինչ 'ի Կօնն կերան վաթսուն հազար ձի. և առեալ զԿօնն կոտորեաց, և նստաւ անդ: Իսկ երիցս անգամ դեսպան յղեաց առ Լևոն, և ոչ հաւսաւ առ նա. և իբրև եկ 'ի Կօնն՝ [1] եհաս գիր 'ի պատրիարգէն Գրիգորոյ, եթէ Եկայք մեք մինչև 'ի Սիս քաղաք, և մնամք քեզ աստ: Իսկ թագաւորն ժողովեալ զամենայն մեծամեծս իւր՝ ետ կարդալ, և 'ի խնդութենէն լացին. և գրեաց պատասխանի՝ եթէ Աստի 'ի հինգ ամ քո հրամանաւ կամիմ բանալ անդաստան Հայոց, և ապա գնամ յերկիրն իմ. և ահա ունիմ թագ և զգեստ, զի օծցես թագաւոր Հայոց՝ զով ընտրես: Իսկ ասէր 'ի լսելիս ամենեցուն, եթէ Մինչ տեսանեմ զՊարոնն իմ, և զսուրբ Պետրոս՝ զպատրիարգն Գրիգոր, ոչ ասեմ զոր ինչ կայ 'ի սրտի իմում: Իսկ եկեալ 'ի Սելևկիա [2], գտեալ հունն՝ անցին ընդ գետն ամենայն զօրն. և թագաւորն ոչ անց ընդ հունն, այլ ասաց ննջել յայնկոյս գետոյն սակաւ մի: Իսկ յորժամ խաղաղեցան մեծամեծք նորա, յարեաւ ինքն և երկու արամբք եմուտ 'ի գետն, և զմինն 'ի նոցանէ խլեաց գետն և տանէր. և թագաւորն օգնելով նմա չպահեաց և ինքն, կորոյս զքրիստոնեայք, և հեղձաւ 'ի գետն, և զմարմինն առեալ տարան 'ի Սիս: Իսկ 'ի զօրացն բազումք նաւեցին 'ի յերկիրն իւրեանց. քանզի էր և որդի մի կրտսեր թագաւորին, և այն ևս մեռաւ երթեալ 'ի յԱքքայ: Բայց քանզի թագաւորն Անկլիզաց և միւս ևս այլ ընդ նմա զայնու աւուրբք եկին առին զԿիպռոս, և լըւեալ վասն անգլուխ մնացեալ զօրացն՝ որ զԱքքայ էին պաշարեալ՝ հասին նոցա 'ի թիկունս, և առեալ զքաղաքն՝ սատակեցին տասն հազար ընտիր այր 'ի զօրացն Սալահադնին, և զինքն իսկ գլխովին՝ որ եկն յայցելու-

1. Կօն է Իկոնիոն, Գօնեա:
2. Այս Սելևկիա 'ի հուսկ յաթեմոնեան սահմանս Կիլիկիոյ է, յայժմեանս Իչէլի. և գետն յիշեալ է Կալիւկադնոս, այժմ Կէօքսու:

թիւն իւրոյն , առաջի եղեալ տարան կոտորելով մինչև յԱխալան[1], և յոլովս յամիրացն ձեռնակալեալ տարան յայնկոյս ծովուն . և վերստին առին զամենայն առեալն 'ի Թուրքաց՝ բաց յԵրուսաղեմէ , որ առէին մինչև եկեսցէ օր այցելութեան նորա ։

ՁԱ . Ի սոյն ժամանակս ոմն 'ի գլխաւորաց Սալահադինին գայ 'ի վերայ Մանծկերտոյ , և պաշարեալ զնա՝ ոչինչ կարաց առնել , զի նորանշան ձիւն եկն 'ի վերայ նոցա 'ի մէջ ամարան . և դարձաւ և սատակեցաւ 'ի ճանապարհին , և Ինգղեմուրն շնորհ կալեալ քրիստոնէիցն՝ սկսաւ պատուել և սիրել յայնմհետէ զքրիստոնեայսն ։

Յայնու ժամանակօք թարգմանեաց Մխիթար պատուեալ քահանայն կաթողիկեցի[2] զպատճառս խաւարման արեգական և լուսնի , 'ի պարսկէ միոջէ Աճիէ անուն , զոր ասէր թարգմանեալ 'ի յունաց 'ի պարսս , և թէ Յոյնք 'ի յԵնովքայ մարգարէութենէն ունէին . որ ասէր թէ արեգակն բնութեամբ ոչ երբէք խաւարի՝ այլ 'ի լուսնէն լինի պատճառն . յորժամ 'ի միում կենդանակերպի դիպին արեգակն և լուսին , և ժամ իցէ ծննդեան լուսնի , և անդ դիպլին թանձր ամպքն կոչեցեալ ռաստ , և կամ զանապն[3] . զոր թէ ոքա մերձ ոչ լինին՝ ոչ է ժամ խաւարման . թէպէտ ժամ իցէ ծննդեան լուսնի , և իցեն 'ի միում կենդանակերպի . ապա թէ իցեն մերձ՝ խաւարի արեգակն . թէ բոլորն հանդէպ է միմեանց՝ բոլորն խաւարի , և թէ մասամբ ինչ՝ առ 'ի շեղ մասն նսեմանայ . և որ մեզ երևի՝ պատեան լուսնին է և ոչ արեգականն աման , որպէս որ եղև 'ի վեցհարիւր քսան և հինգ թուին մեծ խաւարումն ։ Իսկ լուսնին խաւարումն լինի՝ յորժամ վեց կենդանակերպօք հեռի լինի յարեգակնէն , և զանապն և ռաստն 'ի նոյն կենդանակերպի , մութ ամպք չտան առնուլ լոյս յարեգակնէն , և ստուեր թանձրութեան երկրի անկանի ընդ լուսնաւն , խաւարի լուսինն . եթէ զոյգ և կշիռ միմեանց կայցեն՝ բոլորն խաւարի , իսկ եթէ առ 'ի շեղ լինի՝

1 . Ակալա՝ Ակաղոն քաղաք յեզերս Պաղեստինեայ ։

2 . Մխիթարդ՝ պատմիչն է նախայիշեալ . տես յերես 92 ։

3 . Զանապն ذنب և Ռաստն راس նշանակէն զհանգոյցս լուսնի 'ի վերայ խաւարման ծրին , և զկէտն՝ յորում գիտի ատողն ։

առեալ մասն լուսաւորի յարեգականէ ։ Զայս աշխատեալ ծրաբոլորին փոխեաց 'ի մեզս ։

ՁԲ. Յաւուրս ժամանակացս այսոցիկ էին փառաւոր իշխանքն Զաքարէ և Իւանէ որդիք Սարգսի, որդւոյ Վահրամայ, որդւոյ Զաքարի յորդւոյ Սարգսի, 'ի Քուրդ ազգէ, հաստուած եղեալ առ թագաւորն Գէորգեայ, որ 'ի Բագրատունեաց ազգէ, հաւատացին 'ի Քրիստոս, և պատուեցան. և տուաւ նոցա տուն բնակութեան Խոշորնի. և զի արիագոյնք էին, յառաջեցին օր ըստ օրէ 'ի քաջ և 'ի պատիւ ։ Եւ յաւուրս Թամարին առաւել փառաւորեցան, և ետ նոցա զԼօռէ. և ինքեանք քաջութեամբ իւրեանց թափեցին 'ի Թուրքաց յոլով բերդս և գաւառս 'ի սուղ ժամանակի. քանզի 'ի վեցհարիւր քառասուն թուին առին զերկիրն Շիրակայ. և 'ի վեցհարիւր քառասուն և հինգ, առին զԱնբերդ[1]. և 'ի վեցհարիւր քառասուն և ութ թուին առին զԱնի. և 'ի վեցհարիւր յիսուն թուին առին զԲջնի. և 'ի վեցհարիւր յիսուն և երկու թըւին առին զԴունին. և 'ի վեցհարիւր յիսուն և հինգ թուին զԿարս՝ թագաւորին[2]. և ապա զԽետաբակս և զՇարեքն[3]. և ել անուն նոցա ընդ ամենայն երկիր ։ Բայց Իւանէ խաբեալ 'ի թագուհւոյն Թամարայ՝ տկարացաւ 'ի հաւատոյն[4], և անյաջողեալ նմա ըմբռնեցաւ գերի 'ի Խլաթ. և եղբօրն արիական անուամբ՝ ազատեցաւ դարձեալ, զդուստր իւր տալով 'ի կնութիւն Մելիք Աշրաֆին տեառն Խլաթայ ։ Իսկ Զաքարէ եղբայրն Իւանէի մնաց 'ի սեփհական հաւատն. սակայն կամեցաւ զտօն Տիրամօրն և զխաչին 'ի պատկեր աւուրն տօնել, և զՃրագալոյցն չլուծանել, և կրօնաւորաց միս չուտել, և կենդանոյն[5] պատարագ մատուցանել. և վրանով պատարագել 'ի բացեայ՝ դպրօք և սարկաւագօք. վասն որոյ առաքեաց առ Լեւոն որ այն ինչ օծեալ էր թագաւոր 'ի Փռանգաց և

1. Անբերդ վիճակ՝ մասն Արագածոտան ։

2. Այսպէս յՕՕ. թուի նագատարանելոյն լինել ։

3. Գետաբակք և Շարեք բերդք 'ի հիւսիսակողմանս և յարևելս Արցախայ ։

4. Իւանէ միաբանեաց ընդ Վրաց և ընդ Յոյնս 'ի դաւանութեան ։

5. Որպէս վասն յիշատակի ննջեցելոց, նոյնպէս և վասն հոգեւոր օգտի բարեպաշտից կենդանեաց ։

Յունաց, առաքելով նմա թագս 'ի վեցհարիւր քառասուն և վեց թուին. և էր Ճոխ և յաղթազգեաց և հարկադիր և լծատանջ ամենայն շրջակայ ազգացն: Իսկ նոքա յամեցուցին զպատասխանին, վասն զի յետ տեառն Գրիգորի առ Տէր փոխելոյն՝ եառ զաթոռն Գրիգորիս, Տղայն [1] կոչեցեալ. զոր կալեալ Լեւոնի եդ 'ի բանտի զկնի ամի միոյ, որ և կամեցաւ ելանել 'ի բանդէն բերդին, պարանաւ իջմամբ, և մեռաւ, կտրելով պարանին: Եւ զաթոռն եառ Ապիրատն, ամս, հինգ: Եւ ապա տէր Յովհաննէս, որ կայր ապստամբ 'ի Լեւոնէ, յորմէ վշտացեալ թագաւորին Լեւոնի՝ գնէ կաթուղիկոս զտէր Դաւիթ յԱրքակաղնին [2]: Եւ յերկպառակութենէն անտի հազիւ եկեալ 'ի մի կամս՝ ամենեքեան հաւանութեամբ արարին պատասխանի, առնել Օաքարի՝ զոր խնդրէ. զի չէ, ասեն, արտաքոյ գրոց, և մեր է սահմանդ հայրենի, և յաւերմանէ եկեղեցւոյ է խանգարեալ: Բայց 'ի յարևելս միաբանեալ և երկիցս արար ժողով կատարեալ արանց՝ 'ի Լոռէ և յԱնի, և ոչ եղև ընկալեալ. գուցէ, ասեն, և ամենայն իրօք հարկեալ լինիմք գնալ զկնի աղանդոյն Յունաց և Վրաց:

Իսկ 'ի յաւուրս ժամանակաց Թամարայ թագաւորին Վրաց, զօրացան քրիստոնեայք. Թէպէտ ընկեց զայրն Ռուս, և եառ զՕսան Սօսլան, որ ելից զՎիրս գերութեամբ և աւարաւ 'ի Թուրքաց. յորմէ ծնաւ միամօր որդի, և կոչեաց զնա Լաշա, և ինքն կալեալ զթագն ամս քսան և երեք՝ վախճանի: Եւ նստի յաթոռն Լաշայն, որ 'ի զօրացն կոչեցաւ Գէորգի, 'ի թուին վեցհարիւր յիսուն և եօթն [3]:

ՁԳ. Ի վեցհարիւր յիսուն և ինն թուին մարեխն աւերեաց զբազում գաւառս, յորում ժամանակի մեծն Օաքարէ աւերէր զտունն Պարսից մինչև ցԱրտաւիլ քաղաք, առնլով 'ի նոցանէ զվրէժ արեան քրիստոնէից,

1. Ոչ Գրիգոր Տղայն մականուանեալ Դ., այլ Ե Գրիգոր, արդարև տղայ տիօք և մտօք, որ և Քարավէժն կոչեցաւ:

2. Արքակաղնի վանք՝ շինեալ 'ի Լեւոնէ Ա թագաւորէ, հետաքննելի 'ի սահմանս Սսոյ:

3. Այս մահուան Թամարայ թագուհւոյ՝ զոր Թագաւոր գրէ մերս, ոչ նշանակի ստուգիւ 'ի պատմութեան Վրաց:

ըստ օրում և զաղօթատուն նոցա լցեալ արամբ՝ այրել հրամայէր, զոհ լինել իշխանացն՝ որք 'ի Նախջուանու եկեղեցին, և կուսայքն և մուղրիքն՝ սուրբ քահանայիցն, որ 'ի Բագուան զենեցան, և արեամբ նոցա ներկաւ պարիսպ եկեղեցւոյն ։ Այլ դարձեալ յայնր կոտորուածէ՝ կատարի 'ի տէր ուղղափառ և ամբիծ հաւատով, և թաղի 'ի սուրբ ուխտն Սանահնին, 'ի վեցհարիւր վաթսուն և մի թուին, թողլով տղայ մի հնգամեայ Շահնշահ անուն, ('ի պատիւ տէրութեանն Շնուշ կոչեցեալ[1]), զոր դարձոյց յաղանդն (!) Քաղկեդոնի Խոշաքն զուգակիցն Իւանէի ։

Այլ զկնի միոյ ամի կատարեցաւ սուրբ և սքանչելի վարդապետն Մխիթար, մականուն Գոշ Գանձակեցին, և թաղեցաւ յիւրում ձեռակերտին 'ի Գետիկ, զոր շինեաց հրամանաւ Իւանէի քեռորդւոյն մեծի իշխանին Քրդին, որոյ հրամանաւ եկեալ իսկ էր յերկիրն Կայենոյ, 'ի Հինն կոչեցեալ[2] Գետիկ. զի յայնմ ժամանակի նա ունէր զԿայեան հայրենեօք 'ի Հասանայ Կայենեցւոյ շինողէ բերդին ։

Ի վեցհարիւր վաթսուն և երեք[3] թուին զՀաթերք յԻւանէ տուին տէարք նորա, զի մեռաւ Վաղթանգ բուն տէր նորա և որդիք իւր տարաժամ. և միւս Վաղթանգ Սակռեանց, փեսայն Իւանէի, տէր Ներքին Խաչենոյ, թողլով երկու տղայս, զՀասան՝ որ 'ի գրգուանաց Ջալալդօլա, և զԶաքարէ՝ որ և Նասրադօլա. զորս խնամարկէր Իւանէ մարբն իւրեանց Խորիշահիւ ։ Որ և ապա յԵրուսաղէմ երթեալ և յամեալ, մեծաւ ճգնութեամբ կատարի յոլով դրուատիւք 'ի տէր ։ Այլ մեծն Իւանէ անուանի եղեալ քաջարութեամբ՝ առնու զՇարեքն և զամենայն շրջակայս նորա. և ապա ձեռն տուեալ ազգայնոյն իւրոյ՝ Վահրամայ որդւոյ Զաքարիայ, առնուն զՇամքոր. և 'ի վեցհարիւր վաթսուն և ութ թուին առնու զՈրոտն[4], և զմերձա-

1. ( ) Ըստ հին Օ ։

2. Հինն Գետիկ 'ի Մեծակոր գաւառի որ յելից կուսէ ծովուն Սեւանայ, երկրասասանաւն կործանմամբ աւերեցաւ. Մխիթար շինեաց ըզնորն ոչ հեռի 'ի հնոյն ։

3. Հաթերք կամ Հայթերք բերդաւան յԱրցախ աշխարհի, 'ի Սիւնեաց կողման, որ է յարեւմուտս կոյս ։

4. Որոտն հռչակաւոր բերդ և աւան Ծղուկ գաւառի Սիւնեաց ։

կայ ողեակսն, Թէպէտ ոչ զբովանդակ. քանզի երբ ունէին զնա Հայկազունքն[1], քառասուն և երեք բերդք էին նշանաւորք, և հազար չորեքհարիւր գեղք, և քառասուն և ութ վանորեայք. որոց սկիզբն աւերման եղև 'ի հինգ հարիւր յիսուն և երկու Թուին, 'ի պատճառէ երիտասարդի միոյ մատռուակի Մէլիք-շահ սուլտանին, որ 'ի գնալն հայկազնի Թագակալին[2] 'ի հնազանդութիւն սուլտանին, նեղէր զնա գինով խիստ[3], մինչ խոստանալ նմա զդուստր իւր կնութեան, և նորա հանդուցեալ[4] զգօտին՝ ցուցանէր սուլտանին ըստ իւրեանց սովորութեանն: Նա զկնի անցեալ աւուրց՝ խնդրէր զխոստացեալն, և 'ի հարկանելն զնա նախատանօք՝ լինի նախանձաբեկ. և առեալ յոլովութիւն զօրաց աւերէր զաշխարհ, մինչև ամենևին քանդեալ ապականեցաւ. որում յետոյ տիրեալ հզօրն Իւանէ:

ԶԴ. Ի սոյն Թուականի փոխի առ Քրիստոս պսակաւորն մեր Լևոն, և առնու զԹագն դուստր նորա միամօր, Եղիսաբէթ անուն, որ ըստ Փռանգաց լեզուին Զապիլ կոչի, ածեալ նմա այր զՖիլիպն զորդի տեառն Անտաքու, զամս երկու. և զի ատելի էր նմա ազգս Հայոց, և զիւրսն մանաւանդ պատուէր զՖռանգսն, երդմնազանց եղեալ 'ի յեդեալ ուխտէն հայադաւան և հայասէր լինել, վասն որոյ և զպատուական Թագն և զպաղատն[5] առաքէր 'ի տուն հօր իւրոյ: Որում ոչ կարացեալ տանել իշխանացն, դնեն զնա յարգելանի՝ մինչև մեռանել անդէն. և տան զաղջիկն՝ Հեթմոյ, որդւոյ Կոստանդեայ, մեծահոգի և հանճարեղ պատանեկի, որ էր անձնեայ և Թիկնեղ և գեղեցկադիտակ երիտասարդ, պսակելով զնոսա պատրիարգին Կոստանդեայ, որ ժառանգեաց զաԹոռն սուրբ՝ զկնի մահուան տեառն Յովհաննիսի 'ի վեցհարիւր վաԹսուն և ինն Թուին. ոչ յարենէ և կամ 'ի պատուոյ, կամ 'ի մամոնայէ, այլ

1. Հայկազունքդ են ազնուադոյն իշխանք Սիւնեաց սերեալք 'ի զարմից Հայկայ:

2. Ստեփաննոս Օրբելեան (գլ. կա.) ծանուցանէ զի Սենեքերիմ Թագաւորն էր երԹեալն առ Մէլիքշահ. մատռուակն էր Զորթման ոմն. և զսկիզբն աւերածին Սիւնեաց դնէ յամի 1103:

3. Հ. խստագոյն:

4. Այսինքն հանգոյց գործեալ 'ի գօտւոյն:

5. Իմա՛ զսպաս և զգանձս արքունի պալատանն:

'ի շնորհաց Հոգւոյն կոչեցեալ, և յամենայն լեզուաց վկայեալ:

Նախ քան զձեռնադրելն նորա միով ամաւ՝ եղև շարժ ահագին, և փլաւ պաճուճազարդ եկեղեցին, որ 'ի Մշակավանս[1] 'ի մետասաներն յունուարի 'ի ժամ ճաշու, և չորս պատարագող ընդ մեծ զենմանն նուիրեցան: Իսկ 'ի յերկինս տեսեալ լինէր 'ի բոլորից աստղ նիզակաձև զամենայն գիշեր. որք երկոքեան ցոյցքն նշանակէին զշարժումն խաղաղութեան աշխարհի 'ի խռովութիւն նիզակաւոր թշնամեաց. որպէս և եղեն իսկ 'ի գալ թուականին 'ի վեցհարիւր վաթսուն և ինն: Զօր ինչ օտարադէմ և այլալեզու շարժեալ 'ի Չին և 'ի Մաչին[2] աշխարհէն, Մուղալ և Թաթար անուն կոչեցեալ՝ եկին մտին յերկիրն Գուգարացւոց առ դաշտավայրօքն, 'ի կողմանցն Աղուանից, իբրև թէ քսան հազար. և կոտորէին զամենայն կենդանի՝ զոր գտանէին, և փութով դառնային: Զորոց զհետ մտեալ ամենայն ուժով Լաշն՝ հասանէ առ գետովն Կոտմանայ. և պարտեալ 'ի նմանէ՝ այրի փախստեամբ հանդերձ Իւանէիւ, զորոյ երիվարին ածէր զՃիլն իշխան ոմն՝ զրկեալ 'ի նմանէ. բայց Վահրամ տէր երկրին՝ մեծաւ քաջութեամբ գնայ հանդէպ երեսացն սաստիկ կոտորմամբ՝ մինչև ցԳարդման, չգիտելով զայլոցն փախուստն:

Իսկ 'ի վեցհարիւր եօթանասուն և մի թուին կամեցան այսուրէն դառնալ նոյնք. այլ զի գտին դեսպանք նոցա կազմ և հաւաք զՀայս և զՎիրս, և տարեալ զհամբաւն՝ ոչ համարձակեցան գալ, այլ անդրէն դարձեալ գնացին, յո՞ և գնացին: Իսկ 'ի նոյն ամի զօր բազում հատուածեալ 'ի Հոնաց, զոր Խուչաղն[3] կոչեն, եկեալ 'ի Գանձակ միաբանեցան ընդ նոսա. և 'ի գըտանել մերոցս վստահութեամբ և անզգուշաբար 'ի վերայ նոցա, հատուածեալք դարձան փախստեամբ, զբազումս

1. Մշակավանք 'ի Կողբափոր գաւառի Գուգարաց:

2. Ոչ 'ի բնիկ Չինաց այլ և ոչ կարի հեռի 'ի նոցանէ են բնավայրք Մոնկոլ կամ Մուղալ տոհմի, որ խառնեալ ընդ Թաթարաց՝ երկոքեան անխտիր միով անուամբ կոչէին:

3. Խուչաղ, Ղփչաղ, կամ Խըփչաղ կամ Քափչաղք, տոհմ է Խազրաց-Թուրքաց 'ի Ֆիննեան ցեղէ:

սրոյ Ճարակ տուեալ, և զոմանս կենդանի կալեալ 'ի փառաւոր ազատացն՝ եդին 'ի բանտի. ընդ որս և զԳրիգոր[1] իշխանն զկոչեցեալն որդի Սաղբակայ, և զեղբօրորդին իւր զարխական և զքաջ նահատակն զՊապաքն անուանեալ. զորոց զվրէժն առին 'ի գալ ամին զօրքս մեր ջնջելով զաւելի մասն Սուչաղին, 'ի գալն նոցա յերկիրն Վարդանաշատոյ[2]:

ՁԵ. Իսկ 'ի վերանալ Թուխս մերոյ 'ի համարն վեցհարիւր եօթանասուն և չորս, երկոքին որդիքն Խորազմշահին[3] պարտեալ և նեղեալ 'ի Թաթարացն[4], գան երկերիւր հազարաւ, որպէս ասեն, ընդ Ատրպատական երկիր 'ի յՈստանն Հայոց, առնուն զնա, և լնուն զդաշտն լայնատարած վրանօք. յորոց վերայ երթեալ մերքս՝ յաղթահարեալ կորնչին ոչ սակաւք, առ գեղաքաղաքին Գառնոյ, աւելի մասն՝ վիժմամբ ընդ խրամն խորխորատին, յաստուածասաստ բարկութենէն՝ 'ի վերայ Իւանէի. յաղագս նոր և օտար չարեացն, զոր գործեաց կին նորա: Քանզի Պարկեշտ անուն երեց մի մեռեալ, հանել ետ 'ի գերեզմանէն և այրել, և շուն զենուլ 'ի տեղւոջն, վասն յաճախ ուխտականացն Երթևեկաց[5], զոր պատուեաց Աստուած իջմամբ լուսոյ 'ի վերայ նորա. ակներև բերդաքաղաքին Բջնոյ, ուր և հիմն արկին եկեղեցւոյ[6], ելեալ 'ի բանս բանսարկու առն միոյ, զոր շանթակէզ արար Տէր 'ի նմին գիշերի, յորում 'ի տուընջեանն զայնպիսի անցս կրեցին:

Իսկ սուլտանն յաղթագգեաց պերճանօք յանհոգս եղեալ, կոխէ բազում տեղիս, և ընդ կրունկն դարձեալ 'ի Գավրէժ, զկնի ամի միոյ գայ ընդ կողմն դաշտավայրացն Գագայ 'ի Տփխիս. և բազում ոճիրս գոր-

1. Գրիգորդ՝ իշխան է Խաչենոյ, իսկ եղբայր իւր՝ հայրն Պապաքայ՝ կոչի Վասակ:

2. Վարդանաշատոյ երկիրն է միջանկիւն խառնրդոց Կուր և Երասխ գետոց:

3. Խորազմշահն է Մուհամմէտ և որդի իւր Մուհամմէտ Ճէլալ-իւտ-տին, որ եկն ընդ Ատրպատական (Ադըրպատական) յԱյրարատ. և էառ զԴուին (Ոստանն Հայոց). խաղաց 'ի վերայ նորա Իւանէ զօրօք Վրաց և Հայոց. այլ զխուախուսական ձայն գիտելն իւրեանց՝ խուճապական կարծեցեալ 'ի փախուստ փութացան, և ընդ վախս Գառնւոյ զահավիժեալք կորեան շատք 'ի զօրուէն 'ի խորխորատաձորոյն:

4. Հ. յաւելու. ուր և ելից զօրացն հիւսիսայնոց:

5. Հ. 'ի նշխարս ոսկերաց նորա:

6. Հ. յաւելու. զոր չկարաց փանել զպատրիր հայ գաւառացին:

ծեալ դառնայ 'ի վերայ Խլաթայ. և առեալ զնա և հարստացեալ՝ երթայ 'ի Հոռոմս 'ի վերայ Ալատին սուլտանին և Մելիք Աշրաֆին. և մեծապէս խորտակումն կրեալ 'ի զօրն, փախչի սակաւուք 'ի Մուղան՝ 'ի դաշտն ամենաւնակ զամենայն պէտս մարդոյ և անասնոյ. յորոյ վերայ հասանէ վաղվաղակի Տաթարն, որ հանեալ էր զնա յիւրմէ աշխարհէն յառաջագոյն, և անտի դարձուցանէ զնա 'ի փախուստ դէպ 'ի յԱմիթ. և յանգէտս մեռանի 'ի փախչելն, թէ սրով Թաթարին, և թէ որպէս ասեն՝ յիւրայոցն ումն մի՝ զորոյ մերձաւոր սպանեալ էր 'ի կարձոյ, և սրտառեալ կայր վասն այնորիկ, և յաղագս անհանգիստ շրջեցուցանելոյն զնոսա. և այնպէս խնդրեցաւ վրէժ արեան անձանց անմեղաց: Իսկ Թաթարն կոչեցեալ որ եկեալ էր յառաջագոյն սակաւուք 'ի վեցհարիւր վաթսուն և ինն թուին, և կամեցաւ դառնալ 'ի վեցհարիւր եօթանասուն և մին՝ և ոչ վստահացաւ, յաւելեալ յինքն անհուն բազմութիւն առաջնորդ ունելով զՉարմաղանն կոչեցեալ զօրապետ, գայ 'ի Գանձակ շահաստանի 'ի վեցհարիւր եօթանասուն և չորս թուին. պաշարէ զնա աւուրս ինչ և առնու. և կոտորէ անողորմաբար, բաց 'ի մատաղ տղայոց և 'ի կանանց՝ յորս հաճէին: Ապա յայսմանէ ոյժ առեալ մտանեն 'ի Թագաւորութիւնն Վրաց, և բաժանեն զանուանի տեղիս գաւառաց, և զբերդս ամուրս մեծամեծ իշխանացն՝ զորս Նոյինս[1] կոչէին. որք երթեալք յիւրաքանչիւր վիճակեալ դղեակս գաւառացն՝ վաղվաղակի մատնեալ լինէին 'ի ձեռս նոցա, 'ի պատուհաս մեղացն մերոց: Չաղատա նոյինն էառ զԼօռէ քաղաք, և որք յայնր կողմանէ գաւառք. Գոլատա նոյինն՝ զԿայեն բերդ, ուստի հանին զԱւագն[2] տէր երկրին. և մեծն Չարմաղանն՝ զԱնի և զԿարս, և զմերձակայսն. Գատաղա նոյինն՝ զկողմանս Զարեքին, զԳետաբակուց և ըզՄարդանաշատու: Իսկ Մոլար նոյինն 'ի բաժնի առեալ զբերդս գաւառաց մեծ իշխանի Վահրամայ[3], և

1. Նոյին լաւ ևս Նոյան, ըստ Մոնղոլաց նշանակէ բիւրապետ:
2. Աւագ որդի Իւանէի եղբօր մեծին Զաքարիայ:
3. Վահրամ որդի Զաքարիայ տեառն Գագայ և Տաւուշոյ, խնամի իշխանաց Խաչենոյ և ժառանգ Կիւրիկեան Թագաւորաց Աղուա-

նախ առնու զՇամքոր հնարիւք . և Սահրամ որդւոյն Աղբուղայիւ փախչի տեղւոջէ 'ի տեղի , մինչև գիտաց եթէ խնայեն 'ի հնազանդեալս՝ որք կամօք խոնարհին 'ի ձեռս նոցա ։ Եւ ապա եկեալ առնոյր զառեալսն 'ի նոցանէ զգղեակս և զգաւառսն՝ որ անփական լեալ էր նոցա 'ի հայրենեաց . որ և զամենայնն առեալ էին , զՏաւուշ [1], զԿածարէթ [2], զՏէրունականն [3], զԵրգևանքն [4], զՄածնաբերդ՝ [5] որ էր Կիւրիկեանց Աղսարթանայ . զՆոր բերդ՝ [6] որ էր Սատակայ Թագաւորազնին , և ըզՔարաղինն [7] անմատչելի ամրոց , և զԳագ անուանի բերդ , և գաւառ 'ի Գագկայ [8] Թագաւորէ շինեալ , ուր կայ հռչակաւոր և սուրբ ուխտն խաչ և եկեղեցի յանուն սրբոյն Սարգսի զօրավարին , օրհնեալ 'ի սըրբոյն Մեսրովբայ վարդապետէն և Թարգմանչէն Հայոց , որ կայ 'ի գլուխս Գագայ , և հայի 'ի դաշտն լայնանիստ և երկայնատարած . և զայլ ամրոցս [9] և զգեօղս և զագարակս . ամենեքեան առեալ լինէին 'ի ձեռս նոցա 'ի սուղ ժամանակս , անվտանգ և առանց աշխատութեան . զի գիտացուք եթէ ձեռն Տեառն է որ եա զաշխարհս մեր առաջի աչաց մերոց կերակուր օտարաց [10] ։

ԶԶ . Եւ սկիզբն 'ի սրբութեանց իւրոց և 'ի սրբոց արարեալ , առեալ լինէր նեղեալ 'ի կարօտութենէ պիտոյից , և աւելի 'ի ջրոյ , քարայրն վանականին համ֊

նից , որոց կալուածք էին յիշեալքդ 'ի ստորև ։

1 . Տաւուշ , Տայուշ , կամ Տաւուշ , 'ի հիւսիսակողմն Ուտիոյ աշխարհի , Տուչքատակ գաւառի հին ։

2 . Կածարէթ 'ի նմին Տաւուշ գաւառի , այլ նշանական տեղին անյայտ ։

3 . Տէրունական բերդ 'ի դաշտին Կոտամանայ մերձ յԱղստև գաւառ Ուտիոյ , 'ի մերձակի՝ այժմս յանուն գետակին՝ Հասանսայ-ձոր կոչեցելոյ ։

4 . Երգևանք կամ Երգևեանք բերդ 'ի Տայուշ գաւառի ։

5 . Մածնաբերդ , 'ի Տայուշ , աթոռ Կիւրիկեան արքայազարմից յ'ԺԲ դարու ։

6 . Նորբերդ , միւս աթոռ արքայազանց , 'ի կողմանս Հասանձորոյ ։

7 . Քարաղին կամ Գարաղին , Կէչէրլին փոխ 'ի Թուրքաց կոչեցեալ . քարաբլուր միապաղաղ և բերդ 'ի գագաթանն ։

8 . Գագիկս այս հնագոյն Թուխ քան զամենայն ծանօթ Թագաւորս Բագրատունիս և Կորիկեանս ։

9 . Հինն . և զայլ ամրոցս , և զայլն Ճմակոր՝ որ կոչին 'ի մայրիս և ծործորս և 'ի յորակս գաւառաց , գեղջից և ագարակաց , որք և ամենեքեան , և այլն ։

10 . Հինն յաւելու . ընդ որս և զաղխատառն այլ և զգայթակղեցուցին փախարագոնից , նախ քան զատուցեալքդ . ակնկալեն . և այլն ։

բաւատենչ և արդիւնական վարդապետին Վանա-
կանն[1] կոչեցեալ. յորում ինքն իւրայովքն աճեցեալ
էր աշակերտօք և այլովք գաղթականօք յոլովիւք՝ 'ի Նա
ապաւինելովք. որոց տուեալ զանձն փոխանակ քրիստո-
սաբար՝ գնայ գերի, ազատելով զնոսա, և ժամանակս
ինչ շրջեալ ընդ բանակս խուժական ազգին վաճառի
քրիստոնէիցն՝ որք 'ի բերդն Գռագայ. որք գնեցին ոչ
հրէաբար 'ի մահ նախատանաց, այլ տիրանման յազա-
տութիւն փառաց (յիսուն դահեկանաւ, աւելի քան
զՏէրն: Այնքան ժլատ էր վաճառողն Տեառն, և դիւ-
րագին և թեթև ունէր, որում ինքն էր արժանաւոր[2]):
Յետ որոյ կեցեալ ամս հնգետասան 'ի փառս Աստուծոյ
և յօգուտ բազմաց, հանգչի 'ի Քրիստոս 'ի բազմա-
վաստակ ճգնութեանցն 'ի խորանս լուսաւորչացն աշ-
խարհի, յեօթն հարիւր թուականին, 'ի յութևտասն
մարտի և 'ի տասն յարեգի հին զուգիւն, 'ի յաղու-
հացսն յաւուր շաբաթի, 'ի յիշատակի Ովրենդի և եղ-
բարցն իւր 'ի կարգի. և ըստ մեզ՝ Կիւրղի Երուսաղեմի
հայրապետի, առնելով տօն վերին Երուսաղեմի, որ աս-
տէն տօնիչ և գգուիչ էր զաւակաց նորա, որդւոցն լուսոյ
'ի փառս փեսայի նորա, անմահ Թագաւորին Յիսուսի
և Հօր իւրում և Հոգւոյն սրբոյ. զհարիւրապատիկն
աստէն թողեալ զանուն քաջութեան յաշակերտս իւր,
և 'ի գիրս գանձուց եկեղեցւոյ, զոր ամբարեաց 'ի շնոր-
հացն Աստուծոյ և 'ի յստակ մտաց ծննդականաց:

ՁԷ. Արդ 'ի վեցհարիւր ութսուն և հինգ թուակա-
նէն Հայոց մինչև յեօթն հարիւր չորեքտասան, յորում
եմքս մեք, զոր ինչ արարին ազգն նետողաց, ընդ աշ-
խարհս և ընդ իշխանութիւնս, որ յայսմ կողմանէ ծո-
վուն մեծի, ընդ Պարսս և ընդ Աղուանս, ընդ Հայս
և ընդ Վիրս, և ընդ աշխարհն Հոռոմոց կոչեցեալ.
ուր էին բնակեալ Հայք և Ասորիք, Յոյնք, և Տաճիկք
և Թուրքմանք, գրեալ են մանրամասնաբար փառաւո-
րեալ հայրն մեր Վանական վարդապետն, և հարա-

1. Վանական վարդապետ Յով-հաննէս, հաշտակաւոր 'ի հեղինակս ԺԳ դարու աստղինակրան վարուք և վկայութեամբ. վարժապետ հե-ղինակիս և Կիւրակոսի պատմչէ:

2. ( ) Ըստ հին Օ:

զատն մեր Կիրակոս վարդապետն հօրն համանման. զոր մեք ոչ համարձակեցաք երեքկնել կամ բազմաբանել, այլ համառօտ բերել միայն զթիւ ժամանակին նըշանաւոր իրաց և գործոց յիշատակօք 'ի լըումն մերոյ գործառնութեանս՝ յոլով ժամանակօք սկսեալ և թերի թողեալ պատկառելով 'ի զգուշացն պատուոյ՝ զոր վերագոյն յիշեցաք. թէպէտ և չկարէ բան և նիւթ պեղել և 'ի յիշումն ածել զյորդութիւն բազմութեան մեղաց և յանցանաց և անզգամութեան մերոյ, ըստ որում և ոչ զհատուցումն վրիժուց արդար դատաստանին Աստուծոյ: Մանաւանդ եթէ գոյ հնար թուել զհատուցմունս, և զհամար չարեացն մեր ոչ բնաւ. որում յաղթեաց և միշտ յաղթէ խորոցն խորք և աներևոյթ անդունդք, զգթութեանցն Աստուծոյ անբաւութիւնք: Որում շնորհ և զօրութիւն, փառք և պատիւ, օրհնութիւն և գոհութիւն, անթուական և անոլորտ յաւիտենիւն, 'ի բոլորից և 'ի մասանց արարածոց իւրոց, յիմանալեաց և 'ի զգալեաց, յորոց և ամէնն ասասցի անսպառ և անեզր էիւն անվախճանիւն [1]:

ՁԸ. Արդ 'ի վեցհարիւր իննսուն և մի թուին Հայոց Բաչու Նուինն [2] փոխեաց զիշխանութիւնն Ջարմաղանին և էառ զԿարնոյ քաղաք, հանեալ անտի զայրն երևելի մեծատուն և երկիւղած 'ի Տեառնէ զՈւմեկն [3], և զազգականս նորա զորդիսն պարոն Յոհաննու, զՍտեփաննոս և զեղբարսն իւր հինգ. — և 'ի վեցհարիւր իննսուն և երկու թուին զամենայն աշխարհն Հոռոմոց՝ կոչեցեալ, և զանուանի քաղաքսն, զԿեսարիա նախ, ապա զՍևաստ, յորս խնայեցին 'ի կոտորելոյ, զի վաղ եկին 'ի հնազանդութիւն, ապա զԵզնկա, զորս յանխնայ կոտորեցին և գերեցին. քանզի ընդդէմ դարձան: Եւ զայլ աշխարհս և զգաւառս, ուր մանաւանդ ազգ Հայոց վշտատեսաց բնակեալ էին. զի համարագիր թուականին ՈՂԲ (վեցհարիւր իննսուն և երկու) էր, և ըստ այն

1. Աստանօր դադարէ պատմութիւնն 'ի բնագրի մերում յընտիրն օրինակի. հետևեալքն՝ 'ի հնագիր օրինակէն է:

2. Պայճու Նոյան, ըստ Թաթարաց, ազգաւ Մոնկոլ:

3. Ումեկայ սերունդք յիշին յարձանս վանորէից Զորագետոյ. որդի նորա կոչի Ճար Մանաչէկեանցն մեծն վաճառական 'ի Կարին:

Հայոց Հեթումն չոգաւ 'ի Բաթու[1] մեծ թագաւորն հիւսիսոյ, հաւանեցի Ջանգզ ղանին, և անտի առ Մանկու ղանն. և ըստ արժանւոյն մեծարեցաւ, և դարձաւ յետ տարւոյ խաղաղութեամբ յաթոռ իւր :

Յեօթն հարիւր և չորս թուին եկն Հուլաւուն եղբայր Մանկու ղանին անթիւ զօրօք, և մեծասաստ իշխանութեամբ 'ի վերայ Պարսից, Ասորեստանեաց, Հայոց, Վրաց և Աղուանից, և հրաման ետ նախ եկեալ զօրուն՝ ամենայն ախիւն իւրեանց գնալ յաշխարհն Հոռոմոց : Յորմէ ահէ թողին զվերին աշխարհս[2], և գնացին 'ի հարկէ, և կալան զամենայն միջերկրեայս մինչև 'ի ծովն, տիրելով աշխարհացն՝ որ ընդ իշխանութեամբ սուլտանացն Հոռոմոց կոչեցեալ :

Իսկ մեծն Հուլաւու 'ի նոյն ամի գալստեանն իւրոյ 'ի թուին եօթն հարիւր և չորք, չոգաւ յերկիրն Մըլ-հեդաց յԱլամուղն կոչեցեալ, և առ զնա, հանեալ զգլխաւորն, զի յառաջ քան զգալն նորա՝ պաշարեալ և 'ի նեղ արկեալ էին զօրք նոցա, որոց գլխաւոր էր Խաւուր Նուինն կոչեցեալ : Եւ 'ի դառնալն անտի կոչեաց առ ինքն զԴաւիթ թագաւորն Վրաց և զմեծամեծս աշխարհին, և սիրով և պատուով տեսեալ զամենեսեան, մանաւանդ զքրիստոնեայսն. զի աւագ կին նորա Տողուզ խաթունն[3] կոչեցեալ քրիստոնեայ էր ըստ Ասորւոց ուսմանն՝ որ Նեստորքն կոչին. սակայն չէր տեղեակ նոցա աղանդոյն, այլ անխարդախ սիրով մեծարէր զամենայն ազգ քրիստոնեայ և խնդրէր աղօթս. որպէս և ինքն իսկ Իլղանն[4] կոչեցեալ Հուլաւուն. խորան կտաւեայ 'ի ձև եկեղեցւոյ շրջեցուցանէին ընդ նմա, 'ի ձայն ժամահարի և աղօթից կարգաւորութեան և պատարագաց պաշտէին հանապազորդ քահանայք և սարկաւագունք. և գոյր դպրոցս և ուսումնս մանկանց համարձակութեամբ : Եւ անդ հանգչէին ե-

1. Պաթու խան որդի Ճուչեայ անդրանկանն Ճինկիզխանի, իշխող կողմանց Հոնաց :

2. Այսինքն զՄեծ Հայս :

3. Ըստ Րէշիտ-էլտինայ Տօղուզ Խաթուն էր 'ի Քէրայիդ տոհմէ Թաթարաց, դուստր Իքուայ որդւոյ Օնկ խանայ :

4. Իլ-խան նշանակէ ըստ Թաթարաց՝ թագաւոր գաւառի կամ աշխարհի ուրեք, հպատակ մեծի խանին Թաթարաց՝ զոր Խաքանն կոչէին. և սեփական եղև անունն Հուլաղուի անուանս Իլ-խաննեան :

կեղեցականք որ յամենայն կողմանց և 'ի լեզուաց քրիստոնէից գնային խնդրել զխաղաղութիւն և գտանէին ևս, և դառնային խնդութեամբ և պարգևօք ։

Յեօթն հարիւր և հինգ թուին մեռաւ Բաթաւ մեծ կողմնակալն հիւսիսի ։ Իսկ 'ի նոյն տարւոջն որդի նորա Սարդախն դեղակուր եղև յիւրոցն եղբարց վասն նախանձու. զի նմա յանձնեցաւ իշխանութիւնն 'ի հօրէն և 'ի Մանկու ղանէն յաւելուածով. և սուգ մեծ եղև մահ՛ն նորա քրիստոնէիցն. զի կատարեալ քրիստոնեայ էր և լինէր պատճառ փրկութեան բազմաց, ածելով 'ի հաւատս յիւրոցն և յօտարացն ։

Դ.Ա. Յեօթն հարիւր և եօթն թուին քաջն Հուլաւու էառ զԲաղտատ, զկնի հինգհարիւր և եօթնևտասան[1] ամի շինութեան նորա 'ի Ջափրէ Խալիֆէլացւոյ՝ 'ի հարիւր լինսուն և չորս թուին Հայոց, 'ի վերայ Տիգրիս գետոյ, որպէս ասեն, հեռի 'ի հին Բաբելոնէ եօթն աւուր ճանապարհ, սպան և զխալիփայն իւրով իսկ ձեռօքն Հուլաւու, որում անուն էր Մուսթասար, և ապրեցան քրիստոնեայք որ կային անդ կամօք և բարեխօսութեամբ Տօղուզ մեծի թագուհւոյն ։

Իսկ զի Խալիփայն՝ յետամնաց ասի ազգին Մահմետի՝ որ 'ի վաթսուն թուականին Հայոց երևեցաւ, և տևեաց յետնորդն մինչև 'ի յեօթն հարիւր և եօթն թիւս ։ Ի դառնալն Ալղան Հուլաւուին յաւերմանէն Բաղդատայ՝ 'ի նոյն թուին պաշարեցաւ Մուփարկինն քաղաքն Մարտիրոսաց զամս երկու, զի անուանեալ սուլտանն որ անդ՝ ընդդէմ դարձաւ որդւոյ Հուլաւուին Խամուտին[2], և փակեաց զքաղաքն և մարտեաւ ընդ նմա ևս, որ էր յազգէն Ադլեաց, որ եղև նիւթ բարկութեանն Աստուծոյ. զի 'ի սղարն[3] կերան զսուրբ և զանսուրբ անասունս, և ապա զաղքատսն, ապա զծնունդս իւրեանց և զմիմեանս զոր կարէին ։ Մինչ զի

1. ԶԲաղտատ շինեաց Ճեաֆար-էլ-Մանսուր, յամի Տեառն 762, որով 496 ամք լինին յաւուրն նորին 'ի Հուլաւու խանէ, յամի 1258. վերջին խալիֆայն է Մոսթասէմ, որ խեղդամահ եղև հրամանաւ և ոչ ձեռամբ խանին ։

2. Ջիասմութ ըստ Կիրակոսի պատմչի, Իշմութ ըստ Մողոլաց ։

3. Հիսար ըստ Առաքելոց, պաշարումն քաղաքի ։

ուագ և գլուխ երիցանցն որ անդ՝ հարկեալ 'ի կատաղի բոցոյ ոսկորին և գաղանացեալ՝ եկեր յիւրոցն, և գրեաց խոստովանութիւնս 'ի քարտիսի, և յուսացաւ տեսանել մեզ զգիրն, և ողորմութիւն գտանել յողորմածէ բնութեանս ստեղծողէն։ Եւ ինքն տուեալ զինքն կողկողիման և լալեաց՝ վայիւք և հառաչմամբ անդադար ափսոսանօք, մինչև քաղեցաւ շունչն։ Զորոյ զգիր խոստովանութեանն ըստ յուսոյն իւրոյ տեսաք մեք, և ակն ունիմք նմա ողորմութիւն գտանել 'ի գիտողէն և ստեղծողէն բնութեանս, որ մահուամբ եւս կարակցեաց մեզ. գթածն հայր և ողորմութեան խոլքն, և սիրոյն անդունդքն. Նովիմբ կամօք և կարողութեամբ ողորմեսցի նմա, և քաւեսցէ խորհրդով սուրբ եկեղեցւոյ. և ամենեցուն իսկ՝ որ զղջմամբ ապաւինեցան և ապաւինեսցին յողորմութիւնն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և պատահեալքդ սրտի մտօք հայցեցէք զամէնն ասելով։

ՂԲ. Յեօթն հարիւր և ութ թուին չոգաւ Հուլաւուն յաշխարհն Միջագետաց, և առ զքաղաքսն և զգաւառսն զայնոսիկ, որպէս և գրեցին մանրապատում գրողքն։ Եկն առ նա պատրիարգն Հայոց, կաթուղիկոսն, օրհնեաց զնա և սիրեցաւ 'ի նմանէ. ընդ նմա էր 'ի յառնուլն զամենայն աշխարհն Շամայ՝ և մեր պսակաւորն Հեթում, ազատելով 'ի մահուանէ զքրիստոնեայսն զեկեղեցականս և զաշխարհականս, յամենայն տեղիս լինելով։ Որում հատուցէ Տէր հազարաւոր թողութեամբ մեղաց, և յերկարութեամբ կենաց ըստ իւրոց կամաց, յորդւոց յորդիս։

Դարձաւ Հուլաւուն յիջևանս 'ի ձմերոցս 'ի դաշտն Մուղանայ[1], և 'ի կայս ամարան 'ի Դաւռին գաւառ կոչեցեալն, կամ ըստ այլոց 'ի Դարան-դաշտ[2]. զի այրք և դերբուկք քարանց կան անդ շուրջանակի առ լերամբքն, զոր սիրեաց, և շինեաց անդ շինուածս ըստ սրտի իւրում. և խորհեցաւ շինել քաղաք, յորմէ պատճառէ տառապեցաւ երկիր, մարդ և անասուն, փայտս ծանունս 'ի հեռաստանէ բերելով։

1. Մուղան կամ Մուկան դաշտ, յանուն Մովականայ եղբօր Հայկայ, խոպան կամ անապատ ընդարձակ յերկոսին ափունս վերջին գնացից Երասխայ։

2. Ի հարաւակողմն աշխարհին Այրարատայ և 'ի հիւսիսի Վասպուրականի։

Յեօթն հարիւր և ինն Թուին առաւ Մարտիրոպաց քաղաքն, զկնի յոլով աղետից և փՃառուց՝ ոչ միայն պաշարեալ քաղաքին, այլ և պաշարողացն զօրացն ՏաԹարուն, և քրիստոնէիցն որ ընդ նոսա . կռուելով ընդ միմեանս 'ի ներքուստ և արտաքուստ . ուր սպանաւ զեղեցիկ երիտասարդն Սևադա Խաչենեցի, որդի մեծ իշխանին Գրիգորի, քաջապէս մարտուցեալ և յայտնապէս պսակեալ, հաւատ և երկիւղ պահելով զԱստուծոյն և զԻշխանին . որում մասն հասցէ արեանն նահատակացն Քրիստոսի՝ պահողացն զհաւատ և զերկիւղ նորա . ամէն ։

Ի նոյն Թուին կոտորեցան զօրքն զոր Թողեալ էր Ալղան Հուլաւուն կողմնապահ երկրին Շամայ իբրև քսան հազար, ընդ մեծ զօրագլխին ՔիԹբուղա կոչեցեալ, քրիստոնեայ հաւատով, ընդ որս մարտեաւ սուլտանն Մսրայ առ ստորոտով Թաբորական լերինն անԹիւ բազմուԹեամբ, և զի սակաւք էին բուղայեանքն՝ կոտորեցան և գերեցան, և էին որք ցրուեցան Թաքեան և ապրեալ եկին առ Թագաւորն Հայոց . և 'ի նմանէ յոլով գտեալ մարդասիրուԹիւն հանդերձ, և երիվարս և ռոճիկս, եկին գոհուԹեամբ առ տէրն իւրեանց, ՏաԹարք և քրիստոնեայք ։ Եւ յայնմանէ յոլով փառաւորեցաւ անունն Քրիստոսի յարքայն ՀեԹմոյ, յօտարաց և յընտանեաց ։

ՂԴ . Ի Յեօթն հարիւր Թուին իշխանաց իշխանն արքայաշուքն Ջալալն[1] դառն չարչարանօք կցորդեցաւ մահուն Քրիստոսի և վկայից նորա 'ի զրախոս Տաճկաց, զոր պարտաւորեալ և մատնեալ Արղունին . տարեալ 'ի Տաճկաստան 'ի Խազուինն, և անդ դիշերի յոդակոտոր արարեալ սպանին, միայն զքրիստոսասիրուԹիւնն ունելով պատճառս, պահօք և աղօԹիւք և ողորմածուԹեամբ և զմիաշաբաԹն յանձկացուԹեամբ անցուցեալ զժամանակս իւր մինչև 'ի ծերուԹիւն . վասն որոյ և լուսով 'ի բարձանց պսակեալ զնա Աստուած՝ իջանելով 'ի վերայ յօշեալ անդամոցն նորա, ցոսակելով և վկայելով զանպարտաւոր մահ նորա զմարտիրոսական ։ Զոր տեսեալ սպանողացն սոսկացեալ

1 · Տէրն Խաչենոյ ։

ընկեցին 'ի Ջրհոր մի ցամաք, մինչև եկին իւրքն և տարեալ թաղեցին յիւր սեփհական վանքն Գանձասար[1] կոչեցեալ, հայրենեօք տուն գերեզմանի իւրեանց. ըղնայն Ճառագայթս լուսոյ տեսանելով բերողացն ։ Ի նոյնքանիս թուականին Հայոց յեօթն հարիւր սպանին 'ի դուռն Եղլանին Հուլաւին զսպարապետն Վրաց զԶաքարէ՝ զորդի Հասանշահի, 'ի տիս երիտասարդութեան 'ի գեղ ծաղկի՝ և յառաջադէմ յաջողման ժամանակի, յերևանի և ծանօթ ամենեցուն, բարուրս ինչ եղեալ 'ի վերայ. և զայն ևս՝ թէ խափանեալ եղև կարգեալ հարկն յիւրում ժամու երթալոյ յարքունիս ։ Զորոյ մահն ողորմագին աշխարանօք ողբացին ամենայն տունն Վրաց, Հայաստանօք մերձաւորօք նոցա. քանի առաւել որք ծնանն զնա ծնողքն դառնակսկիծ և մորմոքատանջ ողբովք ։ Վասն որոյ 'ի նոյն աւուրս և 'ի նոյն սեւու ազին սրտակտուր լեալ մեռաւ հայրն Հասանշահ կոչեցեալ, իբր տէր մայրաքաղաքին Անւոյ, որ երբեմն նստոց էր արքայի, որ աւագն էր թագաւորացն Բագրատունեաց, այլ և այլ աշխարհացն, զանուն տեղւոյն Անւոյ Հասանշահ կոչելով, իբր թագաւորաց թագաւոր ։

ՂԴ. Թւիքս խորհրդաւորք, Է, (եօթն հարիւր) որ է կատարեալ հանգիստ, և Ժ՝ (տասն) սուրբ, իբրև զսուրբս Աստուծոյ հանգուսցեն 'ի շաբաթն Աստուծոյ՝ որ առաջի կայ, զասացեալ նշանաւոր որեարոզ յայսմ թուաբերութեան, կատարեալ յաղօթս ամենայն սրբոց ։

ՂԵ. Յեօթն հարիւր և մետասան թուականին վախճանեցաւ տէր Ներսէս կաթուղիկոսն Աղուանից դառն ցաւով ջրգողութեամբ, չգտեալ 'ի բժշկաց դեղ, բայց միայն զմինն Յիսուս Աստուած, և դեղ կենաց անմահութեան. առ որ փոխեցաւ մեծ յուսով խոստովանութեամբ և անդարձիւ ըստ արժանւոյն, կեցեալ ըղժամանակս իւր հեզութեամբ և ողորմածութեամբ ։

Յեօթն հարիւր և երկոտասան թուին հանգեաւ 'ի

1. Գանձասար անուանի մենաստան և աթոռ առաջին և վերջին կաթողիկոսաց Աղուանից, 'ի Մեծիրանից գաւառի Արցախոյ ։

Նկրտոսս անուանի Հզնաւորն և արժանաւորն պատուելի սոտիճանաց և կռչմանց, ուր կոչեաց շնորհն Աստուծոյ 'ի քահանայութիւն, 'ի վարդապետութիւն և յարհեպիսկոպոսութիւն տանն Պարդմանայ և այլոց բերդից և գաւառաց, այրն անուանի և յերևանի աշխարհի՝ տէրն Յովհաննէս Տուեցին անուանեալ, որ զերիս յիմանական անհաց և անջուր կատարէր, և զաղքատ և զկարեքշաբաթ, և յԵրուսաղէմ գնացեալ բնակտուիք, և զաւուրս աղուհացից յանն կալեալ և անհաց 'ի սուրբ Յարութեանն. և զարմացոյց զաղգն Փռանգաց՝ որք անդ էին. զի ոչ միայն յանն և անկերակուր, այլ և լաւթեամբ կեայր, և խնդրէր յԱստուծոյ յայտնի հաւատ համբաւոյն՝ որ գայր յազգս. թէ յիջանել լուսոյն՝ հայոց կանթեղն է 'ի վառիլ, որպէս և խնքն պատմեաց, եթէ որ զկուրայ[1] սուրբ գերեզմանին պահէր՝ աւրէր զմեզ և փարէր զմեզ, և մեք խնդրեցաք 'ի նմանէ ըղհաւատտիս խրացն. և նա ասաց դու դնէ կանթեղս, և բեր կախէ քոյին ձեռօքդ. և արարի այնպէս, դնեցի երեք կանթեղ, և կախեցի 'ի վերայ սուրբ գերեզմանին. յաջմէ յանուն Փռանգաց և 'ի ձախմէ Յունաց և 'ի միջին զհայոցն, որպէս խնքեանք ասէր էին. Թերես փակեցաք զդուռն և մատանեցաք: Եւ ես ցիս պահապանն զմատանին և զբանալին յաւուրն մեծի ուրբաթուն. և յաւուրն մեծի շաբաթուն՝ յինն ժամուն մինչ կայաք յաղօթս՝ առհասարակ ամենայն քաղաքն և աղօթականքն եկեալ 'ի հեռաստանէ, ասէ ցիս պահապանն դռանցին, Տէր հրամէ, և բաց, զի իջաւ լոյսն, և չոգայ բացի, 'ի վեր առեալ զմատանին. և ճշմարտապէս սասանց կարծեաց միջին կանթեղն վառեալ բորբոքէր անսպառելի գեղով: Եւ այսու սքանչելեօք[2] փառաւորեցաւ համբաւեցաւ այրն այն տէր Յովհաննէս: Ասաց խնքնին և զայս բան եթէ, չոգայ 'ի սուրբ Բեթղեհէմ, և տեսի անդ զմուրբ աստղելոցն պատկերոն նկարեալ 'ի պարիսպ եկեղեցւոյն, և Տաճիկք 'ի պատճառս անարգութեան փորեալ էին զաչսն. որոմե-

1. Կուրայ, գուղգէ قبة, կամար, կամ մատուռն կամարակապ:

2. Ըստ հաւատոյ հեղինակին այս և որ զկնի սքանչելիքն Յովհաննու յԵրուսաղէմ:

ցայ ընդ իրան, և աղօթեցի առ սուրբ առաքեալսն աղաչելով յայտնել ինձ՝ եթէ հաճո՞յ է նոցա ամենայն ուրեք նկարել զնոսա։ Եւ յորժամ դարձայ յԵրուսաղէմ՝ յայնմ գիշերի տեսի 'ի տեսլեան երկու արս փառաւորս, զի գային առ իս, և ելի ես ընդ առաջ նոցա և ասացի, թէ Ո՞վ էք սուրբքդ Աստուծոյ. և նոքա ասեն, Պետրոս և Յոհաննէս, որ աղաչեցեր ցուցանել քեզ վասն ձևակերպելոյն զմեզ քրիստոնէից՝ որ ընաւ չէ մեզ հաճոյ և ձանձրացեալ եմք. և յայտնեմք ուրեք ուրեք և չլսեն մեզ[1]։ Ասէր և աբեղայն իւր ուղեկից յԵրուսաղէմ. եթէ բոկ երեկ մինչ 'ի տեղն. և ապա յաւուր միում կոչեաց զիս, և ասաց. Տես զոտս իմ զի ցաւէ և նեղէ զիս. և 'ի տեսանելն իմ և 'ի յորոնել զուռոյն աղամբ՝ սրագոյն և ստուար կտորս փշոյ գտի՝ որ ելանէր թարախով ոչ սակաւ. և զարմանք կալաւ զմեզ, զի չյայտնեաց մինչև 'ի տեղին, առ սէրն Աստուծոյ և սուրբ տեղեացն առ ոչինչ համարեալ զկըսկիծն։ Այսպիսի զաւ 'ի վեր և նեղ ճանապարհաւ կացեալ մինչ 'ի խորին ծերութիւնն՝ հանգեաւ 'ի Քրիստոս, 'ի հաչակաւոր վանսն Սոր-բերդին անապատ կոչեցեալ. թաղեցաւ 'ի դուռն եկեղեցւոյն, զոր իւր իսկ էր շինեալ. և այլ բազում շինուած և արդիւնս վաստակեալ հրամանաւ, կամօք և ձեռնտուութեամբ Սասակայ թագաւորազին Բագրատունւոյ. որոյ յիշատակն օրհնութեամբ 'ի կաթուղիկէ եկեղեցւոջ կացցէ առաջի Աստուծոյ անջնջանելի 'ի հոտ անուշից յաւիտեանս։

ՂՁ. Ի յեօթն հարիւր երեքտասան թուին կոչեաց զմեզ մեծն Հուլաւու Ղանն 'ի ձեռն Շնորհաւոր[2] կոչեցեալ փառաւորելոյ առն յայնմ ժամանակի՝ յամենեցունց, և աւելի յաշխարհակալացն, 'ի Բաթու կուսակալէն հիւսիսոյ, ուր չոգաւն և պատուեցաւ նախ, ապա 'ի Հուլաւու Ղանէն՝ որ տարաւ իւրով ծախիւք

1. Պատկերք առաքելոցդ գտանէին և յեկեղեցիս Հայոց՝ ուր աղօթէին հեղինակդ և տեսանողդ, այլ թերևս ոչ շատք մինչև 'ի ձանձրութիւն նոցին։

2. Շնորհաւորդ է անշուշտ վաճառականն որ ընդ Ումեկայ զատեաւ 'ի Կարնոյ քաղաքի, յառաման նորին 'ի Թաթարաց։ Այլ ամն ժամանակագիր ասէ. "Սարվանին որդին Շահպատին՝ զՎարդան վարդապետն տարաւ 'ի մօտ Հուլաւուն, և մեծաւ սիրով պատուեաց զնա խանն. և բազում բանս իմաստութեան հարցաւ ընդ սուրբ վարդապետին„։ Ց. յէջ 189։

և գրաստիւք զմեզ և որք ընդ մեզ էին վարդապետք եղբայրք մեր Սարգիս և Գրիգոր, և աւագ երիցն Տփխեց տէրտէրն ։ Այլ տեսաք զմեծն զայն 'ի մեծի աւուրն ամառամտի և տարեմտի իւրեանց, 'ի յամենեանն յուլիս ըստ Հառամայեցւոց, և ըստ մեզ յարաց[1] ։ Այլ էր նոցա աւուրք ուրախութեան իբր լուսին մի. և կոչէին զաւուրսն զայնոսիկ Խուռուլթայ[2], իբր խորհրդատօնս, յորս խորհէին այլղանքն ազգայինքն Չանկըզզանին՝ առ մեծն եկեալ, զոր ինչ պատշաճն տեսանէին, հանդերձ ամենայն աւագունօքն իւրեանց, ամենեքեան նոր զգեցեալ՝ յամէն աւուր որիշ գունով փոփոխս ։ Ընդ լինէին և ամենայն հնազանդեալքն իւրեանց շատ և երևելի նուիրօք՝ թագաւորք և սուլտանք. որպէս և 'ի մեր տեսն թագաւորն Հայոց Հեթում, և թագաւորն Վրաց Դաւիթ և Բրինձն[3] Անտաքու, և սուլտանք 'ի Պարսից կողմանց յոլովք ։ Այլ 'ի տեսանելն զմեզ ծունր ոչ ետուն կրկնել և ոչ չոքել[4] ըստ իւրեանց սովորութեանն. իբր թէ արքաւունքն[5] Աստուծոյ միայն երկրպագեն. գինի ետուն օրհնել, և 'ի մեր ձեռաց առնուլ ։ Այլ խօսք զոր ինչ հրամայեաց՝ առաջին այս. Կոչել եմ զքեզ որ տեսանես զիս և Ճանաչես, և 'ի սրտաց աղօթես վասն իմ ։ Այլ աւելորդ է թերևս զամենայնն գրել, շատ խօսեցաւ ։ Այլ մեք տուաք պատասխանի և նստուցին զմեզ, և գինի ետուն. և շարական պաշտեցին եղբարքն որ ընդ մեզ. և Վրացիք զիւրեանց պաշտօնն, և Ասորիք և Հոռոմք զիւրեանցսն ։ Զի յայնմ աւուր տեսին զեկեալսն յամենայն կողմանց, մինչ ասել Այլղանին, թէ ես զքեզ միայն եմ կոչեալ, ի՞նչ է այս նշանս, որ ոչ յառաջ և ոչ յետ՝ մի աւուրբ յամենայն կողմանց եկին ընդ քեզ, տեսանել և օրհնել զիս ։ Այլ յառաջեաց հրամայեաց ինքն, թուի եթէ նշան է, որ Աստուծոյ սիրտն լաւ է ինձ ։

1. Ըստ շարժական տոմարի Հայոց, որոյ նաւասարդ յայնմ ամի, ՉԺԳ 1264, սկսանէր 'ի 14 յունուարի, ապա և տարեմտաւն Թաթարաց 'ի սկիզբն էր յուլիսի ։

2. Գուրիլթայ կոչէին Թաթարք զհամաշխարհական ժողովս և տօնս իւրեանց յընտրութեան նորոյ խաքանաց և յայլ կարևոր դէպս ։

3. Prince, այսինքն Փռանկ իշխանն Անտիոքայ ։

4. Չէօքմէք ըստ Թուրքաց, 'ի ծունկս անկանել ։

5. Այսպէս կոչէին Թաթարք զքրիստոնեայս ։

Ասացաք. Ո՞ մեզ այլ կալաւ զարմանք, և պատճառ՝ զոր դուք հրամայեցիք: Ապա հրամայեաց, թէ Ոա-ծուկ բան ունիմ առ քեզ: Այս յաւուր միում արար անապատ յոյժ, և հեռի կացուցեալ զամենայն բանակն, և երկու արամբ միայն խօսեցաւ ընդ մեզ յերկար. յիւր ծննդենէ հետէ և 'ի մօրէ՝ որ քրիստոնեայ էր, ասէ. և թէպէտ դայեակ սնուցանէ զտղայն, երբ 'ի հասակ գայ՝ զիւր մայրն սիրէ. չենք օտարք 'ի սիրոյ քրիստոնէից, զոր ինչ ունիս ասելոյ ասա: Այս բռնեալ էր զիմ ձեռքս, և մեք ասացաք զինչ Աստուած երետ ասել բան. թէ Որչափ 'ի վեր ես դու քան զայլ մարդիկ, մօտ ես յԱստուած. Աստուծոյ աթոռն արդար դատաստանաւ է հաստատ: Ամէն ազգի տուեալ է Աստուած տէրութիւն աշխարհի. մինչ 'ի ձեզ՝ աշխարհաւեր են լեալ, և աղքատաց անողորմն ծանր շալակ են դրել. Նաքան[1] յոգոց են հանել, և լացեալ առաջի Աստուծոյ. Աստուած առեալ է զիշխանութիւնն և յայլ ազգ տուեալ. Թէ դուք աշխարհաշէն լինիք և աղքատաց ողորմած, 'ի ձեզանէ չառնու Աստուած, զոր տուեալ է՝ թողու առ ձեզ, և զոր տալ կամի՝ զայն այլ տայ: Ի քո դրանս հէնց[2] մարդ կացո՝ որ յԱստուծոյ երկնչի և զձեզ սիրէ. որ զլալով եկած տառապեալն՝ որ աղերս չունի և կաշառք՝ ուրախ 'ի տուն աղարկէ[3], քեզ յիշեցնէ. և զաշխարհս տեսանել տուր հէնց մարդոյ՝ որ յստակ տեսանէ, կուրանայ ոչ կաշառօք, և քեզ ասէ զիրաւն:

Այս յայս կարգիս շատ խօսեցաք: Հրամայեաց թէ 'ի սրտաւմն դրի զքո խօսքդ: Ո՞նց է[4] որ զամէն զայն ասացեր որ յիմ սիրտս կայր՝ որ ինձ դիւր թուեաց. Աստուած խօսեցեալ է քեզ, երևեալ է քեզ: Ասացաք, թէ Ոչ է. մեք մեղաւոր մարդ ենք, ապա[5] զաստուածախօս մարդկանց գիրքն կարդացել ենք, և սիրտ թագաւորաց 'ի ձեռին Աստուծոյ են, Աստուած յայտնեալ է քեզ առանց գրոց: Ապա ասացաք, թէ Առաջի աստուծոյ խօսք մի եմ յասել, որ Աստուած լսէ և ապա դու՝ որ սուտ

1. Եւ նոքա:
2. Այնպիսի:
3. Յուղարկէ:
4. Ուստի՞ է այս, զի....:
5. Սակայն:

թու և 'ի Շահաբատինն եմ յանձնել զերկիրդ և ըզքեզ, որ զինչ ասես առնեն։ Եւ մեք շնորհ կալաք և ելաք։ Թերևս աւելորդ թուիմք գրելովդ զայս, այլ վասն բարեսէր և քաղցրաբարոյ մեծի Հուլաւունին յիշատակի գրեցաք յօգուտ, կամ յօրինակ այլոց՝ որ գալոց են յետ մեր, ո՞ գիտէ։

ՂԷ. Վասնզի 'ի մտանել Թուականութեանն Հայոց յեօթն հարիւր չորեքտասան, եհաս մեծին այնորիկ մեծազօրն Հրաւիրակ, և եհար գաւազանն զօրեղ զքաջն զայն յաղթազգեաց Հուլաւուն, և ժամանեաց նմա վճիռ նախահօրն. քանզի որդի էր և նա Ադամայ, որ եարբ 'ի բաժակէն յորմէ ամենեքեան ճաշակեցին և ճաշակեն. Թէ և դառն էր նմա, եարբ զլեղին մահու՝ ոչ ուրախութեամբ որպէս Տէրն և յուսացեալք 'ի նա. զի խաբէին զնա աստեղագէտք և քուրմք պատկերաց ոմանց Շակմնիիայ[1] կոչեցեալ, որ է ասեն՝ Աստուած երեք հազար և քառասուն ամաց. կալոց է դեռ այլ ևս երեսուն և հինգ դումանս, որ է դումանն տասն հազար[2]։ Եւ ապա հանէ զնա ասեն միւս ևս Մադրին[3] անուն. Տոյինք[4] կոչէին զքուրմն զայնոսիկ, որոց հաւատայր և հրամանաւ նոցա ելանէր 'ի պատերազմ, կամ չելանէր. որք ասէին եթէ յերկար մնալոց ես 'ի մարմնոդ յայդ. և յորժամ յերկար ծերանաս՝ այլ նոր մարմին զգենուս. շինել ետուն նմա մեհեան պատկերացն այնոցիկ. և երթայր անդ յաղօթս, և դիւթէին նմա զոր ինչ կամէին։

Եւ մինչդեռ սպասէաք մեք այլ ժամանակի, և երկրորդ տեսութեան և ծանօթութեան աւելագունի, ասել ինչ նմա զարժանն, այլ և մնայաք 'ի բարեսէր բարուցն և 'ի քրիստոնէասէր ցուցանել նմա յԱստուծոյ նշան ինչ ձեռնտու քրիստոնէից, ասել ինչ նմա վստահութեամբ. քանզի վարժեալ էր 'ի նոցա բանսն

1. Շաքիա–մունի ըստ Հնդկաց, անուն մի Գուտհայ դից մարմնացելոյ 'ի Թագաւորէ Շաքեան տոհմի. Մունի նշանակէ առ նոսա ապաշխարող սրբազան։

2. Ըստ պարսիկ լեզուի։

3. Ըստ Կիրակոսի և Ստեփանոսի Ուռպելեան՝ Մադրին, իսկ ըստ Հնդկաց Մաիդրեյա. այսպէս կոչեն զԳուտհա մինչչև մարմնացեալ և եկեալ յաշխարհ 'ի փրկութիւն մարդկան։

4. Թոյին ըստ Թաթարաց։

և հիւանդացեալ։ Քանզի Թաղեայ պատկերաց խօսել տային և ձիոց, և յոլով էր 'ի նոսա արուեստ խաբէութեան և հմայութեան. և էին պարկեշտ 'ի կերակուր և 'ի հանդերձ և 'ի կուսութիւն, և 'ի չափաւոր ամուսնութիւն և 'ի խառնակութիւն. քան ամաց կին առեալ, ասեն, մինչ յերեսուն ամն՝ 'ի շաբաթն երեք հետ խառնին. և անդի մինչ 'ի քառասուն ամն՝ ամսեանն երեք, և անդի մինչ 'ի յիսունն՝ տարեանն երեք. և ընդանցեալ՝ բնաւ ասեն ոչ մերձենալ, ուստի մանաւանդ կարէին խաբել։ Եւ յայտնիկ գայր հասանէր օրհասն, և կոխէր զբարձրն զայն բլուր լայն ոտամբն մահն. և փլուցանէր հաւասարէր իւրոցն նախնեաց. քանզի լեառն որ փլանելոցն է՝ փլցի, ասէ գիր։ Եւ լինէր հաւատարիմ բան մարգարէին. Ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. այլ հաւատարիմ է Տէր և արդար հատուցանել նմա զնմին բարուոյն, զոր օրինօք բնութեանն ստացեալ ունէր, և զիւրեանցն հայրենիս[1] պահելով. զի ասախն[2], որպէս ասէին ինքեանք կոչելով զեդեալ սահմանն 'ի Չանկըզղանէն, սուտ չասել, չգողանալ, յայլոյ կին չխառնակել, սիրել զիւրեարս հաւասար անձին, յիշոցք չունել և չգիտել բնաւ, զկամաւ հնազանդեալսն ապրեցուցանել՝ զերկիր և զքաղաք. և զանուանեալ տունն Աստուծոյ, և զկոչեցեալ նորա ծառայսն՝ զիարդ և իցեն՝ ազատ թողուլ 'ի հարկաց, և դնել պատիւ։ Զոր և նա հրամայէր պահել և պահէր։ Այլ և յիշենք զոր ասացն, թէ մեք որ պատուիրեմք աղօթել վասն մեր, ոչ թէ 'ի մահուանէ զերծանել, զայն չգիտենք, այլ խնդրեք յԱստուծոյ որ 'ի մեր թշնամեացն ձեռացն չմեռանիմք։ Թէ կատարեցաւ՝ այն Աստուած գիտէ. զի համբաւեցին նախ, թէ դեղով և հնարիւք սպանին, և յետոյ ծածկեցին զգրոյցն։ Սակայն մեծ թագուհին Տողուզ խաթունն կոչեցեալ՝ նախ քան զհամբաւել մահուն առաքեաց առ մեզ գաղտ, թէ Աստուած սիրեաց զԱյլղանն և տարաւ աստի, և զինչ որ աստ սիրէր և զայս աշխարհս նմա էր տուեալ, նոյնպէս և արդ

1. Զիւրեանց հայրենի օրէնսն պահելով։ 2. Եասաղ يصاق, արգել հրամանի։

